## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ, Կոմունիզմի կառուցումը ՍՍՌՄ-ում և գյուղատնտեսության զարգացումը, Հինգ հատորով։ *Հատ. 1 (սեպտեմբեր 1953 թիվ—հունվար 1955 թիվ)։*

*Պետ. քաղ. հրատը, ընդառաջելով լայն հասարակայնության ցանկություններին, հինգ հատորով հրատարակում է Ն. Ս. Խրուշչովի աշխատությունները՝ նվիրված ՍՍՌՄ-ում կոմունիզմի կառուցման և գյուղատնտեսության զարգացման հարցերին։*

*Ն. Ս. Խրուշչովի աշխատություններում, պարտիայի XX, XXI, XXII համագումարներում, Կենտկոմի պլենումներում և խորհրդակցություններում տված զեկուցումներում և ունեցած ելույթներում խոր, մարքս-լենինյան հիմնավորում է տրըված ՍՍՌՄ-ում կոմունիզմի կառուցման հիմնական հարցերին և գյուղատնտեսության զարգացման խնդիրներին։*

*Առաջին հատորում տպագրված են 1953 թ. սեպտեմբերից—1955 թ. հունվարը ժամանակամիջոցում Ն. Ս. Խրուշչովի զեկուցումները, ելույթները և այլ նյութեր՝ նվիրված սոցիալիստական գյուղատնտեսության զարգացմանը։ Հատորում զետեղված են նյութեր, որոնք հրապարակվում են առաջին անգամ։*

*Գիրքը հանձնարարվում է պարտիական և սովետական ակտիվին ու պրոպագանդիստներին։*

### ԳԻՏԱԿԱՆ ԱԹԵԻԶՄԻ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԸ

Մոսկվա, Պետ. քաղ. հրատ., 1962

*Բուհերի համար տպագրված այս դասագրքում (ՍՍՌՄ Գիտ. ակադ. փիլիսոփայության ինստիտուտ) տրվում է աթեիզմի տեսության ու պատմության հիմնական հարցերի շարադրանքը։*

*ՍՄԿՊ XXII պատմական համագումարի որոշումների, պարտիայի Ծրագրի ու Կանոնադրության լույսի տակ վեր են հանվում աթեիզմի էությունը, նրա զարգացման էտապները, գիտական քննադատության են ենթարկվում կրոնական աշխարհայացքները և կրոնական բարոյականությունը։*

*Գրքում հանգամանորեն շարադրված է Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության վերաբերմունքը տարբեր դավանանքների ու եկեղեցու նկատմամբ, ինչպես և նշված են կրոնական մնացուկների պատճառներն ու նրանց դեմ պայքարելու գիտական մեթոդները։*

### ՍՈՑԻԱԼԻԶՄԻՆ ԱՆՑՆԵԼՈՒ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՕՐԻՆԱՉԱՓՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՏԱՐԲԵՐ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

Մոսկվա, 1962.

*Գիրքը նվիրված է կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու, տարբեր երկրների քաղաքական, տնտեսական, ազգային, կուլտուրական և միջազգային հարաբերությունների պրոբլեմների վերլուծմանը։*

*Բազմաթիվ տվյալներով, տեսական վերլուծումներով գրքում շարադրված է ներկա էպոխայի առանձնահատկությունը կազմող համաշխարհային սոցիալիստական սիստեմի հզորացումը և կապիտալիստական սիստեմի հետ նրա խաղաղ մրցման ընթացքը։*

*Գրքում ամփոփված է կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու սոցիալիստական սիստեմի երկրների հարուստ փորձը։*

*Այն լուրջ օգնություն է պրոպագանդիստներին և պարտիական-սովետական ակտիվին։*

3 экз

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

№ 12
ԴԵԿՏԵՄԲԵՐ
1962 Թ.

★

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 41-ՐԴ ՏԱՐԻ

## Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն



digitised by A.R.A.R.@

## СОДЕРЖАНИЕ





# ՆՈՐ ՎԵՐԵԼՔԻ ԳՐԱՎԱԿԱՆԸ

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Նոյեմբերյան պլենումը հանգամանորեն քննարկեց ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցումը՝ ՍՍՌՄ էկոնոմիկայի զարգացման և ժողովրդական տնտեսության պարտիական ղեկավարման մասին և ընդունեց կենսական, բացառիկ կարևոր նշանակություն ունեցող որոշումներ: Պլենումի փաստաթղթերում, որոնք բխում են կյանքի հրատապ պահանջներից և ուղղված են XXII համագումարի որոշումների ամենաարագ իրագործմանը, շոշափվում են պարտիական ու պետական շինարարության, երկրի ժողովրդական տնտեսության ղեկավարման արմատական կարևորագույն հարցերը:

Պլենումը, հանրագումարի բերելով պարտիայի ու ժողովրդի պայքարի վերջին տարիների արդյունքները, գոհունակությամբ նշեց, որ մեր երկիրն ապրում է հզոր վերելք և հաջողությամբ են կատարվում կոմունիստական շինարարության հոյակապ կանխագծումները: ՍՄԿՊ XXII համագումարից հետո անցած ժամանակաշրջանը եղավ մեծագործությունների նոր տարի, այն նշանավորվեց էկոնոմիկայի, գիտության և կուլտուրայի բուռն զարգացման, ժողովրդի բարեկեցության բարձրացման նոր խոշոր հաղթանակներով: Մենք կարող ենք ասել, զեկուցման մեջ նշեց Ն. Ս. Խրուշչովը, որ մեր գործերը հաջող են ընթանում և պարտիայի կողմից վարվող լենինյան կուրսը լավ պտուղներ է տալիս:

Կոմունիզմի նյութատեխնիկական բազա ստեղծելու ճանապարհին կարևոր էտապ է ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը, որի առաջադրանքները, հիմնական ցուցանիշների գծով, գերակատարվում են: Չորս տարում (1959—1962 թթ.) կարտադրվի 28 միլիարդ ռուբլու ավելի շատ արդյունաբերական արտադրանք, քան այդ տարիների համար նախատեսված էր յոթնամյակի կոնտրոլ թվերով: Վիթխարի չափերով ծավալվել է կապիտալ շինարարությունը. յոթնամյակի չորս տարում շարք են մտել ավելի քան 3700 խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ, քաղաքներում ու ավաններում կառուցվել և շահագործման են հանձնվել՝ 8,8 միլիոն նոր բնակարան, իսկ գյուղական վայրերում՝ 2 միլիոն 400 հազար տուն: Անշեղ վերելք է ապրում մեր գյուղատնտեսությունը. չնայած երկրի մի շարք խոշորագույն գյուղատնտեսական շրջաններում ստեղծված կլիմայական խիստ անբարենպաստ պայմաններին, ընթացիկ տարում հացահատիկի արտադրությունը հասավ ինը միլիարդ փթի՝ 1953 թվականի հինգ միլիարդի դիմաց. այդ նույն ժամանակաշրջանում գրեթե կրկնակի չափով ավելացավ կաթի, մսի արտադրությունը և այլն:

Տնտեսական այս հաջողություններում ակնառու կերպով արտացոլվում է վերջին ժամանակաշրջանում արդյունաբերության, շինարարության և գյուղատնտեսության ղեկավարման ասպարեզում պարտիայի իրագործած խոշոր, հիրավի հեղաշրջող վերափոխումների ներգործության բարեբեր արդյունքները: Պարտիան վճռականապես խորտակեց գործի նկատմամբ գերատեսչական-բյուրոկրատական մոտեցման պատնեշները, բազմաթիվ հնացած այն ձևերը,

որոնք ստեղծվել էին Ստալինի անձի պաշտամունքի շրջանում: Գտնվեցին ժողովրդական տնտեսության կառավարման ճկուն ու կատարյալ ձևեր ու մեթոդներ: ՍՄԿՊ XXII համագումարը լիովին հավանություն տվեց պարտիայի լենինյան Կենտկոմի իրագործած արդյունաբերության և շինարարության կառավարման վերակազմմանը: Համագումարից հետո, Կենտկոմի Մարտյան պլենումում մշակվեցին խիստ ռեալ միջոցառումներ գյուղատնտեսական արտադրության կառավարումը վերակառուցելու գծով՝ ստեղծվեցին կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչություններ, որոնք իրենց գոյության առաջին իսկ տարում ցույց տվին, որ գտնվել է գյուղատնտեսական արտադրության ղեկավարման նոր, խորապես կենսական և կատարելագործված ձև:

Նշանակալի են մեր հաջողությունները տնտեսական ու կուլտուրական շինարարության մեջ: Սակայն դրանք ավելի մեծ կլինեին, եթե ավելի լրիվ ու ռացիոնալ օգտագործվեին սոցիալիստական հզոր էկոնոմիկայի բոլոր ռեզերվները ու հնարավորությունները: Մեր օրերում, երբ երկրի էկոնոմիկան աճում է շատ արագ, օրավուր մեծանում են տնտեսական շինարարության մասշտաբները ու ծավալը, նոր, ավելի բարձր պահանջներ են ներկայացվում տնտեսական ղեկավարմանը: Այդ պայմաններում պարտիայի առաջնահերթ ու կարևորագույն խնդիրն է՝ մշտապես բարելավել ու կատարելագործել ժողովրդական տնտեսության ղեկավարումը, տնտեսական օրգանների վերակազմման հետ մեկտեղ ավելի կատարելագործել պարտիական կազմակերպական աշխատանքը, արտադրության պարտիական ղեկավարման ձևերն ու մեթոդները:

Ահա թե ինչու ՍՄԿՊ Կենտկոմի Նոյեմբերյան պլենումը, ելնելով պարտիայի XXII համագումարի ծրագրային որոշումներից, որպես հրատապ ու հասունացած խնդիր առաջ քաշեց ժողովրդական տնտեսության պարտիական ղեկավարումը վերակառուցելու հարցը, վերակառուցում, որը պետք է ապահովի պարտիայի որոշումների առավել հաջող կենսագործումը:

Արդի պայմաններում սովետական հասարակության ողջ կյանքում և, հատկապես, տնտեսական շինարարության մեջ միանգամայն օրինաչափորեն աճել է ու կաճի Կոմունիստական պարտիայի՝ ուղղություն տվող և կազմակերպող դերն ու նշանակությունը: Կոմունիստական շինարարության համապարփակ ծրագրի իրականացումը, մեր առաջընթացի տեմպերը պայմանավորված են այն բանով, թե ինչպես է նա կազմակերպում իր գործունեությունը և ժողովրդական տնտեսության կառավարումը: Այդ իսկ պատճառով կազմակերպական գործը դառնում է գլխավորը, հանդիսանում է մեր պարտիայի արմատական և հիմնական խնդիրը: «Կոմունիզմի ծավալուն կառուցմանը համապատասխանում է բուն իսկ պարտիայի, նրա քաղաքական, գաղափարական և կազմակերպական աշխատանքի զարգացման մի նոր, ավելի բարձր էտապ,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում,— պարտիան անընդհատ կկատարելագործի իր գործունեության ձևերն ու մեթոդները, որպեսզի մասսաներին, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը, հասարակության հոգևոր կյանքի զարգացմանը ցույց տված իր ղեկավարության մակարդակը համապատասխանի կոմունիզմի կառուցման դարաշրջանի աճող պահանջներին»:

Պարտիական օրգանների հին կառուցվածքը, կազմակերպական հին ձևերը ո՛չ միայն այլևս չէին համապատասխանում երկրի տնտեսական զարգացման ժամանակակից խնդիրներին, այլև որոշ իմաստով խոչընդոտում էին պարտիայի կողմից արտադրության ղեկավարման գործին: Տնտեսության ղեկավարման



ավելի վաղ ստեղծված կազմակերպական ձևերը, որոնք, անշուշտ, ժամանակին դրական դեր են խաղացել, ներկա շրջանում կաշկանդում էին պարտիական կազմակերպությունների ձեռքերը, հնարավորություն չէին տալիս լիովին ծավալելու նրանց ձեռներեցությունն ու ակտիվությունը, կոնկրետ ու պլանաչափ ղեկավարելու արտադրության բոլոր ճյուղերը, ճիշտ տեղաբաշխելու պարտիական կադրերը, ավելի լավ օգտագործելու նրանց գիտելիքներն ու փորձը:

Կառուցված լինելով տերիտորիալ սկզբունքով, պարտիական օրգանները հարկադրված էին հավասարապես զբաղվել բոլոր հարցերով՝ մի շարքում դնելով ինչպես արտադրական, այնպես էլ համեմատաբար պակաս կարևոր նշանակություն ունեցող հարցերը, ստիպված էին ցրել իրենց ուժերը, մերթ իրենց ուշադրությունը բևեռել գյուղատնտեսության, մերթ էլ արդյունաբերության հարցերի վրա, արտադրության պարտիական ղեկավարմանը տալով կամպանիոն բնույթ: Այստեղից էլ հենց բխում էր պարտիական ղեկավարման կազմակերպական կառուցվածքի վերակառուցման անհրաժեշտությունը, որի հիմնական նպատակն է պարտիական օրգանների, բոլոր կոմունիստների ջանքերը կենտրոնացնել արտադրության զարգացման գլխավոր խնդիրների լուծման վրա:

Նոյեմբերյան պլենումը, հավանություն տալով ՍՄԿՊ Կենտկոմի Նախագահության մշակած առաջարկներին, անհրաժեշտ համարեց պարտիական օրգանների կառուցման հիմքում վարից վեր դնել ա ր տ ա դ ր ա կ ա ն ս կ ը զ բ ո ւ ն ք ը, որը մինչ այդ պահպանված էր միայն սկզբնական պարտիական կազմակերպություններում: Պարտիական օրգանների արտադրական սկզբունքը ելնում է այն ծրագրային դրույթից, որ պարտիայի ու ժողովրդի գլխավոր տնտեսական խնդիրն է՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, հասարակության նյութական և հոգևոր բարիքների առատություն ապահովելը: Կենտրոնացնելով ուշադրությունը գլխավորի՝ արտադրական հարցերի վրա, պարտիական կազմակերպությունները հնարավորություն կունենան կազմակերպչական, գաղափարական, կուլտուր-դաստիարակչական ողջ աշխատանքը ենթարկել հիմնական խնդրի լուծմանը:

Նոր իրադրության պայմաններում պլենումն աննպատակահարմար գտավ պահպանել պարտիական գյուղական շրջկոմները, դրանց փոխարեն ստեղծելով կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչությունների պարտիական կոմիտեներ, որոնք կոչված են իրագործելու կոլտնտեսությունների, սովխոզների, ինչպես նաև գիտահետազոտական, կուլտուր-լուսավորական, բժշկական հիմնարկների, ուսումնական հաստատությունների պարտիական կազմակերպությունների ղեկավարումը: Պատասխանելով այն հարցին, թե ինչու արտադրական վարչություններում անհրաժեշտ է ունենալ պարտիական կոմիտե և ոչ թե պարտիայի նախկին շրջկոմ, պլենումում տված իր զեկուցման մեջ ընկեր Խրուշչովն ասաց. «Արտադրական ուղղությունը գլխավորն է: Հարկավոր է, որպեսզի պարտիական կոմիտեների աշխատողներն ապրեն այդ գլխավորի հոգսերով, սրափ լինեն և մտածեն, որ կոմունիստական շինարարության մեջ գլխավորը էկոնոմիկան է, արտադրությունը, պայքարն է մարդու կյանքի նյութական և հոգևոր բարիքների ստեղծման համար»:

Գյուղական արտադրական վարչությունների տերիտորիայում գտնվող արդյունաբերական ու տրանսպորտային ձեռնարկությունների, կառույցների պարտիական կազմակերպությունների ղեկավարման համար, ուր չկան պար-

տիայի քաղկոմներ, ստեղծվում են արդյունաբերական-արտադրական փնջային կոմիտեներ: Ինչպես գյուղատնտեսական արտադրական վարչությունների, այնպես էլ արդյունաբերական-արտադրական գոտիների (փնջային) պարտիական կոմիտեների ապարատները համեմատաբար փոքր են լինելու և օգտվելու են ՍՄԿՊ Կանոնադրությամբ նախատեսված՝ պարտիայի շրջկոմների, քաղկոմների բոլոր իրավունքներից:

Միաժամանակ քաղաքներում և մերձքաղաքային գոտիներում գտնվող արդյունաբերական և շինարարական ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունների ղեկավարումը, ինչպես մինչև հիմա, այսուհետև ևս կիրագործեն պարտիայի քաղաքային կոմիտեները: Ներկայումս գոյություն ունեցող ամեն մի մարզի, երկրամասի սահմաններում, որպես կանոն, կկազմվեն երկու՝ արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության ղեկավարման պարտիայի ինքնուրույն մարզկոմներ, երկրկոմներ: Իսկ ինչ վերաբերում է միութենական ռեսպուբլիկաներին, ապա յուրաքանչյուրում մնում է Կենտրոնական Կոմիտեն՝ որպես միասնական պարտիական օրգան. արդյունաբերության և գյուղատնտեսության պարտիական կազմակերպությունները ղեկավարելու համար միութենական ռեսպուբլիկայի ամեն մի Կենտկոմում ստեղծվում են Կենտկոմի երկու բյուրոներ՝ արդյունաբերության և գյուղատնտեսական արտադրության ղեկավարման, որոնք գործելու են տվյալ Կենտկոմի նախագահության ղեկավարությամբ:

Որպեսզի ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն ավելի կոնկրետ ղեկավարություն ցույց տա արդյունաբերության և գյուղատնտեսության գործերին, պլենումի որոշմամբ ստեղծվեցին ՍՄԿՊ Կենտկոմի երեք բյուրո՝ Արդյունաբերության ու շինարարության, Գյուղատնտեսության, Քիմիական ու թեթև արդյունաբերության: Միաժամանակ ՍՄԿՊ Կենտկոմին առընթեր կազմվեցին Կազմակերպական-պարտիական հարցերի հանձնաժողով, ինչպես նաև Իդեոլոգիական հանձնաժողով:

Պարտիական ղեկավար նոր օրգանների ընտրության համար 1962 թ. դեկտեմբերին և 1963 թ. հունվարին անցկացվելու են կոլտնտեսային-սովխոզային վարչությունների պարտիական կազմակերպությունների, ինչպես նաև քաղաքային, քաղաքների շրջանային կոնֆերանսներ, արդյունաբերական ու գյուղատնտեսական պարտիական կազմակերպությունների մարզային ու երկրամասային կոնֆերանսներ:

Ակնբախ են պարտիական կազմակերպական նոր կառուցվածքի առավելությունները: Այն թույլ կտա պարտիական ղեկավարությունը մոտեցնել արտադրությանը, ավելի օպերատիվ, կոնկրետ ու որակյալ ղեկավարել թե՛ արդյունաբերությունը և թե՛ գյուղատնտեսությունը, խոր գործիմացությամբ լուծել պրակտիկ խնդիրները, բարենպաստ պայմաններ կստեղծվեն ավելի լրիվ օգտագործելու մեր տնտեսության ռեզերվներն ու հնարավորությունները, արագացնելու գիտության, տեխնիկայի նորագույն նվաճումների, առաջավոր փորձի արմատավորումը արտադրության մեջ, սերտորեն զուգակցելու պարտիական կազմակերպական ու քաղաքական աշխատանքը, ավելի լավ կազմակերպելու վերահսկողությունը պարտիայի ու կառավարության դիրեկտիվների կատարման նկատմամբ:

Պարտիայի Կենտկոմի Նոյեմբերյան պլենումը միաժամանակ առանձին ուշադրություն հատկացրեց պարտիական-պետական վերահսկողության լենին-



յան սկզբունքների վերականգնման ու այն խստորեն կիրառելու, պարտիական, պետական և հասարակական վերահսկողության բարելավման ու կատարելագործման հարցերին: «Վերահսկողության և կատարման ստուգման ճիշտ դրվածքը,— ասաց Ն. Ս. Խրուշչովը,— պարտիայի, ամբողջ պետության գործունեության լենինյան կարևորագույն սկզբունքն է, պարտիական ու պետական ղեկավարությունը կատարելագործելու, աշխատավորների հետ պարտիայի կապերն ամրապնդելու, հասարակության գործերի կառավարմանը մասսաներին ներգրավելու զորեղ միջոց»:

Սովետական իշխանության առաջին տարիներին Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ մեր երկրում ստեղծվեց պարտիական-պետական վերահսկողության կուռ սիստեմ՝ հանձին ԿՎՀ-ԲԳՏ-ի· Դա վերահսկողության ամենադեմոկրատական սիստեմն էր, որին ակտիվ մասնակցում էին աշխատավորական ամենալայն զանգվածները: Այն պարտիայի և պետության ձեռքին սուր զենք էր բյուրոկրատիզմի ու քաշքշուկի, իշխանությունը չարաշահողների, պորտաբույծների և ժողովրդական բարիքը հափշտակողների դեմ մղվող պայքարում: Սակայն անհատի պաշտամունքի ժամանակաշրջանում կոպիտ կերպով խախտվեց այդ միասնական պարտիական-պետական վերահսկողության լենինյան սկզբունքը և վերահսկողության այդ հիանալի սիստեմը փոխարինվեց մասսաներից կտրված բյուրոկրատական վերահսկիչ ապարատով:

Պլենումը խնդիր դրեց լիովին վերականգնել պարտիական ու պետական միասնական, համապարփակ, մշտապես գործող վերահսկողության սիստեմը, վերահսկողության գործին մասնակից դարձնելով աշխատավորական ամենալայն մասսաներին: Այդ նպատակով կազմվեց պարտիական և պետական վերահսկողության միասնական օրգան՝ ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Պարտիական-պետական վերահսկողության կոմիտե՝ համապատասխան տեղական օրգաններով, որոնց կարևորագույն խնդիրներն են՝ օգնություն պարտիային ու պետությանը ՍՄԿՊ Ծրագրի իրականացման, պարտիայի ու կառավարության դիրեկտիվների կատարման սիստեմատիկ ստուգման կազմակերպման, կոմունիստական շինարարության ղեկավարման հետագա կատարելագործման, պարտիական և պետական կարգապահության և սոցիալիստական օրինականության պահպանման գործում: Դրան համապատասխան ՍՄԿՊ Կենտկոմին առընթեր Պարտիական վերահսկողության կոմիտեն վերակազմվում է ՍՄԿՊ Կենտկոմին առընթեր Պարտհանձնաժողովի, իսկ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Պետական վերահսկողության հանձնաժողովը վերացվում է:

Վերահսկողության սիստեմի վերակառուցման հետ մեկտեղ պլենումը խնդիր դրեց ամեն կերպ ուժեղացնել պարտիական և հասարակական վերահսկողությունը, բարձրացնել բոլոր աշխատողների պատասխանատվությունը հանձնարարված գործի, պարտիայի ու կառավարության դիրեկտիվների կատարման համար, մշտապես ստուգել մարդկանց, ստուգել գործի փաստական կատարումը:

«Սակայն պետք է հաստատ հիշել,— ասված է Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ,— որ պարտիական օրգանների, ինչպես նաև արդյունաբերության ու գյուղատնտեսության կառավարման օրգանների ամենակատարյալ կառուցվածքը ցանկալի արդյունք չի տա, եթե մենք արտադրության ղեկավարման գլուխ չկանգնեցնենք եռանդուն, տաղանդավոր կազմակերպիչների, որոնք լավ գիտեն համապատասխանաբար արդյունաբերական կամ գյուղատնտեսական արտա-

դրությունը, որոնք պատրաստ են ոևոլյուցիոն կրքոտությամբ պայքարելու պարտիայի գործի համար»:

Պլենումը պարտիական կազմակերպություններից պահանջեց, որպեսզի պարտիական, սովետական և մյուս օրգանները կադրերով կոմպլեկտավորելու առաջիկա աշխատանքը կատարեն ուշի-ուշով և խելացի, ճիշտ տեղաբաշխեն ու օգտագործեն մեր ոսկյա հարուստ կադրերը:

Մեր էկոնոմիկայի զարգացման տեմպերի արագացման գործում մեծ նշանակություն ունեն տեխնիկական քաղաքականության ղեկավարման կատարելագործման և տնտեսական կառավարման մեթոդների բարելավման հարցերը, որոնք բազմակողմանի քննության առնվեցին պլենումում: Անհրաժեշտ համարվեց վերակազմել գիտահետազոտական և նախագծային կազմակերպությունների ղեկավարությունը, վերացնել նրանց գործունեության մեջ եղած զուգահեռականությունն ու մասնատվածությունը, կենտրոնացնել տեխնիկական քաղաքականության ղեկավարումը, ստեղծել կուռ ու միասնական սիստեմ, նպատակ ունենալով ապահովել գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների ավելի արագ արմատավորումը ժողովրդական տնտեսության մեջ: Պլենումը լուրջ ուշադրություն հատկացրեց նաև սոցիալիստական էկոնոմիկայի գիտական պլանավորման, արդյունաբերության ու շինարարության կառավարման գործի հետագա բարելավման ու կատարելագործման, աշխատանքի արտադրողականության բարձրացման և ձեռնարկությունների կառավարման դեմոկրատական սկզբունքների զարգացման, տնտեսական շրջանների հետագա խոշորացման հարցերին:

ՍՄԿՊ Կենտկոմի Նոյեմբերյան պլենումի որոշումները, որոնք միահամուռ ու լիակատար պաշտպանություն, ջերմ հավանություն գտան ամբողջ պարտիայի ու ժողովրդի կողմից, կարևոր ուղենիշ կդառնան մեր կյանքում և մեծապես կնպաստեն երկրի արտադրողական ուժերի հետագա զարգացմանը, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի արագ ստեղծմանը: Պլենումի մշակած քաղաքական նշանակություն ունեցող միջոցառումները կօգնեն է՛լ ավելի հաջող կատարելու XXII համագումարի առաջադրած խնդիրները, նոր թափով առաջ մղելու կոմունիստական շինարարությունը:

Հաշված օրեր են մնում: Շուտով մեր երկիրը կբևակոխի յոթնամյակի հինգերորդ տարին: Սովետական ժողովրդի առջև ծառանում են նոր, ավելի պատասխանատու խնդիրներ. 1963 թ. արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկումն ավելանալու է 8 տոկոսով, պետական կապիտալ ներդրումների ծավալը կկազմի ավելի քան 33 միլիարդ ռուբլի: Նոր թափ կհադորդվի կապիտալ շինարարությանը՝ կկառուցվեն հազարավոր խոշոր գործարաններ, հանքահորեր, էլեկտրակայաններ, միլիոնավոր նոր բնակարաններ: Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման բնագավառում յոթնամյակի հինգերորդ տարվա մեր բնագիծն է՝ մթերել 4,2—4,5 միլիարդ փութ հացահատիկ, 9,5 միլիոն տոննա միս, մոտ 35 միլիոն տոննա կաթ և այլն:

Անկասկած, ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Նոյեմբերյան պլենումի ընդունած որոշումները, պարտիական կազմակերպությունների ամբողջ աշխատանքի լուրջ բարելավումը կարևոր դեր կխաղան ժողովրդական տնտեսության հետագա վերելքի գործում, կխթանեն աշխատավորական մասսաների ստեղծագործական ակտիվությունն ու նախաձեռնությունը, կնպաստեն աշխատանքի արտադրողականության բարձրացմանը.

---

# ՀՄՏՈՐԵՆ ԶՈՒԳԱԿՑԵԼ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԵՎ ԿԱԶՄԱԿԵՐՊԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ

Պատմական յուրաքանչյուր ժամանակաշրջան ունի իր առանձնահատկությունները, հասարակական կյանքի իմաստը բնորոշող տարբերանիշները: Անցած տարին մեր երկրի աշխատավորության համար նշանակալից էր պարտիայի XXII համագումարի պատմական որոշումների իրականացման ուղղությամբ ծավալված իսկապես համաժողովրդական պայքարով:

Արդեն կարելի է ամփոփել համագումարի որոշումների կենսագործման ուղղությամբ կատարված աշխատանքի առաջին արդյունքները, անել համապատասխան ընդհանրացումներ՝ ուժերը վերադասավորելու, պայքարում ավելի բարձր կազմակերպվածություն մտցնելու, նոր բնագծեր նվաճելու համար:

Այդ հարցերի քննարկմանն էր նվիրված Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի վերջերս տեղի ունեցած հինգերորդ պլենումը: ՍՄԿՊ XXII համագումարի որոշումների իրագործման ուղղությամբ կատարվող քաղաքական և կազմակերպական աշխատանքի մասին զեկուցեցին ՀԿՊ Լենինականի քաղկոմի քարտուղար ընկ. Գ. Ղարիբջանյանը, ՀԿՊ Երևանի կազմակերպության 26 կոմիսարների անվան շրջկոմի քարտուղար ընկ. Ն. Մուրադյանը և Էջմիածնի կոլտնտեսային-սովխոզային-արտադրական վարչությունում ՀԿՊ Կենտկոմի պարտկազմակերպիչ ընկ. Գ. Հովհաննիսյանը:

Պլենումում գոհունակությամբ նշվեց, որ, ինչպես Լենինականի, Երևանի 26 կոմիսարների անվան շրջանի, Էջմիածնի արտադրական վարչության, այնպես էլ ռեսպուբլիկայի մյուս քաղաքների ու շրջանների արդյունաբերական ձեռնարկությունները, տրանսպորտի ու շինարարական կազմակերպությունները, կոլտնտեսություններն ու սովխոզները համագումարից հետո անցած ժամանակամիջոցում ձեռք են բերել որոշակի հաջողություններ:

Լենինական քաղաքի շատ ձեռնարկություններ, այդ թվում՝ միկրոէլեկտրաշարժիչների գործարանը, գուլպայի և մանվածքային ֆաբրիկաները, երկաթուղային հանգույցի դեպոները զգալի չափով գերակատարել են 1962 թվականի 9 ամիսների արտադրական պլանները: Քաղաքում շինարարական աշխատանքի պլանը կատարվել է 102 տոկոսով, իսկ բնակելի շենքերի կառուցման պլանը՝ 111,2 տոկոսով:

Երևանի 26 կոմիսարների անվան շրջանի արդյունաբերական ձեռնարկություններն ընթացիկ տարվա առաջին 9 ամիսների պլանը կատարել են 104,8 տոկոսով, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ ապահովելով 9,7 տոկոսի աճ: Շրջանի ձեռնարկություններն այդ ամիսներին ժողովրդական տնտեսությանը պլանից դուրս տվել են 3,5 միլիոն ռուբլու ար-

տադրանք: Աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը կատարվել է 104,6 տոկոսով, թողարկվող արտադրանքի ինքնարժեքը իջեցվել է 1,7 տոկոսով:

Քիչ չեն նաև Էջմիածնի տերիտորիալ-արտադրական վարչության կոլտնտեսությունների ու սովխոզների հաջողությունները: Նրանք այս տարի, նախորդ տարիների համեմատությամբ զգալիորեն ավելացրել են խաղողի, բանջարաբոստանային կուլտուրաների արտադրությունն ու վաճառքը: Խաղողի մթերման պլանը կատարվել է 126,5, հացահատիկինը՝ 114, բանջարեղենինը՝ 100, բոժոժինը՝ 100 տոկոսով:

Այդ հաջողությունները ձեռք են բերվել պարտիական կազմակերպությունների ամենօրյա ղեկավարությամբ, նրանց կազմակերպական աշխատանքի շնորհիվ: Պարտիական կազմակերպություններն սկսել են ավելի հմտորեն կազմակերպել ու ղեկավարել աշխատավորության կոմունիստական դաստիարակության գործը, ընդլայնել են քաղաքական աշխատանքի ոլորտը, բարելավել սոցիալիստական մրցության ղեկավարությունը:

Բանվորների ու կոլտնտեսականների աշխատանքային խանդավառության վերելքն է բնորոշում այն փաստը, որ 26 կոմիսարների անվան շրջանում կոմունիստական աշխատանքի շարժման մեջ ընդգրկված են մոտ 10 հազար, Լենինականում՝ ավելի քան 5000 աշխատավորներ: Բազմաթիվ կոլեկտիվներ, բրիգադներ արդեն արժանացել են կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի բարձր կոչման:

Նշելով ՍՄԿԿ XXII համագումարի որոշումների կատարման ուղղությամբ ձեռք բերված հաջողությունները, ՀԿԿ Կենտկոմի պլենումը միաժամանակ ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրեց աշխատանքում դեռևս գոյություն ունեցող թերությունների վրա: Պլենումն իրավամբ նշեց, որ ռեսպուբլիկայի առանձին պարտիական կազմակերպություններ համագումարի որոշումների կենսագործման համար ծավալված պայքարում անբավարար են օգտագործում կազմակերպական ու գաղափարական աշխատանքի բոլոր լծակները, հաճախ մոռանում են պարտիայի ցուցումը կազմակերպական և գաղափարական աշխատանքի սերտ միասնության մասին: Հիմա էլ կարելի է բերել բազմաթիվ օրինակներ, որոնք բնութագրում են տարվող քաղաքական աշխատանքի կտրվածությունը կյանքից, այդ աշխատանքում տեղ գտած շաբլոնը, «լուսավորչական» մոտեցումը: Պատահական չէր, որ պլենումում խիստ քննադատության ենթարկվեց Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի ղեկավարությունը և, մասնավորապես, պարտիական կազմակերպությունն ու նրա կոմիտեն: Կոմբինատում աշխատում են 640 կոմունիստ, 2200 կոմերիտական, գործում են ցեխային 10 սկզբնական պարտկազմակերպություն, 43 պարտիական խմբեր, ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկող 13 հանձնաժողով: Անտարակույս, այդ ուժերի ճիշտ օգտագործման դեպքում հնարավոր կլինի հաջողությամբ հաղթահարել ձեռնարկության առջև ծառացած դժվարությունները, լուծել արտադրության վերելքի բոլոր կենսական հարցերը, կարճ ժամանակամիջոցում այդ խոշոր ձեռնարկությունը հասցնել առաջավորներին:

Մինչդեռ վիճակը կոմբինատում բարվոք համարել չի կարելի: Թողարկվող արտադրանքի 1962 թվականի անցած 9 ամիսների պլանը կոմբինատը կատարել է ընդամենը 95 տոկոսով, կամ ժողովրդական տնտեսությանը չի տվել



1,735 հազար ռուբլու արտադրանք: Բարձրացել է արտադրանքի ինքնարժեքը, չի կատարվել աշխատանքի արտադրողականության սահմանված պլանը:

Ինչումն է բանը. որոնք են ձեռնարկության ետ մնալու պատճառները: Դժբախտաբար այդ հարցերին չկարողացավ պատասխանել կոմբինատի դիրեկտոր ընկեր Կարգանյանը: Նրա ելույթը Կենտկոմի պլենումում պատասխանատվությունից խուսափելու անհաջող փորձ էր միայն, որն իրավամբ չբավարարեց պլենումի մասնակիցներին:

Պլանների թերակատարման հիմնական պատճառը, ինչպես նշվեց պլենումում, աշխատանքի անբավարար կազմակերպումն է և քաղաքական աշխատանքի դեռևս ցածր մակարդակը:

Այս խոշոր ձեռնարկության գործունեության վերլուծությունը կրկին անգամ ապացուցում է այն հանրահայտ դրույթը, որ կազմակերպական և քաղաքական աշխատանքի տրոհվածությունը, աշխատավորների դաստիարակության գործի կտրվածությունը կոլեկտիվի առջև ծառացած խնդիրներից, բոլոր դեպքերում բացասաբար են անդրադառնում տնտեսական ցուցանիշների վրա:

Լենինական քաղաքի, Երևանի 26 կոմիսարների անվան շրջանի, ինչպես նաև այլ քաղաքների ու շրջանների արդյունաբերական ձեռնարկություններում հաճախ թերագնահատվում է կոմունիստական աշխատանքի շարժման դաստիարակչական նշանակությունը, կոմունիստների և կոմերիտականների զգալի մասը չի ընդգրկված այդ շարժման մեջ:

Պլենումում լուրջ թերություններ բացահայտվեցին պարտիական կազմակերպական աշխատանքի բնագավառում: Միշտ չէ, որ որոշումների կատարման համար անհրաժեշտ կազմակերպական աշխատանք է ծավալվում: Հաշվետու ժամանակաշրջանում ՀԿԿ Երևանի կազմակերպության 26 կոմիսարների շրջկոմը 4 անգամ քննարկել է «Գունարդշին» շինարարական տրեստի գործունեության հետ կապված հարցեր, ընդունվել են որոշումներ, սակայն գործերը տրեստում, այդ բոլորից հետո, չեն բարելավվել: Այս տարվա 8 ամիսների պլանը տրեստը կատարել է 95,2 տոկոսով:

Գյուղատնտեսական արտադրության զանազան հարցերի մասին քիչ որոշումներ չեն ընդունել ՀԿԿ Էջմիածնի, Հոկտեմբերյանի և Շահումյանի շրջկոմները, Էջմիածնի տերիտորիալ արտադրական վարչության կոլտնտեսությունների ու սովխոզների պարտիական կազմակերպությունները. չնայած դրան վարչության մի շարք կոլտնտեսություններում ու սովխոզներում թերակատարվում են անասնամթերքների և բամբակի մթերումների պլանները. անցյալ տարվա համեմատությամբ պակասել է հանրային անասունների գլխաքանակը: Որոշ պարտիական աշխատողներ մոռանում են, որ կազմակերպչական աշխատանքում անբավարար հետևողականությունը նվազեցնում է իրագործվող միջոցառումների արդյունավետությունը, թուլացնում պարտիական որոշումների կազմակերպող դերը:

Ընդգծելով, որ մի շարք պարտիական կազմակերպություններ դեռևս չեն հաղթահարել պարտիական պրոպագանդայի կտրվածությունը կյանքից, քննադատելով պարտիական քաղլուսցանցի աշխատանքներում գոյություն ունեցող թերությունները, պլենումը պարտիական օրգանների ուշադրությունը հրավիրեց այն հարցի վրա, որ վերջիններս անհրաժեշտ նշանակություն չեն տալիս քաղաքական ուսուցման հաջորդականությանը: Կարելի է բերել բազմաթիվ օրինակներ, երբ նույն մարդիկ, միևնույն խմբակներում ամեն տարի ուսումնասի-

րում են միևնույն առարկաները: Խստորեն կիրառելով ուսման ձևերի ընտրության կամավորության սկզբունքը, պարտիական կազմակերպություններն այսպիսով քաղաքական լուսավորության տարերայնորեն ստեղծվող ցանցի պասսիվ գրանցողի դեր են ստանձնում, ակտիվորեն չեն ներազդում այդ ձևերի ճիշտ ընտրության ու ուսուցման մեջ հաջողականություն սահմանելու գործին: Մինչդեռ հայտնի է, որ Միության շատ պարտիական կազմակերպություններում իրականացվում է քաղաքական լուսավորության մի քանի տարիների համար նախատեսված սիստեմ, որը բացառում է առարկաների ու թեմաների անհիմաստ կրկնությունը:

Պլենումը ռեսպուբլիկայի բոլոր պարտիական և հասարակական կազմակերպությունների, սովետական և տնտեսական օրգանների գլխավոր խնդիրը համարեց ՍՄԿՊ XXII համագումարի որոշումների անթերի կենսագործումը, արտադրական պլանների անվերապահ կատարումը յուրաքանչյուր ձեռնարկության, կոլտնտեսության և սովխոզի կողմից:

Այդ կարևորագույն խնդրի իրականացման գրավականը պարտիականկազմակերպչական ու գաղափարական աշխատանքը հմտորեն զուգակցելն է կյանքի ու աշխատանքի բոլոր բնագավառներում: Անհրաժեշտ է արմատապես բարելավել աշխատավորության կոմունիստական դաստիարակության գործը, նկատի ունենալով, որ դա պարտիական կազմակերպությունների, մեր ղեկավար կադրերի անդրդվելի աշխատանքն է արտադրության ճիշտ կազմակերպման, սովետական մարդկանց կյանքի մակարդակի բարձրացման համար: Դաստիարակչական աշխատանքի մակարդակի մասին պետք է դատել ոչ թե ըստ կազմակերպված դասախոսությունների քանակի, այլ ըստ նրա արդյունքի, ըստ մարդու վրա նրա ունեցած ներգործության: Դաստիարակչական աշխատանքի գլխավոր չափանիշը նրա ներգործունությունն է:

Պլենումը պահանջեց բարելավել պրոպագանդիստական աշխատանքի ղեկավարությունը, մարքսիզմ-լենինիզմի պրոպագանդան սերտորեն կապել տվյալ կոլեկտիվի, ձեռնարկության կոնկրետ խնդիրների հետ, հատուկ ուշադրություն նվիրել կոմունիստական աշխատանքի հետագա ծավալմանը և այդ շարժման դաստիարակչական բնույթի զարգացմանը:

Պլենումը մշակեց մի շարք միջոցառումներ, որոնց իրականացումը հնարավորություն կտա առաջիկայում արմատապես բարելավելու արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի և գյուղատնտեսության պարտիական ղեկավարությունը, հաջողությամբ լուծելու ռեսպուբլիկայի առջև ծառացած լուրջ ու պատասխանատու խնդիրները:

ՍՄԿՊ Կենտկոմի Նոյեմբերյան պլենումի որոշումների կենսագործումը մեծապես կնպաստի ավելի սերտորեն զուգակցելու կազմակերպական-քաղաքական աշխատանքը և այն ի սպաս դնելու տնտեսական շինարարության գլխավոր խնդիրների հաջող լուծմանը:

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԼԵՆԻՆՅԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՂԹԱՆԱԿԸ

### (ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ ՔԱՌԱՍՆԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**Ռ. ՎԱՐԴԱՆՅԱՆ**

*Քառասուն տարի առաջ կազմավորվեց Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը՝ աշխարհում առաջին բազմազգ սոցիալիստական պետությունը։ ՍՍՌՄ-ի փորձում մարմնավորված է Վ. Ի. Լենինի և լենինյան պարտիայի իմաստնությունը։*

*Մեր պարտիայի կենսագործած լենինյան ազգային քաղաքականությունը հանգեցրեց պատմական նվաճումների։ Ն. Ս. Խրուշչովի խոսքերով ասած «ՍՍՌՄ-ում ստեղծվեց ընդհանուր բնորոշ գծեր ունեցող տարբեր ազգությունների մարդկանց պատմական նոր ընդհանրություն՝ սովետական ժողովուրդը։ Նրանք ունեն ընդհանուր սոցիալիստական Հայրենիք՝ ՍՍՌՄ-ը, ընդհանուր տնտեսական բազա՝ սոցիալիստական տնտեսությունը, ընդհանուր սոցիալ-դասակարգային կառուցվածք, ընդհանուր աշխարհայացք՝ մարքսիզմ-լենինիզմը, ընդհանուր նպատակ՝ կոմունիզմի կառուցումը, շատ ընդհանուր գծեր հոգևոր կերպարում, հոգեբանության մեջ»* [1]*։*

*ՍՍՌ Միությունը սուվերեն և կամավոր հիմունքներով միավորված սոցիալիստական պետությունների ֆեդերատիվ տերություն է։ Սովետական տիպի ֆեդերացիան Վ. Ի. Լենինի մեծագույն հայտնագործությունն է։*

*Մեր երկրի պետական կառուցվածքի վերաբերյալ Վ. Ի. Լենինի պլանի հիմքում դրված է ազգային հարցի մարքսիստական խոր ըմբռնումը։ Պարտիան իր ծրագրում որպես ազգերի հավասարության հիմնական պայման առաջադրել է ազգերի ինքնորոշման իրավունքը՝ ընդհուպ մինչև անջատվելու և ինքնուրույն պետություններ կազմելու իրավունքը։ Լենինը գտնում էր, որ ազգերի ինքնորոշումը հնարավոր է տարբեր ձևերով՝ որպես ավտոնոմիա՝ միասնական, ունիտար պետության շրջանակներում, որպես մի քանի պետությունների ֆեդերացիա և այլ ձևերով։ Թե այդ ձևերից որն է առավել նպատակահարմարը և որն է նպաստում պրոլետարիատի ռևոլյուցիոն պայքարին՝ ամբողջապես որոշվում է յուրաքանչյուր երկրի կոնկրետ հանգամանքներով։*

*Ելնելով հենց Ռուսաստանի կոնկրետ-պատմական պայմաններից՝ Վ. Ի. Լենինը մշակեց պարտիայի քաղաքականությունը տվյալ հարցի վերաբեր-*

---

*[1] ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 165։*

ցալ։ Ռևոլյուցիային նախորդող տարիներին, զարգացնելով Մարքսի և Էնգելսի հայացքները, Վ. Ի. Լենինը բացասաբար է վերաբերվել պրոլետարիատի դիկտատուրայի պետական կառուցվածքի ֆեդերատիվ ձևին, թեև ֆեդերացիան հնարավոր էր համարում առանձին երկրների ազգային յուրահատուկ պայմաններում։ Այն ժամանակ Լենինը գտնում էր, թե հավասար մյուս պայմանների առկայության դեպքում դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքներով կառուցված ունիտար պետությունը հաղթանակած պրոլետարիատի պետական կառուցվածքի առավել նպատակահարմար ձևը կլինի։ Ուստի նա բազմիցս նշում էր, թե Ռուսաստանում պրոլետարական պետությունը ո՛չ թե ֆեդերատիվ, այլ ունիտար կլինի։ Վ. Ի. Լենինի այս տեսակետը հիմնված էր Ռուսաստանի պրոլետարիատի ինտերնացիոնալ ուժերի ո՛չ թե մասնատման, այլ միավորման, համախմբման անհրաժեշտությունն ընդունելու վրա։ Միայն այդպիսի միավորմամբ կարելի էր հաղթանակ ձեռք բերել ցարիզմի ու բուրժուազիայի դեմ։

1917 թվականի փետրվարին ցարիզմի դեմ տարած հաղթանակն ստեղծեց նոր իրադրություն, ազգային-ազատագրական շարժման բարդ պայմաններ։ Ժամանակավոր կառավարությունը կանգնած լինելով մեծապետական շովինիզմի դիրքերում, շարունակում էր ազգերի ճնշման քաղաքականությունը, որի հետևանքով ուժեղացավ Ռուսաստանի ծայրամասերի ազգային-ազատագրական շարժումը։ Սկսվեց Ռուսաստանյան կայսրության փլուզման պրոցեսը։ Սակայն պրոլետարիատի ռևոլյուցիոն հոտառությունը և քաղաքական գիտակցությունը նրան տարան ո՛չ թե դեպի իր ուժերի ջլատումը, այլ դեպի ռուս ժողովրդի հետ ինտերնացիոնալ միավորումը ընդհանուր թշնամու՝ բուրժուազիայի դեմ մղվող պայքարում։

Առկա երկու տենդենցները՝ ինքնորոշվելու և ռևոլյուցիոն պայքարում միավորվելու ձգտումը, բնական է, փոխեցին պարտիայի հայացքները Ռուսաստանի պայմաններում ֆեդերացիայի նպատակահարմարության և անհրաժեշտության նկատմամբ։ Վ. Ի. Լենինը տեսնում էր, որ ստեղծված կոնկրետպատմական իրադրության մեջ ուժեղ, խոշոր սոցիալիստական պետության ձևը կարող է լինել ֆեդերացիան։ Այսպիսով, ֆեդերացիայի հնարավորությունն արդեն ընդունվում էր, բայց դեռ ևս չէր դարձել նրա անհրաժեշտությունը։

1917 թվականի մայիս-հունիս ամիսներին Վ. Ի. Լենինը խոսում է ֆեդերացիայի ընդունելիության մասին, հանդես գալով բոնի բյուրոկրատական ցենտրալիզմի պաշտպանման մենշևիկյան գծի դեմ։ Ռուսաստանի պայմաններում ֆեդերացիայի ընդունելիության մասին ավելի հանգամանորեն ու կոնկրետ Վ. Ի. Լենինը խոսում է «Պետություն և ռևոլյուցիա» իր աշխատության մեջ (1917 թ. օգոստոս-սեպտեմբեր)։ Իսկ երբ հաղթանակեց սոցիալիստական ռևոլյուցիան և մեկը մյուսի հետևից սկսեցին առաջանալ ազգային սովետական ռեսպուբլիկաները, Վ. Ի. Լենինը և պարտիան արդեն կտրականապես հայտարարեցին ֆեդերացիայի ո՛չ թե ընդունելիության, այլ անհրաժեշտության մասին որպես ազգային ռեսպուբլիկաներին միասնական սոցիալիստական պետության մեջ միավորող պետական միակ հնարավոր ձև։ ՌԿ(բ)Պ VIII համագումարում պարտիայի Ծրագիրը քննարկվելիս Վ. Ի. Լենինն ասում էր, թե երբ երևան եկան պրոլետարական ռեսպուբլիկաներ, «մենք կարողացանք գրել այն, ինչ մենք այստեղ գրել ենք՝ «Սովետական տիպով կազմակերպված պետությունների ֆեդերատիվ միավորում» [1]։

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 29, էջ 200։



Սոցիալիստական ֆեդերացիան բնութագրելով որպես բուրժուականից տարբերվող նոր տիպի ֆեդերացիա, Վ. Ի. Լենինը նշում էր, որ այն ո՛չ թե միմյանցից անջատում, այլ մերձեցնում է ժողովուրդներին, պայմաններ ստեղծում միավորված բոլոր ազգային ռեսպուբլիկաների և մարզերի էկոնոմիկայի ու կուլտուրայի ներդաշնակ զարգացման համար։ Նրա այդ էությունը բնորոշվում է պրոլետարիատի դիկտատուրայով և սոցիալիստական դեմոկրատիզմով։ «Միանգամայն կամովին,— ասում էր Վ. Ի. Լենինը,— առանց ստի ու բռնության, կաճի այդ ֆեդերացիան, և այն անխորտակելի է։ Նրա անխորտակելիության լավագույն երաշխիքն են այն օրենքները, այն պետական կառուցվածքը, որ մենք ստեղծում ենք մեզ մոտ» [1]։

Ռևոլյուցիայի հաղթանակը և պրոլետարիատի դիկտատուրայի ու Սովետական իշխանության ամրապնդումը ֆեդերացիայի հարցը դարձրին հրատապ գործնական խնդիր։ Սովետական պետությունը ծնունդ առավ որպես ունիտար, միասնական բազմազգ պետություն՝ Ռուսաստանյան կայսրության ամբողջ տերիտորիայի վրա։

Բոլշևիկների ազդարարած ինքնորոշման ծրագիրն առաջին իսկ օրերից Սովետական պետությունը ֆեդերատիվ պետություն դարձնելու սկիզբը դրեց։ Բայց, ինչպես գրում էր Լենինը, ՍՍՌ Միությանը «հարկավոր էր հասնել մեծագույն համբերությամբ և զգուշությամբ» [2], մի քանի տարվա պետական շինարարության, մասսաների փորձի վերլուծության, ազգերի փոխհարաբերությունների բոլոր կողմերի, նրանց փոխադարձ և ընդհանուր շահերի ճիշտ գնահատման միջոցով։

Լենինյան ազգային քաղաքականության օրենսդրական արտահայտությունը եղան «Դեկրետ հաշտության մասին», «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիան», «Դիմում Ռուսաստանի և Արևելքի բոլոր աշխատավոր մուսուլմաններին» պատմական փաստաթղթերը։ Նախկինում ճնշված և վերջապես հավասարություն և ինքնորոշման իրավունք ձեռք բերած ազգերն ու ազգությունները չէին ցանկանում անջատվել Ռուսաստանի աշխատավորներից, այլ, ընդհակառակը, ձգտում էին մերձենալ, միավորվել նրանց հետ։ Արտահայտելով աշխատավոր ժողովրդի իղձերը, Սովետների Համառուսաստանյան III համագումարը 1918 թվականի հունվարին Ռուսաստանյան ռեսպուբլիկան հռչակեց ազատ ու անկախ ազգերի ֆեդերացիա։ Լենինի գրած և համագումարի միահամուռ հավանությանն արժանացած «Աշխատավոր ու շահագործվող ժողովրդի իրավունքների դեկլարացիայի» մեջ ասվում էր, որ «Ռուսաստանի Սովետական ռեսպուբլիկան հիմնվում է ազատ ազգերի ազատ միության հիմունքով, իբրև Սովետական ազգային ռեսպուբլիկաների ֆեդերացիա» [3]։ Ստեղծվեց ազգերի երկու տիպի ֆեդերատիվ միավորում՝ ազգերի տերիտորիալ ավտոնոմիայի վրա հիմնված ֆեդերացիա և պայմանագրային ֆեդերացիա։ Առաջին տիպը ՌՍՖՍՌ-ի ներսում ազգերի փոխհարաբերությունների ձևն էր, իսկ երկրորդը՝ ՌՍՖՍՌ-ի և անկախ, ինքնուրույն ազգային Սովետական ռեսպուբլիկաների փոխհարաբերությունների ձևը։

Ռուսաստանյան ֆեդերացիայի զարգացման ընթացքում ձևավորվեցին և

[1] Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 26, էջ 588—589։

[2] Նույն տեղը, հատ. 30, էջ 368։

[3] Նույն տեղը, հատ. 26, էջ 517։

պարտիայի կողմից օգտագործվեցին սովետական ազգային ավտոնոմիայի եր-
կու տիպեր. վարչական՝ ավտոնոմ ազգային մարզը և քաղաքական՝ ավտոնոմ
ազգային ռեսպուբլիկան։ Այդ տիպերի հմուտ զուգակցմամբ հնարավոր դար-
ձավ Ռուսաստանն առավել սերտ կապել ծայրամասային մարզերի հետ, կար-
գավորել տնտեսապես ու քաղաքականապես միասնական պետական օրգա-
նիզմը։

Ինտերվենտներին երկրից վռնդելուց հետո Ուկրաինական Սովետական
Ռեսպուբլիկայի վերականգնումը, Էստոնական, Լիտվական, Լատվիական, Բե-
լոռուսական ռեսպուբլիկաների ստեղծումը կռեցին այդ ռեսպուբլիկաների ֆե-
դերատիվ կապերը ՌՍՖՍՌ-ի հետ, որոնք հիմնված էին պայմանագրերի վրա։
Շարունակվող քաղաքացիական պատերազմի պատճառով անհրաժեշտ էր միա-
վորել ուժերը հակառևոլյուցիայի դեմ մղվող պայքարում։ Ինչպես գրում էր
Վ. Ի. Լենինը, ռեսպուբլիկաների միավորումը ռազմական դաշինքի բնույթ էր
ընդունում։ Իրականացնելով «Ռազմական միավորման վերաբերյալ Կենտկոմի
դիրեկտիվի նախագծում» առաջարկված լենինյան գաղափարները, ՌՍՖՍՌ
Կենտգործկոմը 1919 թվականի հունիսի 1-ին ընդունեց դեկրետ միասնական
մարտական լագերում ինքնուրույն սովետական ռեսպուբլիկաների միավորման
մասին՝ «Համաշխարհային իմպերիալիզմի դեմ պայքարելու համար»։ Այդ
ռեսպուբլիկաների աշխատավորների և իշխանության գերագույն օրգանների
լիակատար համաձայնությամբ սկսվեց զինված ուժերի, ժողտնտխորհների,
երկաթուղային վարչությունների, ֆինանսների, աշխատանքի և մյուս ժողկո-
մատների միավորումը։

Ռեսպուբլիկաների ռազմական դաշինքի ստեղծումը ՌՍՖՍՌ-ի շուրջ
հանդիսացավ ո՛չ միայն քաղաքացիական պատերազմում հաղթանակ ձեռք
բերելու վճռական պայման, այլև առաջին աստիճանը պայմանագրային հի-
մունքով ռեսպուբլիկաների պետական միություն ստեղծելու ճանապարհին։
1920—1921 թվականներին Անդրկովկասի սովետական ռեսպուբլիկաների ա-
ռաջացումը և նրանց կողմից ՌՍՖՍՌ-ի հետ համագործակցելու վերաբերյալ
պայմանագրեր կնքելն ավելի ընդլայնեցին ու ամրապնդեցին պայմանագրային
ֆեդերատիվ կապերը ռեսպուբլիկաների միջև։ 1922 թվականին Հայաստանը,
Վրաստանը և Ադրբեջանը Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ միավորվեցին Սո-
վետական ռեսպուբլիկաների Անդրկովկասյան ֆեդերացիայում՝ ԱՍՖՍՌ-ում։
Այն հսկայական դեր խաղաց ցարիզմի սնուցած ազգային անվստահությունն
ու թշնամությունը հաղթահարելու, խաղաղությունն ու եղբայրական համագոր-
ծակցությունն ամրապնդելու գործում։

Արդեն քաղաքացիական պատերազմի տարիներին, առավել ևս պատերազ-
մից հետո բոլոր ռեսպուբլիկաների առջև ծառացան ժողովրդատնտեսական կա-
րևոր խնդիրներ, որոնց լուծումը պահանջում էր սովետական բոլոր ռեսպուբլի-
կաների միացյալ և համաձայնեցված ջանքեր։ Առանձնապես կարևոր նշանա-
կություն ուներ տնտեսության պլանային վարումը, որի վրա Վ. Ի. Լենինը ու-
շադրություն էր հրավիրում դեռ 1920 թվականին՝ «Ազգային և գաղութային
հարցերի վերաբերյալ թեզիսների սկզբնական ուրվագծում», որը գրել էր Կոմ-
ինտերնի II կոնգրեսի առթիվ։

1920—1921 թվականներին Լենինի կողմից «ԳՈԷԼՌՈ»-ի (Ռուսաստանի
էլեկտրիֆիկացման պետական հանձնաժողովի) պլանի մշակումը ցույց տվեց,
որ այդ պլանը կարող է իրականացվել միայն և միայն միասնական պլանով



որոշվող համատեղ ջանքերով։ Արդեն հնարավոր չէր շահել ընդհանուր գործը
միայն քաղաքական այնպիսի հիմքի վրա, ինչպիսին էր պայմանագրային ֆե-
դերացիան։ Կյանքն ավելի ու ավելի հրամայաբար էր պահանջում ՌՍՖՍՌ-ի
և մյուս Սովետական ռեսպուբլիկաների ավելի սերտ միություն, ֆեդերացիայի
մի նոր տիպ։ Միասնական միութենական ռեսպուբլիկայի կազմավորումը դառ-
նում էր պրոլետարիատի դիկտատուրայի՝ աշխարհում առաջին պետության ան-
հետաձգելի ու հրատապ հարցը։

Վ. Ի. Լենինի խորաթափանց հայացքն արդեն վաղուց էր նկատել այդպիսի
միության անհրաժեշտությունը։ Դեռևս 1917 թվականի հունիսին, Սովետների
I Համառուսաստանյան համագումարում Վ. Ի. Լենինը մարգարեաբար ասում
էր. «Թող Ռուսաստանը լինի ազատ ռեսպուբլիկաների միություն»։ Ռևոլյու-
ցիայից հետո այդ գաղափարը պարզորոշ արտահայտվել է «Մեծ նախաձեռ-
նություն» և այլ երկերում։ «Մեծ նախաձեռնություն» իր աշխատության մեջ
Վ. Ի. Լենինը, օրինակ, գրում էր, որ նոր կյանքի կառուցման ընթացքում աշ-
խատավորները միավորվում են «սկզբում մեկ սոցիալիստական պետության
մեջ, ապա Սովետական ռեսպուբլիկաների միության մեջ»[1]։ Իհարկե Վ. Ի. Լե-
նինի այս կարծիքներում արտահայտված չէին ոչ թե միութենական պետության
կազմակերպման կոնկրետ ձևերը, այլ միասնական միութենական պետության
անցնելու անհրաժեշտության ընդհանուր գաղափարը միայն։

Ուշադրությամբ ուսումնասիրելով Սովետական ռեսպուբլիկաների զար-
գացման պրոցեսները, Լենինը, պարտիան ո՛չ միայն փնտրում էին այդ ռես-
պուբլիկաների միության հնարավոր և անհրաժեշտ ձևը, այլև բեղմնավոր աշ-
խատանք էին կատարում միութենական պետություն կառուցելու համար։ Սովե-
տական ռեսպուբլիկաների զարգացման օբյեկտիվ պրոցեսները քայլ առ քայլ
տանում էին դեպի բազմազգ միութենական պետության ստեղծում, որը 1922
թվականի վերջերին արդեն փաստորեն ձևավորվել էր։ Պարզ էր, որ պայմա-
նագրային ֆեդերացիան սպառել էր իրեն և այլևս չէր կարող ծառայել սոցիա-
լիզմի կառուցման շահերին, այն միայն անցումնային փուլ էր միասնական
միութենական պետության առաջացման ճանապարհին։

1922 թվականի օգոստոսին ՌԿ(բ)Պ Կենտկոմը ստեղծեց հանձնաժողով՝
Սովետական ռեսպուբլիկաների պետական փոխհարաբերությունների և այդ
ռեսպուբլիկաների ու ՌՍՖՍՌ-ի պետական փոխհարաբերությունների ձևերի
վերաբերյալ առաջարկություններ մշակելու համար։

Այդ հանձնաժողովը քննության առավ զանազան նախագծեր, որոնք
հիմնված էին ֆեդերացիայի արդեն գոյություն ունեցող ձևերի՝ ավտոնոմիայի
կամ պայմանագրային ֆեդերացիայի վրա։ 1922 թվականի սեպտեմբերին
ՌԿ(բ)Պ Կենտկոմի հանձնաժողովը այն ժամանակ հիվանդ Վ. Ի. Լենինին ներ-
կայացրեց որոշում «ՌՍՖՍՌ-ի և անկախ ռեսպուբլիկաների փոխհարաբերու-
թյունների մասին», որն ընդունվել էր Ստալինի նախագծի հիման վրա։

Այս առաջարկության էությունն այն էր, որ միութենական ռեսպուբլիկա-
ները մտնում են ՌՍՖՍՌ-ի կազմի մեջ ավտոնոմ սկզբունքներով, որ հայտնի
էր «ավտոնոմացում» անունով։ Վ. Ի. Լենինը մերժեց այս նախագիծը, որպես
ազգերի սուվերեն իրավունքները սահմանափակող և որպես միավորման միակ
հնարավոր ուղի՝ առաջարկեց ՍՍՌՄ-ի ստեղծումը սուվերեն Սովետական ռես-

---

1 Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 29, էջ 524։

պուբլիկաների միության հիման վրա, որոնք այդ միության մեջ են մտնում հավասար իրավունքներով։ «Մենք,— 1922 թվականի սեպտեմբերի 27-ին գրում էր Վ. Ի. Լենինը ՌԿ(բ)Պ Կենտկոմի քաղբյուրոյի անդամներին,— մեզ իրավահավասար ենք համարում Ուկր(աինական) ՍՍՌ-ին ու մյուսներին և նրանց հետ համատեղ ու հավասար մտնում ենք նոր միության, նոր ֆեդերացիայի մեջ...»։ Այսպիսով, Վ. Ի. Լենինը հայտնագործեց ֆեդերացիայի մի նոր տիպ, որ մեծ ավանդ հանդիսացավ ազգային հարցի մարքս-լենինյան տեսության ու ծրագրի մեջ, այդ ծրագրի պրակտիկ իրականացման գործում։

Վ. Ի. Լենինը պարտիայի Կենտկոմին հասցեագրված նամակներում և, մասնավանդ, «Ազգությունների կամ «ավտոնոմացման» հարցի շուրջը» նամակում շեշտում էր Ստալինի առաջարկությունների մեծապետա-շովինիստական բնույթը։ Կենսագործելով հետևողական ինտերնացիոնալիզմ, Վ. Ի. Լենինը պարտիային սովորեցնում էր ո՛չ միայն ստեղծել ազգերի իրավունքների ու հնարավորությունների հավասարություն, այլև պայմաններ ստեղծել վերացնելու այն անհավասարությունը, որը պատմականորեն գոյություն ունի մեծ ու փոքր ազգերի միջև։

Անհրաժեշտ է, գրում էր Լենինը, ապահովել նախկինում ճնշված փոքր ազգերի առավելագույն վստահությունը դեպի նախկինում ճնշող մեծ ազգը, հաղթահարել նրանց անվստահությունը, կասկածամտությունը «մեծապետական» ազգի նկատմամբ։ Լենինն առաջարկում էր ամեն կերպ ամրապնդել սոցիալիստական ռեսպուբլիկաների միությունը, պատերազմ հայտարարել մեծապետական շովինիզմի և տեղական նացիոնալիզմի դեմ, զարգացնել ազգային լեզուներն ու կուլտուրան։

Ելնելով Վ. Ի. Լենինի ցուցումներից, պարտիան կազմակերպական աշխատանք ծավալեց Սովետական ռեսպուբլիկաների միավորումը օրենսդրականորեն ձևակերպելու ուղղությամբ։ Հարցը պարտիական և պետական մարմինների կողմից հիմնովին քննարկելուց և մշակելուց հետո, իր օրինական լուծումը գտավ։ Առաջացավ աշխարհում առաջին բազմազգ սոցիալիստական պետությունը, իրավահավասար ժողովուրդների կամավոր միավորումը՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը։

Հավասարության և իրավահավասարության սկզբունքները, որոնք իրենց մարմնավորումն էին գտել ՍՍՌՄ-ի կազմավորման քաղաքական ոլորտում, տնտեսապես ու կուլտուրապես իրականացան սոցիալիզմի կառուցման ընթացքում։ Միայն արդյունաբերության, գյուղատնտեսության զարգացման, կուլտուրայի համաչափ զարգացման միջոցով կարելի էր հասնել մեր երկրի բոլոր ազգերի իսկական հավասարության և բարգավաճման։ Հենց այդպիսին է մեր պարտիայի քաղաքականությունը, որն իրականացնում է Լենինի ավանդները։

ՍՍՌ Միության ստեղծումից հետո անցած տարիներում այնպիսի նշանակալից տեղաշարժեր են տեղի ունեցել ազգերի համակողմանի զարգացման ասպարեզում, որ նրանք վերածվել են սոցիալիստական ազգերի։ Տնտեսական կյանքի ընդհանրության հիման վրա առաջացած ազգերի գաղափարական-քաղաքական միասնությունը դարձավ ՍՍՌՄ ժողովուրդների ինտերնացիոնալիզմի, եղբայրական համագործակցության և բարեկամության հետագա զարգացման զորեղ միջոցը։ Աննախընթաց բարգավաճում, իսկական ազգային վերածնունդ են ապրում մեր Հայրենիքի բոլոր ժողովուրդները։ Մեր ռեսպուբլի-



կայի նվաճումները լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի վառ ապացույց են։

Մինչռևոլյուցիոն Հայաստանը ցարական Ռուսաստանի հետամնաց ծայրամասերից մեկն էր։ Բայց բոլոր ժողովուրդների և, առաջին հերթին, ռուս ժողովրդի եղբայրական օգնությամբ Հայաստանը Սովետական իշխանության տարիներին հասել է տնտեսական ու կուլտուրական զարգացման վիթխարի բարձունքների։

ՍՍՌ Միության ժողովուրդների հաջողությունների աղբյուրն են սոցիալիստական կարգերի առավելությունները և, հատկապես, ժողովուրդների բարեկամությունն ու փոխադարձ օգնությունը։ Բոլոր ազգերն ու ժողովուրդները մյուս ժողովուրդների օգնությամբ կարողացել են մեծ չափով զարգացնել իրենց սոցիալիստական էկոնոմիկան ու կուլտուրան։ Բարեկամության ու փոխադարձ օգնության արտահայտությունն են համատեղ կառուցվող արդյունաբերական խոշոր ձեռնարկությունները, էլեկտրակայանները, ջրանցքները, գազամուղները, կադրերի փոխանակությունը։ Ինտերնացիոնալիզմի և փոխադարձ օգնության շնորհիվ անցյալում հետամնաց ավելի քան 40 ժողովուրդներ ստեղծել են իրենց գիր-գրականությունը, զարգացրել ազգային կուլտուրան ու արվեստը։ Բոլոր ռեսպուբլիկաներում կողք-կողքի աշխատում, կոմունիզմ են կառուցում բազում ազգերի ներկայացուցիչներ։

Մեր երկրի ազգերի և ժողովուրդների համակողմանի զարգացման գործում վճռական դեր է խաղում ՍՄԿՊ լենինյան ազգային քաղաքականությունը, նրա գաղափարախոսական աշխատանքը։ Արտադրողական ուժերի աշխարհագրական ճիշտ տեղաբաշխում, երկրի բոլոր շրջանների պլանաչափ զարգացում, նյութական միջոցների, մարդկային ռեզերվների, հոգևոր արժեքների ճիշտ օգտագործում բոլոր շրջանների զարգացման համար, լենինյան ավանդների հետևողական կենսագործում՝ սրանք են ՍՄԿՊ ազգային քաղաքականության անկյունաքարերը։

ՍՍՌՄ ժողովուրդների համախմբման համար կարևոր նշանակություն ունի ազգային պետականության զարգացումը։ Հայտնի է, որ Ստալինի անձի պաշտամունքի տարիներին սահմանափակվում էին միութենական ռեսպուբլիկաների իրավունքները շատ հարցերում։ ՍՄԿՊ XX համագումարը Վ. Ի. Լենինի ցուցումների ոգով քննության առավ և լուծեց ազգային քաղաքականության սկզբունքային մի շարք պրոբլեմներ։ Դրանցից էին միութենական ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնումը, նրանց դերի բարձրացումը օրենսդրության, պետական շինարարության մեջ։ Ելնելով միութենական ռեսպուբլիկաների տնտեսական պահանջներն առավել լրիվ հաշվի առնելու շահերից, ստեղծվել է ՍՍՌՄ Գերագույն Սովետի Ազգությունների Սովետի Տնտեսական հանձնաժողով, ընդլայնվել են ռեսպուբլիկաների բյուջետային իրավունքները և այլն։ Վերջին տարիներին մեծ չափով ընդլայնվեցին միութենական ռեսպուբլիկաների տնտեսական օրգանների իրավունքները, որոնք նպաստեցին նրանց նախաձեռնության ծավալմանը։ Այժմ մի քանի ժողտնտխորհների համար ստեղծվել են ընդհանուր կոորդինացման ու պլանավորման խորհուրդներ, որոնք մեծ դեր են խաղում սոցիալիստական ազգերի հետագա մերձեցման և փոխադարձ օգնության ուժեղացման գործում։

*Լենինյան ազգային քաղաքականության զարգացման պատմական ուղենիշը եղավ ՍՄԿՊ XXII համագումարը, որի նյութերում տրվել են ազգային հարցի լուծման ասպարեզում պարտիայի ու սովետական ժողովրդի ձեռք բերած փայլուն հաղթանակների լենինյան խոր վերլուծությունն ու գնահատականը, սահմանվել են ազգային հարաբերությունների խնդիրները կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում։*

*Սոցիալիզմի պայմաններում, նշել է ՍՄԿՊ XXII համագումարը, ազգերի զարգացման ասպարեզում գործում են փոխադարձաբար կապված առաջադիմական երկու տենդենցներ՝ յուրաքանչյուր ազգի բուռն և համակողմանի զարգացումը, միութենական ու ավտոնոմ ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնումը, և, մյուս կողմից՝ սոցիալիստական ազգերի մերձեցումը, փոխադարձ ազդեցության և փոխադարձ հարստացման ուժեղացումը պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո։ Էկոնոմիկայի վերելքը նպաստում է բնակչության շարժունությանը և օգնում՝ հաղթահարելու անցյալի ազգային սահմանափակությունը։ Միութենական ռեսպուբլիկաների սահմանները հետզհետե կորցնում են իրենց նախկին նշանակությունը։ Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցումը մեծ չափով ուժեղացնում է վերոհիշյալ տենդենցները, է՛լ ավելի է միավորում բոլոր ժողովուրդներին, ավելի անհրաժեշտ դարձնում նյութական ու հոգևոր հարստությունների փոխանակումը ազգերի միջև։ Դասակարգային տարբերությունների վերացումը և կոմունիստական հասարակական հարաբերությունների ձևավորումը նպաստում են ազգերի կուլտուրայի, բարոյականության, կենցաղի, հոգևոր կերպարի, կոմունիստական ընդհանուր գծերի առաջացմանը։ Ազգային հարաբերությունների զարգացման այս օբյեկտիվ օրինաչափություններն էլ հենց որոշում են պարտիայի արդի էտապի քաղաքականությունը ազգային հարցում։*

*ՍՄԿՊ Ծրագիրը, որը լենինյան ազգային քաղաքականության հետագա մշակման ու զարգացման մի նոր աստիճանը նշանավորեց, մի շարք խնդիրներ է դնում, որոնց լուծումը ռեալ պայմաններ կնախապատրաստի կոմունիստական հասարակարգի ազգերի ապագա միաձուլման համար։ Այդ խնդիրներն են՝ բոլոր ազգերի և ժողովուրդների էկոնոմիկայի ու կուլտուրայի հետագա համակողմանի զարգացումը, փոխադարձ օգնության ամրապնդումը, ազգերի համախմբումն ու մերձեցումը կյանքի բոլոր բնագավառներում, միութենական ռեսպուբլիկաների տնտեսության համակողմանի զարգացումը, նրանց իրավունքների ընդլայնումը տնտեսության ղեկավարման ասպարեզում։ Այնուհետև՝ արտադրողական ուժերի նպատակահարմար տեղաբաշխումը և համատեղ տնտեսական գործունեության կոորդինացումը, բոլոր ազգերի ու ժողովուրդների փաստացի հավասարության ապահովումը, ազգային կուլտուրաների և բոլոր ազգերի համար ընդհանուր, համամարդկային կուլտուրայի հետագա զարգացումը, ազգային լեզուների ազատ զարգացումը, ամեն տեսակի նացիոնալիզմի ու շովինիզմի մնացորդների լիակատար վերացումը, ինտերնացիոնալիզմի, ՍՍՌՄ ժողովուրդների անխախտ բարեկամության ամրապնդումը։*

*Մեր ժողովուրդը պարտիայի ղեկավարությամբ լիակատար հաղթանակ կտանի լենինյան այդ վեհ գաղափարները կենսագործելու ասպարեզում։*

---

# ԱԴՐԲԵՋԱՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՄԵԾ ԶԱՎԱԿԸ

## (Մ. Ֆ. ԱԽՈՒՆԴՈՎԻ ԾՆՆԴՅԱՆ 150-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**Ա. ՌՍԿԱՆՅԱՆ**

Փիլիսոփայական գիտությունների թեկնածու



*Խաղաղության համաշխարհային խորհրդի որոշմամբ այս տարվա հոկտեմբերին մեծ շուքով տոնվեց ադրբեջանական ականավոր գրող և մատերիալիստ փիլիսոփա, ադրբեջանական նոր գրականության, դրամատուրգիայի և թատրոնի հիմնադիր Միրզա Ֆաթալի Ախունդովի ծննդյան 150-ամյակը։*

*Խոշոր լուսավորիչ ու դեմոկրատ, ականավոր հումանիստ և ազատության համար հետևողականորեն պայքարող մարտիկ Ախունդովի ստեղծագործությունը մի կարևոր էտապ հանդիսացավ Ադրբեջանի հասարակական-քաղաքական, փիլիսոփայական և գեղարվեստական մտքի զարգացման պատմության մեջ։*

*Ախունդովին հետաքրքրում էին և՛ պատմությյան, և՛ փիլիսոփայության, և՛ գրականության ու թատրոնի, և՛ էսթետիկայի ու քաղաքատնտեսության, և՛ բնական գիտությունների, լեզվի ու իրավունքի հարցերը։ 1850-ական թվականներին գրված նրա երկերը իրենց վրա հրավիրեցին աշխարհի շատ երկրների կուլտուրայի գործիչների ուշադրությունը, թարգմանվեցին մի շարք լեզուներով։*

Ախունդովը իր կյանքի միակ իմաստը տեսնում էր առաջադիմության և ազատության համար մղվող պայքարում։ Նրա աշխարհայացքի հիմքում ընկած էր այն գաղափարը, թե անհրաժեշտ է վերացնել դեսպոտական ֆեոդալական կարգերը և ստեղծել արդարացի սոցիալական հասարակարգ։ Թեպետ Ախունդովը չկարողացավ մինչև վերջ ազատագրվել լուսավորչական պատրանքներից, այնուամենայնիվ նա ի վերջո համոզվեց, որ միայն ժողովրդի միասնական պայքարը կարող է վերջ դնել անարդարությանն ու դեսպոտիզմին և որ այդ հնարավոր է իրականացնել միմիայն հասարակության ռևոլյուցիոն վերափոխման միջոցով։

Ախունդովի մատերիալիստական փիլիսոփայությունը հանդիսանում է նրա աշխարհայացքի թեորիական հիմքը։ Փիլիսոփայությունն ու գրականությունը նա համարում էր հզոր միջոցներ՝ ժողովրդի ազատագրական պայքարում։

Ախունդովն անձնվեր պայքար էր մղում հանուն ժողովուրդների բարեկամության ամրապնդման։ Նա սերտ կապեր ու անձնական բարեկամություն էր հաստատում այլ ժողովուրդների առաջավոր ներկայացուցիչների հետ։

Ադրբեջանական ժողովրդի հանճարեղ զավակ Ախունդովը բազմակողմանի ու խոր զարգացած անձնավորություն էր։ Նա ծանոթ էր XVIII դարի ֆրանսիական մատերիալիստների երկերին, հիանալի գիտեր և բարձր էր գնահատում ռուս գրականությունը, մասնավորապես Պուշկինի գործերը։ Անցյալ դարի 30-ական թվականներին Թբիլիսիում նա շփվեց աքսորված դեկաբրիստների հետ, որոնք նրան ծանոթացրին ռուսական առաջավոր հասարակական, քաղաքական մտքին։

Ախունդովի հասարակական-քաղաքական և փիլիսոփայական հայացքների ձևավորման վրա վճռական ներգործություն ունեցան XIX դարի ռուսական փիլիսոփայական մտքի մատերիալիստական տրադիցիաները, ռուս ականավոր մատերիալիստներ ու ռևոլյուցիոն-դեմոկրատներ Բելինսկու, Չերնիշևսկու, Գերցենի և Դոբրոլյուբովի երկերը։

Ախունդովն ամենափայլուն օրինակն է այն բարերար ազդեցության, որ ունեցել է ռուս ժողովրդի առաջավոր կուլտուրան ադրբեջանական պրոգրեսիվ մտավորականության վրա։ Ախունդովի առաջադիմական փիլիսոփայական ու հասարակական-քաղաքական հայացքների ձևավորումն անհնար է պատկերացնել առանց այդ ազդեցության։

XIX դարի 50-ական թվականներին Ախունդովը գրում է մի շարք ռեալիստական պիեսներ, որոնցում խիստ քննադատում է ֆեոդալական հասարակարգի ու հին կենցաղի արատները, թունոտ ծաղրի ենթարկում մուսուլմանական հոգևորականությանը, ցարական չինովնիկներին ու աշխարհակուլ առևտրականներին։

Առաջ քաշելով դեմոկրատական գաղափարներ և լինելով համոզված աթեիստ, Ախունդովը միաժամանակ առաջավոր, մատերիալիստական փիլիսոփայության ջատագովն էր։ 1860-ական թվականներին նա գրում է իր հռչակավոր փիլիսոփայական տրակտատը՝ «Հնդկական իշխանազն Քեմալ-Ուդ-Դովլեյի երեք նամակները պարսկական իշխանազն Ջալալ-Ուդ-Դովլեյին և այս վերջինի պատասխանը»։ Ախունդովի այդ երկը Արևելքի մատերիալիստական փիլիսոփայության ամենանշանավոր գործերից մեկն է։

Ախունդովի «Երեք նամակները» գրված են սուր, պարզ ու մատչելի լեզ-



վով, առանց քողարկելու կամ մեղմացնելու հեղինակի մտքերն ու նրա դիպուկ հարվածները, որ ուղղված են իդեալիզմի, խավարամոլության և կրոնի դեմ։ «Կազմելով այս նամակները,—գրում է Ախունդովը,—ես ցանկանում եմ ո՛չ միայն ծառայել քաղաքակրթությանը, այլև ազատություն բերել մարդկանց մտածողությանը, ցանկանում եմ ազատագրել փիլիսոփաներին ու մտածողներին, որոնք 1287 տարի անընդհատ թաքցնում են իրենց մտքերն ու պատկերացումները։ Ես ցանկանում եմ մարդկությանն ազատել կուրությունից»։

Ախունդովի այս երկը հանդիսանում է ո՛չ միայն մատերիալիստական փիլիսոփայության փայլուն նմուշ, այլև մարտնչող հրապարակախոսության մի ակնառու օրինակ, որը մերկացնում է իսլամի ռեակցիոն էությունը և արևելյան դեսպոտիզմը։

***

Պայքարը հանուն նոր, առաջավոր գաղափարների փիլիսոփա-մատերիալիստ Ախունդովն սկսեց սխոլաստիկական և իդեալիստական փիլիսոփայության հիմունքների քննադատությունից։ Նրա փիլիսոփայության հիմնական գաղափարը փիլիսոփայությունն ու գիտությունը կրոնից անջատելու կտրուկ պահանջն է, նյութական աշխարհի, բնության ուսումնասիրության պահանջը։ Նա անդադրում մերկացնում էր հոգևորականությանը, որը գիտության զարգացման ոխերիմ թշնամին էր։ Ախունդովի գործունեության այս կողմի հսկայական նշանակությունը հասկանալի կդառնա, եթե հիշենք, որ այն ժամանակաշրջանում, երբ ապրում ու գործում էր Ախունդովը, կրոնի ու հոգևորականության ազդեցությունը հետամնաց ժողովրդական մասսաների ու Ադրբեջանի հասարակական կյանքի վրա շատ մեծ էր. ամեն ոք, որ կհամարձակվեր բողոքի ձայն բարձրացնել ընդդեմ ամենակարող ալլահի և այս աշխարհում նրա ներկայացուցիչների՝ հոգևորականների, հալածանք էր սպասում։ Սակայն այդ վտանգը չսարսափեցրեց Ախունդովին. Նա համարձակ պայքարի դրոշ բարձրացրեց ընդդեմ մութ ուժերի, ընդդեմ կրոնի ու խավարամոլության։

Բնության երևույթների ճանաչողության հարցերում լինելով մատերիալիստ, Ախունդովը, նախամարքսյան բոլոր մատերիալիստների նման, չկարողացավ և չէր էլ կարող հասնել պատմության մատերիալիստական ըմբռնմանը. Հասարակական երևույթների, ինչպես և կրոնի գնահատման բնագավառում նա մնաց իդեալիզմի դիրքերում՝ չնայած նրա չափազանց վառ արտահայտված աթեիզմին։

Ըստ Ախունդովի փիլիսոփայության, մատերիան հիմնական և միակ սուբստանցիան է։ Որպես նախահիմք նա ընդունում է բնությունը, իսկ գիտակցությունն ու բանականությունը համարում է մատերիայի արդյունք։ Մատերիալիստորեն լուծելով փիլիսոփայության հիմնական հարցը՝ կեցության և գիտակցության փոխհարաբերության հարցը, Ախունդովն անում է համապատասխան հետևություններ, որոնք բխում են այդ հիմնական դրույթից։

Նա գտնում է, որ բնությունը կազմված է անթիվ մանրագույն ու տարբեր նյութական մասնիկներից՝ ատոմներից, որոնց ամբողջությունը կազմում է տիեզերքը։ Վերջինս ամեն ինչի միասնական հիմքն է, «միասնական մի ամբողջություն, որ կազմված է մասնիկներից, և այդ ամբողջությունը հանդիսանում է մի միասնական գոյ», որ կազմում է կեցության հիմքը և կարիք չունի

որևէ արարչի։ Անհրաժեշտ համարելով ուսումնասիրել և ըմբռնել բնության յուրահատկությունները, մատերիայի էությունն ու առանձնահատկությունները, Ախունդովը գտնում է, որ միայն այդ եղանակով է հնարավոր ապացուցել, որ բնության ոչ մի «արարիչ» գոյություն չունի, որ աստված տխմար հնարանքի պտուղ է։ Նա ամենախիստ քննադատության է ենթարկում բնության ուսումնասիրման հակառակորդներին։

Ըստ Ախունդովի, տիեզերքը ոչ սկիզբ ունի և ոչ վախճան։ Նրա հիմքը մեկ է ու միասնական, և այդ հիմքը օբյեկտիվ կեցությունն է, որը զարգանալով սեփական իմմանենտ օրենքներով, կարիք չունի ո՛չ միայն արարչի, այլև որևէ արտաքին ուժի։ Նշելով, որ բնության մեջ, տիեզերքում թագավորում է բացարձակ օրինաչափությունը, որը կախված չէ որևէ մտացածին այնկողմնային ուժից, որ տիեզերքին բնորոշ է բնական ձևերի անսահման բազմազանությունը, Ախունդովը գրում է. «... ողջ տիեզերքը մի միասնական, հզոր, կատարյալ, համայնապարփակ էություն է, որ արտահայտվում է բազմաթիվ ձևերով, անթիվ բազմազանությամբ, առանց կամքի, իր սեփական օրենքներով, այսինքն՝ համաձայն իր պայմանների... այդ Տիեզերքը մի միասնական էություն է, հզոր և կատարյալ, նրան որևէ սկիզբ չի նախորդել, և նա վերջ չի ունենա»։

Հանդես գալով կրոնի կողմնակիցների այն պնդման դեմ, թե աշխարհն աստծու արարչագործությունն է, Ախունդովը ցույց է տալիս, որ այդ տեսակետի վրա կանգնելու դեպքում պետք է հետևողական լինել և որոնել հենց աստծու ստեղծողին, այդ ստեղծողի առաջացման նախապատճառը և այլն։

Խոր վերլուծման միջոցով ցույց տալով աստծու՝ որպես բնության ու մարդկանց արարչի անհարիրությունը, Ախունդովը մարդուն համարում է օբյեկտիվ կեցության, այսինքն՝ բնության արդյունք, դրանով իսկ այդ հարցում կանգնելով ճշմարիտ, մատերիալիստական դիրքերում։

Նա մատերիալիստորեն է լուծում նաև ժամանակի ու տարածության հարցը։ Խոսելով մատերիայի օբյեկտիվ գոյության մասին, նա այնուամենայնիվ գրում է, որ ինչպես ժամանակը, այնպես էլ տարածությունը հանդիսանում են մատերիայի ատրիբուտները։ Ժամանակի ու տարածության պրոբլեմը լուծելիս Ախունդովը ցույց է տալիս, որ օբյեկտիվ կեցության գոյությունը ժամանակից ու տարածությունից դուրս անհնար է։ Նա գտնում է, որ ժամանակն ու տարածությունը մատերիայի գոյության ձևերն են, ընդունում է, որ նրանք անբաժանելի են մատերիայից, որ իրերն ու երևույթները կարող են գոյություն ունենալ միայն ժամանակի ընթացքում և տարածության մեջ։

Նյութական սուբստանցիան, Ախունդովի կարծիքով, մի «միասնական ամբողջություն» է, որը հանդիսանում է «Տիեզերքի անթիվ-անհամար տարբեր մասնիկների աղբյուրը..., իսկ այդ մասնիկներն իրենց մի տեսքից մյուսին փոխակերպվելու և արտահայտվելու պրոցեսում կարիք ունեն միմյանց։ Այսպիսով, միասնական ու ամբողջ, հզոր, կատարյալ և համայնապարփակ կեցությունը բացարձակ է ու ինքնաբավ և իր գոյության համար որևէ պատճառի կարիք չի զգում»։

Խոսելով տիեզերքի օբյեկտիվ գոյության, նրա անվերջ տեղաշարժերի ու բազմազանության մասին, Ախունդովը գրում է. «Մատերիայի մեջ նրա ձևափոխությունները ու անցումները անթիվ են ու անընդհատ, և նույնքան հավասարի են, ինչպես ծովի մակընթացությունն ու տեղատվությունը»։

Կանգ առնելով ընդհանուրի և մասնակիի, ամբողջի ու մասի պրոբլեմի



վրա, Ախունդովը գրում է. «Աշխարհը գոյություն ունի միասնական ու ամբողջական էության հիման վրա, այդ ամբողջական էությունը հանդիսանում է այն աղբյուրը, որից բխում են բոլոր էությունները, որոնք հարաբերում են այդ ամբողջական էությանը՝ ինչպես մասնիկներն ամբողջին, ինչպես ալիքները՝ ծովին, պղպջակները՝ ջրին, ձեռագիրը՝ թանաքին և այլն։ Բոլոր մասնիկներն առաջացել են ամբողջից»։ Հանգամանորեն կանգ առնելով ամբողջի և մասնիկի փոխհարաբերության պրոբլեմի վրա, Ախունդովը գալիս է այն եզրակացության, որ ըստ էության ընդհանուրն ու մասնակին կազմում են մի ամբողջություն և գոյություն ունեն կողմնակի կամքից ու միջամտությունից անկախ, իրենց զարգացման ներքին օրենքների հիման վրա և իրենց յուրահատուկ իմմանենտ պայմաններում։

Ախունդովն առանձնակի ուշադրություն է նվիրում պատճառականության պրոբլեմին։ Այդ հարցին է նվիրված նրա մի հոդվածը, որը վերնագրված է՝ «Պատասխան փիլիսոփա Յումին»։ Ախունդովի դիրքն այդ հարցում խիստ կարևոր նշանակություն ունի նրա փիլիսոփայական հայացքների բնորոշման համար, քանի որ, ինչպես ցույց էր տալիս Լենինն իր «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» գրքում, պատճառականության հարցը հատկապես կարևոր է փիլիսոփայական այս կամ այն ուղղությունը որոշելու համար։

Մատերիալիստ Ախունդովի պատասխանն իդեալիստ և ագնոստիկ Յումին պատճառականության հարցի կապակցությամբ բացառիկ կարևոր նշանակություն ունի, քանի որ առանց պատճառականության պրոբլեմը ճիշտ հասկանալու և բացատրելու անհնար է ճշգրիտ և գիտականորեն հիմնավորված եզրակացություններ անել օբյեկտիվ աշխարհի, բնական երևույթների ու պրոցեսների մասին։ Մյուս կողմից, պատճառականության պրոբլեմը, ինչպես հայտնի է, Յումի փիլիսոփայության հիմնական պրոբլեմներից մեկն է, ըստ որում խոսելով պատճառականության մասին՝ Յումը ժխտում է նրա օբյեկտիվությունը. իսկ պատճառականության հարցում սուբյեկտիվիստական գիծը, ինչպես նշում է Լենինը, հանդիսանում է փիլիսոփայական իդեալիզմ։

«Պատասխան փիլիսոփա Յումին» հոդվածում մեր առջև կանգնում է մարտնչող մատերիալիստ Ախունդովը, որն անողոքաբար մերկացնում է բոլոր իդեալիստներին ու կրոնի պաշտպաններին, ովքեր ընդունում են պատճառի՝ որպես ինքնուրույն էության գոյությունը նախքան ռեալ աշխարհի գոյությունը։ Շատ լավ հասկանալով պատճառականության մասին Յումի ուսմունքի իդեալիստական էությունը, մատերիալիստ Ախունդովն իր այդ հոդվածում բարձրացնում է փիլիսոփայության հիմնական հարցը և ցույց տալիս, որ պատճառականության պրոբլեմի այն լուծումը, որ տալիս է Յումը, ըստ էության հանդիսանում է փիլիսոփայության հիմնական հարցի թեոլոգիական, իդեալիստական լուծում, աստծու գոյության փիլիսոփայական հիմնավորում։ «Պատճառների անընդհատ շարակցումը,— գրում է Ախունդովը,— կամ պետք է շարունակվի անվերջ, և կամ դուք պետք է կանգ առնեք մի տեղ և ընդունեք, որ մի որևէ էակ իր գոյության պատճառը չունի։ Առաջին դեպքում երևան է գալիս պատճառների անընդհատության և անվերջության անհրաժեշտությունը, իսկ երկրորդ դեպքում վերանում է կեցության պատճառականությունը և ապացուցվում է, որ կեցությունը կարող է գոյություն ունենալ պատճառականությունից անկախ։ Ուրեմն ինչո՞ւ մենք չենք կարող պնդել, որ այդ անպատճառ կեցու-

թյունը՝ հենց տեսանելի ու զգալի Տիեզերքն է, և ոչ թե այն երևակայական ու ենթադրական էակը, որ հայտնի է «արարիչ» անունով և ինչի՞ վրա հենվելով դուք, շարիաթի աստվածաբաններդ կարող եք ասել, թե Տիեզերքի գոյությանը պետք է նախորդի ինչ-որ պատճառ»:

Ախունդովը գտնում է, որ երևույթներից ու առարկաներից դուրս պատճառականություն գոյություն չունի. նա համարում է այն օբյեկտիվ կեցության ներքին օրինաչափություն և կապակցություն: Չսահմանափակվելով «նախապատճառի» և «արարչի» մասին կրոնական հնարանքների դեմ պայքարելով, նա պնդում է, որ իրենց էությամբ առարկաները կարիք չունեն ոչ մի նախապատճառի և զարգանում են իրենց ներհատուկ օրենքներով:

Նույն հոդվածում առաջ քաշելով այն դրույթը, թե ռեալ աշխարհի գոյությունը պայմանավորված չէ աստծու և նախապատճառի առկայությամբ, Ախունդովը հարց է տալիս իդեալիստներին ու կրոնի կողմնակիցներին, թե ինչի՞ հիման վրա են նրանք որոնում տիեզերքի, օբյեկտիվ կեցության նախապատճառը: Ցույց տալով, որ ընդդիմախոսները չեն կարող պատասխան գտնել այդ հարցին, նա բացականչում է. «Հարկ չէ՞ արդյոք, որ որոնող միտքն ու խորաթափանց բանականությունը կանգ առնեն հենց տիեզերքի գոյության վրա»: Այստեղ Ախունդովը որպես իմացության հիմք ընդունում է կեցությունը և առաջ է քաշում առողջ դատողությունը, մարդկային բանականությունը՝ որպես փաստարկ, քանի որ նա գտնում է, որ մարդու բանականությունն իմացության պրոցեսում կատարում է ոչ թե պասսիվ, այլ խիստ ակտիվ դեր:

Իմացության տեսության բնագավառում Ախունդովը ելնում է կեցության, մատերիայի, բնության օբյեկտիվությունից: Նա գտնում է, որ օբյեկտիվորեն գոյություն ունեցող աշխարհից ստացվող զգայությունները ելակետ են հանդիսանում իմացության պրոցեսի համար, այսինքն՝ իրերից գնում է դեպի զգայությունները և ընդունում, որ զգայությունները մատերիայի արդյունք են, մարդկային բանականության ունակությունը:

Ախունդովը հավատում է գիտության հզորությանն ու նրա հայտնագործություններին, մարդու օբյեկտիվ կեցությանը, տիեզերքը ճանաչելու հնարավորությանը: Քիմիայի, ֆիզիկայի և բնական այլ գիտությունների եզրակացությունները նա հիմք է դարձնում իր փիլիսոփայական հայացքների համար, գիտության նվաճումներն օգտագործելով որպես կրոնի դեմ իր մղած պայքարի գլխավոր զենք: Գիտությունը նա համարում է աշխարհը ճանաչելու հիմնական միջոց: Ախունդովը գտնում է, որ այն դրույթներն ու կարծիքները, որոնք ճանաչողության պրոցեսում չեն հաստատվում գիտության կողմից, վստահություն չեն ներշնչում, պետք է դեն շպրտվեն որպես վնասակար հնարանքներ ու տգիտության արգասիք: Ամենուրեք հետևողականորեն ընդգծելով բանականության մեծ դերն իմացության պրոցեսում, Ախունդովը գտնում է, որ այդ պրոցեսի էությունը բնության օրինաչափությունների բացահայտումն է, և այդ իսկ պատճառով մարդիկ պետք է անեն ամեն ինչ, որպեսզի ուսումնասիրեն այդ օրինաչափությունները: Այդ նպատակին հասնելու լավագույն միջոցը գիտության եզրակացություններն են: Նա պնդում է, որ մարդկանց գիտելիքների ավելացմանը զուգընթաց լայնանում է նաև մարդկային իմացության շրջանակը, իսկ դրա հետ մեկտեղ մարդն ավելի ու ավելի է հեռանում այնկողմնային ուժերին, աստծուն և ուրիշ մտացածին էակներին հավատալուց:

Ախունդովի աշխարհայացքի անբաժան մասն է կազմում նրա աթեիզմը.



Նրա երկերի բազմաթիվ պայծառ էջեր նվիրված են կրոնական աշխարհայեցողության դեմ մղվող պայքարին: Նա քննադատում է կրոնը որպես մի անհեթեթություն, որն անհամատեղելի է գիտական իմացությանը, որպես տխմարությունների ու հիմար նախապաշարմունքների հավաքածու, խարազանում կրոնական բարոյականությունը՝ ցույց տալով դրա վնասակարությունը, մերկացնում է կրոնը որպես ռեակցիայի հենարան և առաջադիմության թշնամի, որպես մասսաներին խաբելու միջոց, որ նպատակ ունի պահել նրանց տգիտության մեջ, իշխող դասակարգերին ենթակա վիճակում:

Ախունդովի երկերում ամենուրեք հնչում է պայքարի կոչը՝ ընդդեմ դեսպոտիզմի, հանուն մարդու հոգեկան ու ֆիզիկական ազատության, նաև հետևողականորեն ու հաճախ վերադառնում է այն մտքին, թե մարդը մշտապես ձգտում է առաջադիմության, նա որոնող է ու հնարամիտ, բայց մարդու առաջադիմության և հնարամտության համար անհրաժեշտ է մտածողության ազատություն, որն անհնար է դեսպոտիզմի և կրոնական ֆանատիզմի տիրապետության պայմաններում:

Աթեիստ Ախունդովը ժխտում էր աստծուն, հոգու անմահությունը և կրոնական այլ խիմերաներ: «Բոլոր կրոնները ես համարում եմ անհեթեթություն»,— գրում էր նա: Ախունդովը ցույց էր տալիս կրոնի ու գիտության անհամատեղելիությունը: Նա գրում էր. «Ներկայումս մեր մեծագույն սխալն այն է, որ մենք միշտ միմյանց հետ շփոթում ենք երկու հակադիր բաներ՝ հավատը և գիտությունը»: Կրոնը թշնամի է ամեն մի ազատության, կրոնը, աստված և հավատը մեծագույն արգելքներն են գիտության ու արվեստի զարգացման համար: Կրոնն ու կրոնական հնարամտությունները մարդկանց ետ են մղում դեպի տգիտություն, թույլ չեն տալիս նրանց ուսումնասիրել բնությունը, ճանաչել այն: Հավատացյալ մարդը չի կարող գիտնական կամ փիլիսոփա լինել: «Եթե դու հաղորդակից ես գիտությանը,— գրում է Ախունդովը,— ապա այդ նշանակում է, որ դու կրոնական հավատ չունես: Եթե որևէ մեկը ցանկանում է պահպանել իր կրոնական հավատը, ապա նա չպետք է կրթվի ու զարգանա, իսկ եթե նա ձգտում է կրթության ու զարգացման, ապա ուզի-չուզի պետք է հրաժեշտ տա հավատին»:

Ախունդովը ցույց է տալիս, որ աստծու գաղափարը և կրոնը մարդկությանը միշտ չարիք են բերել ու թշվառություն, որ նրանք ծանր լուծ են հավատացյալ մարդու ողջ կյանքի ընթացքում: Պայքարը կրոնի դեմ նա համարում է պայքար՝ հանուն մարդկանց անձնական ու հոգեկան ազատության: Դեռ ավելին. Ախունդովը պնդում է, որ քանի դեռ ուժի մեջ են կրոնի օրենքները, կշարունակվեն ճնշումն ու բռնությունը, որոնք չեն վերացնի կրոնն ու հավատը, որովհետև բոլոր կրոններն էլ օգնում են մարդկությանը ճնշման ու խավարի մեջ պահելուն, քանի որ ճնշողներն օգտագործում են աստծու գաղափարը իրենց նպատակներն ու ցանկություններն իրականացնելու համար: Առանձնահատուկ ուժգնությամբ Ախունդովը մերկացնում էր մահմեդական կրոնը, հատկապես նրա այն գիծը, որ Էնգելսն անվանում էր «մարդու անջատումը մարդուց»՝ անհանդուրժողականությունը բոլոր ոչ մահմեդականների նկատմամբ:

Ահա թե ինչու էր Ախունդով—աթեիստը խիստ հետապնդվում մահմեդական հոգևորականության կողմից՝ որպես հերետիկոս և աստվածահայհոյիչ: Նրա երկերը համարվել են հերետիկոսական և նզովվել, արգելվել է նրանց ընթերցումն ու տարածումը, իսկ նրա հիմնական փիլիսոփայական գործը՝

«Երեք նամակները», առաջին անգամ տպագրվեց միայն սովետական շրջանում։

Վճռականորեն բացահայտելով ու անխնա մերկացնելով կրոնի խորապես վնասակար ու հակաժողովրդական բնույթը, Ախունդովը, սակայն, իդեալիստորեն էր բացատրում կրոնի առաջացումը, գտնելով, որ այն ծնունդ է լոկ մարդկային տգիտության։ Նա չկարողացավ և, իհարկե, չէր կարող բացահայտել կրոնի հասարակական, դասակարգային արմատները, նրա դասակարգային էությունն ու դերը, չկարողացավ ըմբռնել հարցի այդ կողմի վճռական նշանակությունը կրոնի առաջացման համար։ Ախունդովի աշխարհայացքի այս կողմի սահմանափակ լինելու, ինչպես և ընդհանրապես նրա մատերիալիզմի մեխանիստական լինելու պատճառները հիմնականում այն են, ինչ որ նախամարքսյան բոլոր փիլիսոփա-մատերիալիստների մոտ։

***

Ախունդովի հասարակական-քաղաքական հայացքները կրում էին լուսավորչական, դեմոկրատական բնույթ։ Նա անխոնջ պայքար էր մղում ընդդեմ ժողովրդի ստրկացման, ընդդեմ սոցիալ-քաղաքական և ազգային ճնշման, ընդդեմ տգիտության ու խավարամոլության։ Ախունդովը ժողովրդապետության կողմնակից էր և զայրագին մերկացնում էր իշխողներին, ժողովրդի ճնշողներին։ «Երեք նամակներում» նա գրում էր. «Արդյոք նրանք պաշտպանո՞ւմ են նրա (ժողովրդի—Ա. Ո.) կյանքն ու ունեցվածքը։ Ո՛չ։ Պաշտպանո՞ւմ են նրա հայրենիքի սահմանները թշնամուց։ Ո՛չ։ ... Կրթո՞ւմ են արդյոք նրա երկսեռ երիտասարդությունը։ Ո՛չ։ Նրա երեխաների համար արդյոք բացո՞ւմ են դպրոցներ։ Ո՛չ։ Հովանավորո՞ւմ են արդյոք նրա առևտուրն ու արդյունաբերությունը։ Ո՛չ։ ... Այդ դեպքում էլ ինչի՞ են նրանք ընդունակ։ Օ՜, այդ մասին դու մի՛ անհանգստանա, նրանք խիստ ընդունակ են միայն տարբեր բռնությունների... Եթե ժողովուրդը հանդգնում է հակաճառել նրանց որևէ կամայականության դեմ, ապա նրանք ժողովրդին ենթարկում են սարսափելի ծեծի և տանջանքների»։

Ախունդովը պայքարում էր դեմոկրատական օրենքներ հաստատելու համար, որոնք ապահովեցին քաղաքացիների ազատությունը, պայքարում էր աշխարհիկ և հոգևոր տերերի բռնակալական լուծը վերացնելու համար։ Նա ազատության և հավասարության մասին միայն երազող չէր, այլ ընդհակառակը փորձում էր ի հայտ բերել իր ժամանակակից հասարակության մեջ գոյություն ունեցող անհավասարության, ինչպես նաև ազատության բացակայության պատճառները և ուղիներ գտնել դրանց վերացման համար։ Զբաղվելով մարդկանց ազատության և հավասարության հարցերով՝ Ախունդովը հասավ այն բանի հասկացությանը, որ անհնար է իրականացնել այդ հավասարությունը՝ առանց փոխելու մարդկանց դիրքը հասարակության մեջ։ «Մեր նպատակն այն է,— գրում էր նա,— որ բարձրացնենք ազատության և արդարության դրոշը և ժողովրդին հնարավորություն տանք ապրել հանգիստ, գնալ դեպի բարօրություն և հասնել ունևոր կյանքի»։

Առաջադրելով Արևելքի երկրների հասարակական-քաղաքական կարգերի փոփոխման պահանջը, Ախունդովն այն խիզախ միտքն է արտահայտում, թե ճնշողներին պետք է տապալել բռնությամբ։ Իր մասնավոր նամակներից մեկում նա գրում էր. «Ճնշողներին վերացնելու համար անհրաժեշտ է, որպեսզի



կամ ինքը՝ ճնշողը դադարի ճնշելուց, և կամ նրա կողմից ճնշվողը, չկարողանալով այլևս դիմանալ, ոչնչացնի ճնշողին... Շատ տասնամյակներ բոլոր մարգարեները, գիտնականները, բանաստեղծները, ցանկանալով վերացնել ճնշումը, կարծում են, որ դրա համար պետք է բավարարվել ճնշողին խորհուրդներ տալով և հորդորներ կարդալով... Բայց բազմաթիվ փորձերը ցույց են տվել, որ նման քայլերն անպտուղ են, և այդ եղանակով անհնար է երկրի վրայից վերացնել ճնշումը... Այդ նշանակում է, որ ճնշումը վերացնելու համար ոչ թե հարկավոր է ճնշողի գլխին քարոզներ կարդալ, այլ պետք է ճնշվողին ասել. ինչի՞ համար ես դու, բազմապատիկ գերազանցելով քեզ ճնշողին ուժով ու ընդունակություններով, այդպիսի համբերությամբ տանում ճնշումը. արթնացիր և դեն շպրտիր այդ ճնշողին»։

Սակայն, ինչպես իր հասարակական-քաղաքական հայացքներում, այնպես էլ հատկապես իր գործունեության ընթացքում Ախունդովը չկարողացավ հասնել ցանկալի նպատակի՝ ճնշման ու շահագործման վերացման ռևոլյուցիոն-դեմոկրատական ուղիների ու միջոցների հասկացությանը և մնաց դեմոկրատական լուսավորչականության դիրքերում։

Լինելով բոցաշունչ հայրենասեր, Ախունդովը բարձր էր գնահատում Հյուսիսային Ադրբեջանը Ռուսաստանին միացնելու պատմական նշանակությունը և ամեն կերպ օգնում էր ադրբեջանական ու ռուս ժողովուրդների եղբայրական կապերի ամրապնդմանը։ Խարազանելով Իրանում ու Թուրքիայում տիրող կամայականություններն ու կրոնական խավարամոլությունը, նա վճռականորեն դեմ էր թուրքական օրիենտացիային և սրտադին ողջունում էր Կովկասի միավորումը Ռուսաստանին։ Ախունդովը հետևողականորեն մերկացնում էր անգլիական գաղութարարների ստոր արարքներն Արևելքի երկրներում, անգլիական ու թուրքական գործակալների դավադիր գործունեությունը Կովկասում։

Իրեն մատչելի բոլոր միջոցներով սատարելով ռուս մեծ ժողովրդի և կովկասյան ժողովուրդների միջև եղբայրական կապերի ամրապնդմանը, Ախունդովը հրատարակիչ Իսակովին հղած իր մի նամակում գրում էր. «Եթե ռուսական հողերում ապրող մուսուլմանները ոգեշնչվեն Քեմալ-Ուդ-Դովլեյի գաղափարներով, ապա նրանք... կդադարեն ռուսներից քաշվելուց, քանի որ ռուսների հովանավորության ներքո նրանց կյանքը, ունեցվածքն ու պատիվը միանգամայն ապահով են, մինչդեռ նրանց եղբայրները Պարսկաստանում ու Թուրքիայում գտնվում են ողորմելի դրության և աղքատության մեջ։ Նրանք կմիավորվեն ռուս ժողովրդի հետ, առհավետ կվերանան նրանց միջից ֆանատիզմն ու մյուրիդիզմը...»։

***

Ախունդովի ընդհանուր փիլիսոփայական կոնցեպցիաների անբաժանելի մասն են կազմում նրա գրական-քննադատական և գեղարվեստական հայացքները։ Նրա էսթետիկան ձևավորվել է XIX դարի ռուս առաջավոր ռևոլյուցիոն-դեմոկրատական գեղագիտության՝ Բելինսկու, Չերնիշևսկու և Դոբրոլյուբովի էսթետիկական հայացքների անմիջական ազդեցության տակ։ Արվեստը նա համարում էր իրականության արտացոլում և գտնում էր, որ այն կոչված է կյանքը վերափոխելու և ժողովրդական մասսաներին ազատագրելու գործին ծառայելու։ Ախունդովի խոր համոզմամբ, իսկական գեղարվեստական գրականու-

թյունը հսկայական հասարակական-դաստիարակչական նշանակություն ունի և պարտավոր է տալ կյանքի ճշմարտացի, ռեալիստական արտացոլումը, անխնա մերկացնելով ժողովրդի ճնշողներին ու շահագործողներին։ Դրա հետ մեկտեղ գեղարվեստական գրականությունը պետք է ստեղծի անձնազոհ հերոսների, ժողովրդի բախտավորության համար մարտնչող մարդկանց կերպարներ։ Դեմ լինելով «արվեստը արվեստի համար» տեսությանը, պայքարելով բովանդակազուրկ և ֆորմալիստական արվեստի դեմ, ընդունելով, որ արվեստի խնդիրն է ծառայել հասարակության շահերին, Ախունդովը գրողներից պահանջում էր բարձր գաղափարայնություն, սկզբունքայնություն, ճշմարտացիություն, ժողովրդականություն և, հատկապես, ընդգծում էր գեղարվեստական երկի ձևի ու բովանդակության միասնության անհրաժեշտությունը։ Հենց այդ սկզբունքներից էր ելնում նա՝ ստեղծելով իր հայտնի գեղարվեստական գործերը, որոնց համար բնորոշ է գաղափարական հագեցվածությունը և կենսականությունը։ Ախունդովի ռեալիստական արվեստի ուժը նրանումն է, որ այն անխնա քննադատում է պատմական առաջընթացը, հասարակական պրոգրեսը խոչընդոտող ուժերին։ Թիֆլիսում հրատարակվող «Զուռնա» ալմանախի մասին իր գրախոսականում Չերնիշևսկին թվարկում է «Թիֆլիսի բանաստեղծներին ու գրականագետներին» և առաջիններից մեկը համարելով Ախունդովին՝ գրում է. «Այն ամենը, ինչ նրանք գրում են, արժանի է լիակատար համակրանքի ու պաշտպանության՝ որպես Թիֆլիսի գրականության հետագա ավելի բարձր զարգացման սաղմ ու առհավատչյա»։

* * *

Ախունդովի ընդարձակ հասարակական գործունեությունը սերտորեն կապված էր նրա ստեղծագործական աշխատանքի հետ։ Անխնա քննադատելով իդեալիզմը, ֆեոդալական կարգերը, տգիտությունն ու խավարամոլությունը, նա միշտ հանդես էր գալիս որպես համոզված դեմոկրատ ու լուսավորիչ, որպես նոր, առաջավոր գաղափարների պրոպագանդիստ, որպես Կովկասի ժողովուրդների և ռուս մեծ ժողովրդի սերտ բարեկամության ջատագով, որպես հին աշխարհի դեմ պայքարող անվախ ու անկոտրում մարտիկ։ Ադրբեջանական ժողովրդի մեծ զավակ Ախունդովն իր երկերով ու հասարակական գործունեությամբ իր ժողովրդին առաջնորդում էր դեպի առաջադիմություն ու ազատություն, որոնց հասնելու համար նա գտնում էր, որ պետք է սերտ դաշինք կռել ռուս ժողովրդի հետ։

Ախունդովի պայծառ, բազմաժանր ստեղծագործությունը մի ամբողջ դարաշրջան հանդիսացավ Ադրբեջանի հասարակական-քաղաքական և փիլիսոփայական մտքի զարգացման պատմության մեջ և մեծ ու արգասավոր ազդեցություն ունեցավ հետագա ադրբեջանական առաջավոր մտածողների վրա։

Հայ ժողովուրդը, Սովետական Միության բոլոր մյուս ժողովուրդների հետ միասին, բարձր է գնահատում խոշոր մտածող Միրզա Ֆաթալի Ախունդովին։

# ԶԻՆԱԹԱՓՈՒՄԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԻԴԵԱԼՆ Է

**Ս. ՊԱՊՅԱՆ**

Մեր օրերում, երբ կայուն ու երկարատև խաղաղության և ժողովուրդների բարեկամության գաղափարներն ավելի ու ավելի են համակում մասսաներին, առաջադեմ մարդկությունը, նորից ու նորից է դիմում Վ. Ի. Լենինի անմահ ժառանգությանը՝ այն գրանիտե հիմքին, որի վրա խարսխվում է կապիտալիստական պետությունների քաղաքականությունից արմատապես տարբերվող մեր արտաքին քաղաքականությունը։ Իր հանճարեղ աշխատություններում ու ելույթներում Լենինը սահմանել է սովետական արտաքին քաղաքականության խնդիրներն ու յուրահատկությունը, նշել խաղաղության համար Սովետական պետության պայքարի ուղիներն ու մեթոդները, որոնք անհրաժեշտ են նոր, կոմունիստական հասարակարգի արագ և հաջող կառուցման համար։ «Զինաթափումը սոցիալիզմի իդեալն է»,— գրում էր Վ. Ի. Լենինը դեռևս 1916 թվականին (Երկեր, հատոր 23, էջ 116)։ Մեծ առաջնորդի այդ խոսքերը կանխորոշեցին սովետական արտաքին քաղաքականության կարևորագույն ուղղություններից մեկը և պրոլետարական ռևոլյուցիայի հաղթանակից հետո այն դարձավ աշխարհում առաջին սոցիալիստական պետության արտաքին քաղաքականության հիմնական սկզբունքային հարցը։ Քառասունհինգ տարի է անցել այդ օրից, և ամեն օր, ամեն ժամ, սոցիալիզմի հայրենիքը կանգնած է մարդկությանն ամենից շատ հուզող, ամենահրատապ հարցի լուծման առաջին դիրքերում, իբրև նոր, ժողովուրդների բարեկամության ու եղբայրության իդեալների իրականացման անկաշառ, անխոնջ մարտիկ։

* * *

1922 թվականի ապրիլի 10-ը։ Իտալական Ջենովա քաղաքի Սան-Ջորջիո պալատում բացվեց միջազգային կոնֆերանս, որի աշխատանքներին մասնակցում էին 34 պետությունների պատվիրակություններ։ Մեծ տերություններից կոնֆերանսին չէր մասնակցում միայն ԱՄՆ-ը, որը բավարարվեց իր դիտորդի ներկայությամբ։ Այդ կոնֆերանսն իրոք պատմական էր, որովհետև միջազգային նման համաժողովին առաջին անգամ մասնակցում էին և Սովետական ռեսպուբլիկայի ներկայացուցիչները։ Մեր պատվիրակության ղեկավարը ՌՍՖՍՌ Արտաքին գործերի ժողովրդական կոմիսար Գ. Վ. Չիչերինն էր։

Կոնֆերանսի հենց առաջին օրը Գ. Չիչերինը հրապարակեց ՌՍՖՍՌ կառավարության դեկլարացիան, որով բոլոր պետություններին առաջարկվում էր լուծել ընդհանուր զինաթափման հարցը։ Զինաթափման ծրագիրը, որը մշակել

էր Կոմունիստական պարտիան Վ. Ի. Լենինի անձնական ղեկավարությամբ, ամբողջ աշխարհի աշխատավորների կողմից ընդունվեց անսահման խանդավառությամբ։ Արևմտյան պետությունները հրաժարվեցին քննարկել սովետական առաջարկը՝ չնայած մեր պատվիրակությունը հետևողականորեն բացահայտում և մերկացնում էր իմպերիալիստական տերությունների խուսանավող քաղաքականությունը։

Սովետական կառավարությունը շարունակում էր իր ջանքերը զինաթափման ասպարեզում կոնֆերանսից հետո էլ։ 1922 թ. հունիսի 12-ին նա դիմեց իրեն սահմանակից Էստոնիայի, Լեհաստանի, Լատվիայի և Ֆինլանդիայի կառավարություններին, առաջարկելով կոնֆերանս հրավիրել զինված ուժերի կրճատման հարցի քննարկման նպատակով։ Այդ կոնֆերանսը տեղի ունեցավ Մոսկվայում և մեծ դեր խաղաց Արևելյան Եվրոպայում լարվածությունը մեղմացնելու գործում։ Ցանկանալով նպաստել միջազգային իրադրության բարելավմանը, 1922 թվականի դեկտեմբերին տեղի ունեցած Սովետների Համառուսաստանյան X համագումարը, մյուս երկրներից անկախ, որոշեց կրճատել Կարմիր Բանակի զինված ուժերի թիվը 25 տոկոսով, 800 հազարից այն հասցնելով 600 հազար մարդու։

Զինաթափման հարցերին նվիրված միջազգային քննարկումներն ընդմիջումներով շարունակվեցին մինչև 1935 թվականը, երբ նոր պատերազմի հեռանկարները ակնհայտ դարձան և՛ Եվրոպայում, և՛ Ասիայում։ Այդ թվականներին ՍՍՌՄ պայքարը հանուն զինաթափման, անկասկած, վկայում է այն մասին, որ Սովետական Միությունը միակ պետությունն էր, որը հանդես էր գալիս զինաթափման ռեալ պլաններով։ Միջազգային ասպարեզում առաջին անգամ էր հնչում ընդհանուր և լրիվ զինաթափման գաղափարը։ Լոկառնոյում, թե՛ Լոզաննայում, Ազգերի լիգայում, թե՛ այլուր մեր երկրի ներկայացուցիչները՝ խաղաղության մունետիկները, մշտապես անսասան կանգնած էին զինաթափման, ագրեսորներին զսպելու և պատերազմի կանխման դիրքերի վրա։ Սակայն կապիտալիստական երկրները չընդունեցին ՍՍՌՄ առաջարկները, դրանով իսկ խոստովանելով, որ պատերազմը նրանց գոյության անբաժանելի մասն է, և իրենք չեն ուզում հրաժարվել պատերազմի քաղաքականությունից։

Սովետական պետության պայքարը հանուն զինաթափման 20—30-ական թվականներին մեր երկրին բազմաթիվ նոր կողմնակիցներ ու բարեկամներ բերեց, նա ասպարեզ հանեց բուրժուական այն ողջամիտ գործիչներին, որոնք ճիշտ գնահատելով միջազգային իրադրությունը, պատրաստ էին ՍՍՌՄ-ի հետ միասին ուղիներ փնտրել պատերազմի կանխման համար։ «Մոսկովյան թարմ քամին» շատերին նոր հույսեր ու նոր ցանկություններ բերեց, նպաստեց բոլոր երկրներում խաղաղության կողմնակիցների բազմապատկմանը։

Դեռևս շարունակվում էր երկրորդ համաշխարհային պատերազմը, երբ Սովետական Միության նախաձեռնությամբ 1943 թվականի հոկտեմբերին հրավիրվեց մեծ տերությունների Մոսկովյան խորհրդակցությունը։ Այնտեղ ընդունված «Ընդհանուր անվտանգության մասին չորս տերությունների դեկլարացիան» նախատեսում էր ստեղծել միջազգային կազմակերպություն, որի անմիջական խնդիրներից մեկն էր «Հետպատերազմյան շրջանում սպառազինությունների հարցի կարգավորման նկատմամբ ընդհանուր համաձայնության գալը»։

Զինաթափման սկզբունքն իր միջազգային իրավական ճանաչումը գտավ



ՄԱԿ-ի կանոնադրության մեջ, որն ընդունվեց 1945 թվականին։ Այդ պրոբլեմի լուծման պատասխանատվությունը դրվում էր Անվտանգության խորհրդի վրա։ Սովետական Միության նախաձեռնությամբ ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի սեսիայում ընդունվեց հատուկ բանաձև, որը զինաթափման հարցը գնահատեց որպես ՄԱԿ-ի ամենակարևոր և անհետաձգելի խնդիրը։ Զարմանալի է, բայց փաստ. 1946 թվականից արդեն անցել է 16 տարի, արդեն իր աշխատանքներն է սկսել ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի XVII սեսիան, սակայն զինաթափման հարցը դեռևս իր լուծումը չի ստացել։ Դրա հիմնական պատճառն այն է, որ 1945—1946 թվականներից ի վեր ամերիկյան քաղաքագետներն օգտվելով ատոմային զենքի նկատմամբ իրենց ունեցած մենաշնորհից, սկսեցին վարել «ատոմային դիվանագիտություն», ձգտելով հասնել համաշխարհային տիրապետության։

Դիմագրավելով ժողովուրդների խաղաղասիրական ձգտումներին, Վաշինգտոնը 1946 թվականին առաջ քաշեց, այսպես կոչված՝ «Բարուխի պլանը», որի նպատակն էր ամերիկյան գերիշխանություն և վերահսկողություն սահմանել ամբողջ աշխարհում ատոմային էներգիայի արտադրության վրա և գերակշռող ու վճռական ձայն տալ ԱՄՆ-ին միջազգային վերահսկիչ օրգանում։ Միաժամանակ «Բարուխի պլանը» պետք է ապահովեր Ամերիկայի վերահսկողությունն ուրիշ երկրներում տարվող ատոմային հետազոտական աշխատանքների վրա։ Բայց ամերիկյան այդ ստրատեգիան ձախողման էր դատապարտված։ 1949 թվականի սեպտեմբերին Սովետական Միությունը փորձարկեց իր ատոմային առաջին ռումբը՝ վերջ դնելով սպառնալիքների ու ատոմային շանտաժի ամերիկյան քաղաքականությանը։

1954—1955 թվականներին միջազգային լարվածությունն զգալիորեն մեղմացավ։ 1953 թվականի ամռանը ստորագրվեց հաշտության դաշնագիր Կորեայում, 1954 թվականին դադարեցվեց պատերազմը Հնդկաչինում։ 1955 թ. ապրիլին Ինդոնեզիայի Բանդունգ քաղաքում տեղի ունեցավ Ասիայի ու Աֆրիկայի երկրների կոնֆերանսը, նույն տարվա մայիսին ստորագրվեց Ավստրիայի Պետական պայմանագիրը և, վերջապես, 1955 թ. հուլիսին Ժնևում տեղի ունեցավ չորս տերությունների ղեկավարների խորհրդակցությունը։ Ավելի ընդարձակվեց «խաղաղության գոտին», որի մեջ մտան ո՛չ միայն սոցիալիստական, այլև Եվրոպայի, Ասիայի ու Աֆրիկայի ոչ-սոցիալիստական խաղաղասեր պետությունները։

Այդ պայմաններում 1955 թ. մայիսի 10-ին Սովետական կառավարությունն առաջարկեց Գերմանիայի տերիտորիայից դուրս հանել ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի և ՍՍՌՄ հիմնական ռազմական կոնտինգենտները, վերացնել օտար տերիտորիաներում բոլոր ռազմական բազաները, կարգավորել իրադրությունը Հեռավոր Արևելքում, ընդարձակել տնտեսական և կուլտուրական կապերը բոլոր պետությունների միջև։ Նախատեսվում էր սահմանափակել զինված ուժերը—ՍՍՌՄ-ի, ԱՄՆ-ի և Չինաստանի համար՝ 1,5 միլիոն, իսկ Անգլիայի և Ֆրանսիայի համար՝ 650 հազար մարդ։

Զինաթափման հարցում ստեղծված փակուղուց դուրս գալու նպատակով Սովետական Միությունը 1956—1958 թթ. կատարեց նոր քայլեր։ Քանի որ արևմտյան տերությունները այդ հարցը լուծելու ցանկություն չունեին և հրաժարվում էին իրենց կողմից նախկինում առաջ քաշված առաջարկություններից, ՍՍՌՄ-ը 1956 թ. մայիսին հանդես եկավ նոր նախաձեռնությամբ՝ միակողմա-

նիորեն 1 միլիոն 200 հազար մարդով կրճատելով իր զինված ուժերը։ Մեր երկրի բանակի ընդհանուր կրճատումը 1955—1958 թվականներին կազմեց 2 միլիոն 140 հազար մարդ։ 1958 թ. փետրվարին Սովետական կառավարությունը հավանություն տվեց Կենտրոնական Եվրոպայում ատոմազերծ գոտի ստեղծելու Լեհաստանի առաջարկությանը (Ռապացկու պլանին)։

Սովետական արտաքին քաղաքականությունը 1959—1961 թվականներին նշանավորվեց միջազգային խոշոր քայլերով, որոնց մեջ հատուկ տեղ է գրավում զինաթափման սովետական ծրագիրը։ 1959 թվականի սեպտեմբերին Սովետական կառավարությունը պատմական նշանակություն ունեցող քայլ կատարեց, առաջ քաշելով ընդհանուր ու լրիվ զինաթափման ծրագիրը։ Ն. Ս. Խրուշչովը Սովետական Միության անունից հրապարակեց այդ ծրագիրը ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի XIV սեսիայում։ Միաժամանակ ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ գումարման 3-րդ սեսիան, 1959 թվականի հոկտեմբերին, հավանություն տալով մեր կառավարության արտաքին քաղաքականությանը, հատուկ կոչով դիմեց բոլոր երկրների պառլամենտներին՝ գործադրել բոլոր ուժերը մարդկության համար կենսական նշանակություն ունեցող՝ ընդհանուր և լրիվ զինաթափման պրոբլեմի լուծման համար։

ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի XV սեսիայում, որի աշխատանքներում Սովետական կառավարության նախաձեռնությամբ մասնակցեցին աշխարհի բազմաթիվ երկրների պետությունների կամ կառավարությունների ղեկավարները, հանդես եկավ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի նախագահ Ն. Ս. Խրուշչովը։ Նա հրապարակեց «ընդհանուր և լրիվ զինաթափման մասին պայմանագրի հիմնական դրույթները», որտեղ հաշվի էին առնված արևմտյան տերությունների ցանկությունները՝ միջուկային զինաթափման միջոցառումները զուգակցել զինված ուժերի և սովորական սպառազինությունների կրճատման ուղիների հետ։ Հաշվի առնելով միջազգային ասպարեզում գաղութակալության սարկությունից վերջերս ազատագրված Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի բազմաթիվ երիտասարդ պետությունների հանդես գալը, Սովետական Միությունն առաջարկեց, որ նրանք ավելի ակտիվ մասնակցեն զինաթափման պրոբլեմի քննարկմանը։ Սակայն միայն իր XVI սեսիայում (1961 թ.) Գլխավոր Ասամբլեան ընդունեց զինաթափման 18 պետությունների Կոմիտեի ստեղծման մասին բանաձևը, որով չեզոք ութ պետությունների (Հնդկաստան, Բիրմա, ՄԱՌ, Եթովպիա, Նիգերիա, Բրազիլիա, Մեքսիկա և Շվեդիա) ներկայացուցիչները մտցվեցին նշված կոմիտեի մեջ։

***

18-ի Կոմիտեն իր աշխատանքներն սկսեց 1962 թվականի մարտի 14-ին, Ժնևում։ Դեռևս 1962 թ. փետրվարի 10-ին, դիմելով 18 տերությունների կառավարությունների և պետությունների ղեկավարներին, ընկ. Ն. Ս. Խրուշչովն առաջարկեց զինաթափման շուրջ բանակցություններն սկսել բարձր մակարդակով։ Այդ առաջարկը խաղաղության բոլոր անկեղծ կողմնակիցների ջերմ հավանությանն արժանացավ։ Միջազգային հասարակայնության ճնշման տակ արևմտյան տերությունների կառավարություններն ստիպված էին օգտավետ համարել կառավարությունների ղեկավարների անձնական մասնակցությունը, սակայն նրանք առարկեցին բանակցությունների առաջին էտապում իրենց



մասնակցության դեմ։ 18 պետությունների Կոմիտեն սկսեց իր աշխատանքը, երբ վարում էին արտաքին գործերի մինիստրները, այն անմիջապես գրավեց ժողովուրդների չթուլացող ուշադրությունը։

Սովետական կառավարության հանձնարարությամբ ՍՍՌՄ արտաքին գործերի մինիստր Ա. Ա. Գրոմիկոն մարտի 14-ին Կոմիտեի մասնակիցների քննարկմանը ներկայացրեց միջազգային խիստ վերահսկողությամբ ընդհանուր ու լրիվ զինաթափման պայմանագրի նախագիծ, որով նախատեսվում է չորս տարվա ընթացքում իրականացնել ընդհանուր ու լրիվ զինաթափումը։

Ընդհանուր ու լրիվ զինաթափումն ավարտվելուց հետո պետություններն իրենց տրամադրության տակ կարող են ունենալ միայն ոստիկանության (միլիցիայի) խիստ սահմանափակ կոնտինգենտ, որը զինված կլինի թեթև հրազենով և կպահպանի ներքին կարգը, կպաշտպանի միջազգային խաղաղությունն ու անվտանգությունը։

Պայմանագրի սովետական նախագծով նախատեսվում է ընդհանուր և լրիվ զինաթափումն իրագործել **երեք հաջորդական էտապներով**, այն հաշվով, որ զինաթափման ոչ մի էտապում ոչ մի պետություն կամ պետությունների խումբ չստանա ռազմական առավելություն և պայմանագրի մասնակից բոլոր պետությունների համար հավասարապես ապահովված լինի անվտանգությունը։ Զինաթափման բոլոր միջոցառումները պետք է իրագործվեն միջազգային խիստ վերահսկողության ներքո։ Այդ նպատակով, ՄԱԿ-ի շրջանակներում, հիմնվելու է զինաթափման միջազգային կազմակերպություն՝ պայմանագրին մասնակցող բոլոր պետությունների ներկայացուցիչներով։

Զինաթափման **առաջին էտապում** առաջարկվում է պայմանավորված ժամկետներում վերացնել միջուկային զենքը տեղ հասցնող օդային, ծովային և ցամաքային բոլոր միջոցները, ուրիշի տերիտորիաներում տեղաբաշխված օտարերկրյա բոլոր ռազմական բազաները, ինչպես նաև կրճատել իրենց զինված ուժերի թվական կազմը, սովորական սպառազինություններն ու դրանց արտադրությունը և պայմանագրի մասնակից պետությունների ռազմական ծախսերը։ Պայմանագրի նախագծում նախատեսվում է նրա մասնակից պետությունների զինված ուժերի կրճատում ՍՍՌՄ-ի և ԱՄՆ-ի համար՝ մինչև 1700 հազարի, մյուս պետությունների համար՝ ըստ համաձայնեցված մակարդակների։ Առաջին էտապը կսկսվի պայմանագիրն ուժի մեջ մտնելուց հետո, վեց ամիս անց, որի ընթացքում ստեղծվում է զինաթափման միջազգային կազմակերպություն։ Առաջին էտապի տևողությունը սահմանվում է 15 ամիս։

Ընդհանուր ու լրիվ զինաթափման **Երկրորդ էտապում**, որի տևողությունը նույնպես սահմանվում է 15 ամիս, պետությունները պայմանավորվում են ամբողջովին վերացնել միջուկային զենքն ու մասսայական ոչնչացման զենքի մյուս տեսակները, ինչպես նաև ավելի կրճատել զինված ուժերը, սովորական սպառազինությունները, դրանց արտադրությունը և ռազմական ծախսերը։ Այս էտապում ՍՍՌՄ-ի և ԱՄՆ-ի զինված ուժերի թիվը հասցվում է մեկ միլիոնի, իսկ պայմանագրի մասնակից մյուս պետություններինը՝ այնպիսի մակարդակի, որոնց առթիվ համաձայնություն կկայացվի։

Ընդհանուր ու լրիվ զինաթափման **Երրորդ էտապում** պետությունները պարտավորվում են ամբողջովին ցրել իրենց զինված ուժերը, դադարեցնել զենքի արտադրությունը, վերացնել ռազմական հիմնարկները, չեղյալ հայտա-

բարել զինապարտությունն ու ռազմական ուսուցումը և արգելել միջոցների
ծախսումը ռազմական նպատակներով։

Սակայն, ինչպես ցույց են տալիս փաստերը, Արևմտյան տերությունները
զինաթափում չեն ուզում։ Ժնևում ԱՄՆ-ի ու նրա դաշնակիցների ներկայացու-
ցիչների ելույթները կրում էին դեկլարատիվ, ցուցադրական բնույթ։ Վաշինգ-
տոնը երկար ձգձգումից հետո առաջարկեց զինաթափման «Պայմանագրի հիմ-
նական դրույթների սխեման»։ Այն ցույց է տալիս, որ ընդհանուր ու լրիվ զի-
նաթափման նկատմամբ ԱՄՆ-ի դիրքը մնում է բացասական, այդ սխեման չի
պարունակում հիմնականը՝ միջուկային զենքի լրիվ արգելումը, պետություն-
ների կուտակած բոլոր պաշարների ոչնչացումը, ուրիշների տերիտորիաներում
գտնվող ռազմական բազաների վերացումը։ Համաձայնել այդպիսի «զինաթափ-
մանը» նշանակում է խաբել ժողովուրդներին, մեծ վնաս պատճառել խաղաղու-
թյան գործի ամրապնդմանը։ Ինչպես առաջ, այնպես էլ այժմ, Արևմուտքը նո-
րից փորձում է զինաթափման հարցը փոխադրել վերահսկողության ոլորտ,
այն համարելով զինաթափման պրոբլեմի անկյունաքարը։

Զինաթափման մեր պայքարն իմպերիալիզմի գաղափարախոսները պատ-
կերում են որպես տակտիկական խորամանկություն, հայտարարելով, թե զի-
նաթափման համաձայնագիրը ձեռնտու է միայն Սովետական Միությանը և
սոցիալիստական մյուս երկրներին ու վնաս կհասցնի ԱՄՆ-ին և նրա դաշնա-
կիցներին։ Կապիտալիստական մոնոպոլիստները ջանքեր չեն խնայում, որպես-
զի տարածվի այն «տեսությունը», թե զինաթափման համաձայնության հասնելը
կարող է քաոս առաջ բերել երկրի տնտեսական ու ֆինանսական կյանքում, թե
զինաթափումն անուղղելի հարված կհասցնի նրանց էկոնոմիկային։ Իմպերիա-
լիզմի գաղափարախոսները ճգնում են ապացուցել, թե մարդկանց մասսայա-
կան բնաջնջման համար նախատեսված զենքի արտադրությունը ձեռնտու է
հենց իրենց՝ աշխատավորների համար, որովհետև նրանց տալիս է աշխատանք,
իրենց ընտանիքներին կերակրելու հնարավորություն։ Նրանք փորձում են մարդ-
կանց ներշնչել, թե եթե դադարեցվի զենքի արտադրությունը, ապա երևան
կգան նոր միլիոնավոր գործազուրկներ, որոնք արդյունաբերական խաղաղ ճյու-
ղերում չեն կարողանա գործադրել իրենց ուժերը։

Սակայն կյանքը մերկացնում է զինաթափման հակառակորդների տըն-
տեսական փաստարկների կեղծությունը։ Ռազմական ծախսերի աճը կարող է
արդյունաբերական արտադրության կարճատև հիվանդագին ընդլայնում ա-
ռաջացնել միայն, իսկ վերջին հաշվով այն տանում է դեպի տնտեսական ճգնա-
ժում, մասսայական գործազրկություն։ Իրոք, կապիտալիստական ո՞ր երկրնե-
րում վերջին տարիներս սպառազինության ծախսերը հասան ամենամեծ չա-
փերի, ամենից առաջ Ամերիկայի Միացյալ Նահանգներում, ապա՝ Անգլիայում։
Իսկ կապիտալիզմի ո՞ր երկրներում արդյունաբերության աճի տեմպերը նույն
այդ տարիներին ամենացածրն էին. ԱՄՆ-ում և Անգլիայում։

Ամերիկյան հայտնի տնտեսագետ Վիկտոր Պեռլոյի տվյալներով ներկա-
յումս ԱՄՆ-ում, մոտավոր տվյալներով, վեց և կես միլիոն մարդ զբաղված են
սպառազինությունների ամբողջ ծրագրի հետ կապված աշխատանքներում, այդ
թվում երկու և կես միլիոն մարդ՝ զինված ուժերում, 3 միլիոն՝ ռազմական ար-
տադրության և շինարարության մեջ և մեկ միլիոն մարդուց բաղկացած քաղա-
քացիական անձնակազմ, որը ծառայում է զինված ուժերում և ատոմային
էներգիայի հանձնաժողովի գերատեսչություններում։ Համոզիչ փաստերով



Պեռլոն ապացուցում է, որ ընդհանուր և լրիվ զինաթափման ծրագրի իրագոր-
ծումը միանգամայն շահավետ է բոլոր երկրների՝ այդ թվում, և ոչ պակաս չա-
փով, Միացյալ Նահանգների համար։ Զինաթափումը հնարավորություն կտա
կիրառել բնակարանային շինարարության լայն ծրագիրը, որն աշխատանքով
կապահովի մեկ միլիոն 800 հազար մարդու։ Հասարակական մյուս աշխատանք-
ներում, որոնք նույնպես ԱՄՆ-ը կծավալի զինաթափման ծրագրի կենսագոր-
ծումից հետո, կարող են զբաղվել դարձյալ մեկ միլիոն 800 հազար մարդ։ Աշ-
խատանքային օրվա և աշխատանքային շաբաթի կրճատումը ևս 4 միլիոն մար-
դու կապահովի աշխատանքով։ Արևելքի և Արևմուտքի միջև առևտրի ծավա-
լումը, առևտրի ասպարեզում ուրիշ միջոցառումների կենսագործումն աշխա-
տանքով կապահովի ևս մեկ միլիոն մարդու։ Այսպիսով ավելի քան ութ և կես
միլիոն մարդ աշխատանք կստանան։ Բայց դրանով դեռևս չի վերջանում զի-
նաթափման օգտավետությունը։ Զինաթափումն, իհարկե, պահանջում է ար-
տադրության կառուցվածքի լուրջ փոփոխություն և արդյունաբերության համա-
պատասխան վերակառուցում։ Բայց դրա համար ժամանակ ու հնարավորու-
թյուն կան, և, վերջին հաշվով, դրանից կշահի ամբողջ մարդկությունը։

Հայտնի է, որ թույլ զարգացած երկրները ֆինանսական միջոցների, ար-
դյունաբերական սարքավորումների, պարենամթերքի, հագուստեղենի, կոշի-
կի սուր պակաս են զգում։ Ասիայում, Աֆրիկայում, Լատինական Ամերիկա-
յում մինչև այսօր հարյուր միլիոնավոր մարդկանց բաժինն են քաղցն ու չքա-
վորությունը։ Մեկ միլիարդ հարյուր միլիոն բնակիչ ունեցող տնտեսապես
թույլ զարգացած երկրներում, ինչպես վկայում են ՄԱԿ-ի տվյալները, բնակ-
չության մեկ շնչի հաշվով, արդյունաբերության տեսակետից զարգացած կա-
պիտալիստական պետությունների համեմատությամբ, արտադրվում է 20 ան-
գամ պակաս հագուստեղեն ու կոշիկ, 13 անգամ պակաս տեքստիլ գործվածքե-
ղեն, 40 անգամ պակաս հիմնական մետաղներ, 8 անգամ պակաս լեռնահան-
քային արդյունաբերության արտադրանք։ Միաժամանակ, թույլ զարգացած
երկրները հարկադրված են ամեն տարի հսկայական միջոցներ ծախսել ռազ-
մական կարիքների համար։ Մոտավոր հաշվումներով նրանց ռազմական ծախ-
սերը տարեկան հասնում են 6 միլիարդ դոլարի։

Ռազմական ծախսերը՝ հատկապես մեծ են ագրեսիվ բլոկների մասնակից
երկրներում։ Պակիստանը, օրինակ, ռազմական կարիքների վրա տարեկան
ծախսում է մոտ մեկ միլիարդ դոլար։ Նրա բյուջեում ռազմական ծախսերը
կազմում են 57 տոկոս։ Իրանը ՍԵՆՏՕ-ի մեջ ընդունվելուց հետո իր ռազմական
հատկացումները կրկնապատկեց։ Տաիլանդում ռազմական ծախսերը գերա-
զանցում են գյուղատնտեսության, արդյունաբերության և առողջապահության
համար կատարված հատկացումները միասին վերցրած։ Հասկանալի է, որ ռազ-
մական բլոկների մեջ մտած երկրներում տեղի ունեցող սպառազինությունների
մրցավազքը չեզոք երկրներին ևս հարկադրում է նշանակալի միջոցներ ծախսել
ռազմական կարիքների վրա։ Այսպես, ՍԵԱՏՕ-ի ստեղծումից հետո Հնդկաս-
տանը հարկադրված եղավ, ի վնաս իր խաղաղ էկոնոմիկայի, ավելացնել
պաշտպանության ծախսերը։ Նույնը կարելի է ասել Աֆղանստանի, Բիրմայի,
Կամբոջայի և մի շարք այլ չեզոք պետությունների մասին։

Մեցնելով իր կոնստրուկտիվ առաջարկները, Սովետական կառավարու-
թյունն արդարացիորեն հայտարարում է, որ զինաթափման մեջ շահագրգռված
է ո՛չ միայն Սովետական Միությունը, այլև մյուս բոլոր սոցիալիստական և

կապիտալիստական երկրները։ «Սպառազինությունների մրցավազքը կասկածի տակ է դնում համայն մարդկության ապագան,— ասում է ամերիկյան նշանավոր հասարակական գործիչ և արդյունաբերող, «Ժողովուրդների միջև խաղաղության ամրապնդման» միջազգային լենինյան մրցանակի լաուրեատ Սայրուս Իտոնը։— Մեզնից ոչ ոք չգիտե, թե երբ է ժայթքելու աննկարագրելի աղետը։ Իսկ առայժմ մենք տեսնում ենք, թե ինչպես սպառազինությունների մրցավազքը կլանում է ազգային եկամտի ավելի ու ավելի մեծ մասը»։

Վաշինգտոնի կառավարող շրջանները համառորեն հրաժարվում են սպառազինությունների մրցավազքից. դրա հիմնական պատճառներից մեկն այն է, որ զենքի արտադրությունը, խոշորագույն և միանգամայն եկամտաբեր բիզնես է ռազմա-արդյունաբերական ընկերությունների համար։ Այսպես, ԱՄՆ-ում 56 միլիարդ դոլար ռազմական ծախսերից մոտ 35 միլիարդը գնում է ռազմական ուղղակի պատվերների վճարմանը, ընդ որում 14 միլիարդ դոլարը հասնում է ավիահրթիռային արդյունաբերության կորպորացիաներին։ Ռազմական խոշոր պատվերներ են ստանում հետևյալ ընկերությունները. «Բոինգ»-ը (մոտ երկու միլիարդ դոլար 1961 թվականին), «Ջեներալ Դայնեմիկսը» (1,5 միլիարդից ավելի), «Ջեներալ էլեկտրիկը» (մոտ 1 միլիարդ), ինչպես նաև «Լոկհիդը», մի ընկերություն, որը հռչակվել է «Ու—2» լրտեսական ինքնաթիռների թողարկմամբ, «Նորդ Ամերիկեն ավիեյշն»-ը, «Ամերիկեն տելեֆոն էնդ տելեգրաֆ կոմպանին», «Դուգլաս էյկրաֆտը» և ուրիշներ։ Ռազմական այդ մոնոպոլիաները վերջին ժամանակներս ուժեղագույն ճնշում են գործ դնում Սպիտակ տան վրա, նրան հրահրելով ավելի բորբոքել «սառը պատերազմը», սրել միջազգային լարվածությունը։

Միանգամայն պարզ է, որ արևմտյան տերությունները բոլորովին էլ չեն ցանկանում զինաթափվել։ Լայն հասարակայնությանը խաբելու համար նրանք ձևացնում են, թե մտահոգված են զինաթափման անհրաժեշտությամբ, բայց իրականում ձգտում են սառեցնել, մեռցնել այդ հարցը 18-ի Կոմիտեում, չցանկանալով ունկնդրել աշխարհի ողջ առաջադեմ ուժերի ձայնին, չցանկանալով իրականացնել աշխատավորական լայն զանգվածների իղձերը։ Զինաթափումը նրանց պետք չէ, այդ մասին նրանք չեն էլ ուզում լսել։ Եվ «ոչ ոք այնպես խուլ չէ,— ասում է անգլիական առածը,— ինչպես նա, ով չի ուզում լսել»։

***

Այն, որ ընդհանուր և լրիվ զինաթափման ծրագիրն առաջ է քաշել Սովետական Միությունը՝ աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը, միանգամայն օրինաչափ է։ Սոցիալիզմն իր բնույթով հաստատում է խաղաղության և ժողովուրդների միջև բարեկամության սկզբունքները։ Ավելին, սոցիալիզմի երկրների աշխատավորները կենսականորեն շահագրգռված են հաստատուն խաղաղությամբ, քանի որ դա կյանքի բոլոր բնագավառներում առաջադիմության կարևորագույն պայմանն է։ Սոցիալիստական սիստեմում դրված պատմական առավելությունները նրան ապահովում են կապիտալիզմի հետ խաղաղ մրցության մեջ հաղթանակի անհրաժեշտ պայմաններ։ Սոցիալիզմի համար, որին խորթ են ագրեսիան, օտար տերիտորիաների զավթումը, ուրիշ ժողովուրդների ստրկացումը, պետք չեն սպառազինությունների մրցավազքն ու պատերազմը։ Չէ որ դրանց ուղեկիցներն են՝ հարկերի աճը, ժողո-



վրդական սպառման ապրանքների գների բարձրացումը, ռեալ աշխատավարձի կրճատումը։ Երկրագնդի վրա հանրօգուտ աշխատանքից ներկայումս կտրված է ավելի քան 100 միլիոն մարդ։ Դրանք զինծառայողներն են, սպառազինությունների արտադրության և ռազմական հետազոտությունների հետ կապված անձինք, որոնք աշխատունակ, եռանդուն մարդիկ են և կարող կլինեն մեծ օգուտ բերել իրենց երկրների էկոնոմիկայի, գիտության, տեխնիկայի ու կուլտուրայի զարգացմանը։ Սակայն դեռևս շարունակվում է սպառազինությունների մրցավազքը, որն ուժեղացնում է պատերազմի վտանգը, օբյեկտիվ հնարավորություններ ստեղծելով նրա ծագման համար։ Իսկ ինչպիսի ավերիչ հետևանքներ կարող է ունենալ այն, մարդկությանը քաջ հայտնի է։

Երկար տարիներ Սովետական Միությունը ձգտում է հասնել միջուկային զենքի փորձարկումների դադարեցման։ Բայց ԱՄՆ-ը՝ իր դաշնակիցների հետ վիժեցնում է համաձայնությունը այդ հարցի շուրջ։ Դա ամբողջ աշխարհի առաջ կրկին անգամ բացահայտվեց, երբ ԱՄՆ-ը և Անգլիան Զինաթափման 18-ի կոմիտեում փաստորեն հրաժարվեցին բանակցությունների հիմքում դնել Հնդկաստանի, Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի, Բրազիլիայի և այդ կոմիտեի մասնակից մյուս չեզոք պետությունների առաջարկությունը, որով նախատեսվում է միջուկային փորձարկումների դադարեցման համաձայնագրի վերահսկողություն՝ միջուկային պայթեցումների հայտնաբերման ազգային միջոցների օգնությամբ։ Նրանք ավելի հեռուն գնացին՝ վերսկսելով միջուկային պայթեցումները։

Եվ Միացյալ Նահանգների կառավարությունը չի թաքցնում միջուկային զենքի փորձարկումների նոր սերիայի և, մանավանդ, տիեզերական տարածության փորձարկումների նպատակը։ Դրանք սկսվել են ՍՍՌՄ-ի նկատմամբ ռազմական գերազանցության հասնելու ձգտումով։ Պենտագոնի այս քայլը մի անգամ ևս հաստատում է ԱՄՆ-ի կառավարող շրջանների դիրքը խաղաղության և պատերազմի, զինաթափման և սպառազինությունների մրցավազքի ասպարեզում։ Այստեղից էլ, պատահական չէ Կալիֆոռնիայի համալսարանի պրոֆեսոր Ջոն Մոռոսի՝ վերջերս ԱՄՆ-ում հրապարակված «Յալթայից մինչև զինաթափում» գրքի այն միտքը, որ «Վերջին 17 տարում տեղի ունեցած բանակցությունների ուշադիր ուսումնասիրումը կարող է բերել միայն մեկ եզրակացության. Սովետական Միությունն անկեղծորեն ցանկանում է, որպեսզի մեր բաժանված մոլորակը զինաթափվի, իսկ ՆԱՏՕ-ի երկրների կառավարությունները այդ բանը չեն ուզում»։ Այդպես են խոսում ամենուրեք ազնիվ մարդիկ. «Մենք պատերազմի ենք պատրաստվում որպես փղեր, իսկ խաղաղության՝ որպես ամոքանք»,— ասում են հասարակ ամերիկացիները։

1922 թվականի Ջենովայի և 1962 թվականի Ժնևի միջև ընկած է պատմական մի ժամանակաշրջան, որի ընթացքում երկրագնդի վրա տեղի են ունեցել հսկայական փոփոխություններ։ Սակայն այսօր էլ, ինչպես 40 տարի առաջ, մենք հանդես ենք գալիս զինաթափման օգտին, բոլոր ջանքերը գործադրում, որպեսզի ամրապնդենք ընդհանուր խաղաղությունը։ Խաղաղության ամրապնդմանն ուղղված ամենաարմատական առաջարկությունները՝ Գերմանիայի հետ հաշտության պայմանագրի կնքումը, միջուկային զենքի փորձարկումների արգելումն ու նրանց լիակատար վերացումը, ատոմազերծ գոտիներ ստեղծելը, զինված ուժերը կրճատելը, խաղաղության պակտ կնքելը, բանակցությունների միջոցով բոլոր վիճելի հարցերը կարգավորելը և, վերջապես, որպես բոլոր առա-

*ջարկությունների պսակ, ընդհանուր և լրիվ զինաթափման պայմանագրի նախագիծը բխել են և բխում են Սովետական Միությունից։ Մենք խաղաղության և զինաթափման համար պայքարում էինք այն ժամանակ, երբ դեռ թույլ էինք ռազմական տեսակետից և պայքարում ենք այժմ, երբ ունենք ամենահզոր զենքը, որը չունի որևէ այլ տերություն։ Այս փաստը լավագույն ապացույցն է այն բանի, որ Սովետական Միությունը պատերազմ չի ցանկանում։*

*Լենինյան պարտիայի, ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմին է պատկանում կայուն խաղաղության ապահովման արմատական ուղիների հիմնավորման համաշխարհային-պատմական ծառայությունը։ Այդ ուղին ընդհանուր և լրիվ զինաթափումն է՝ միջազգային խիստ վերահսկողությամբ։*

*Հանուն խաղաղության, հանուն զինաթափման և անվտանգության մղվող պայքարի հարցերը Սովետական Միությունը, սոցիալիստական մյուս երկրներն առաջ են քաշել և քննարկել են ո՛չ միայն ՄԱԿ-ում, նրա զանազան կոմիտեներում, հասարակական կազմակերպություններում։ Այդ պրոբլեմը քննարկվել է նաև կոմունիստական և բանվորական պարտիաների 1957 և 1960 թվականների խորհրդակցություններում, բազմաթիվ երկրների կոմպարտիաների համագումարներում և, հատկապես, ՍՄԿՊ XX, XXI և XXII համագումարներում։*

*Մարդկությունն անշեղորեն շարժվում է դեպի իր դարավոր երազանքը. մի կյանք, որը կլինի առանց պատերազմների ու զենքի, առանց ապագայի նկատմամբ երկյուղի։ Սովետական Միությունը կանգնած է կոմունիստական հասարակության շեմին, բազմաթիվ երկրներ հաջողությամբ սոցիալիզմ են կառուցում, երկրագնդի տարբեր մասերում ուժեղանում է ժողովուրդների ձգտումը դեպի սոցիալիզմ։ Այդ ամենը նպաստում է մարդկանց հույսերի ու երազանքների իրականացմանը։ Դա նշանակում է, որ մոտ է ընդհանուր զինաթափման իրականացման ժամը, զինաթափման, որը սոցիալիզմի, կոմունիզմի վեհ իդեալն է։*

---

# ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ԲԱՐՈՅԱԿԱՆ ԳԼԽԱՎՈՐ ԳԻԾԸ

## *Խ. ԵՐԻՑՅԱՆ*

*Մարդկային հասարակությունն այժմ պատմական այնպիսի ժամանակաշրջան է ապրում, երբ առաջավոր հասարակական ուժերի մահացու հարվածների տակ զառամյալ կապիտալիզմն իր մայրամուտին է հասել, երբ երկրագնդի ազգաբնակչության մեկ երրորդից ավելին հաջողությամբ սոցիալիզմ ու կոմունիզմ է կառուցում։*

*Նոր աշխարհի հաղթարշավի ավանգարդում ընթանում է մեր երկիրը՝ կոմունիզմի անառիկ ամրոցը, որն առաջինը հարթեց սոցիալիզմի մայրուղին և առաջինն է կառուցում կոմունիզմ։ Եվ դա ո՛չ միայն մեր երկրի, այլև ամբողջ աշխարհի աշխատավորների անդուլ պայքարի արդյունքն է։ Միլիոններն իրենց ստեղծագործական, գիտակցական աշխատանքով իրականություն են դարձնում կոմունիստական շինարարության վիթխարի կանխագծումները ՍՍՌՄ-ում, դրանով մարմնավորելով իրենց անսահման նվիրվածությունը կոմունիզմի, սոցիալիստական Հայրենիքի, սոցիալիզմի երկրների նկատմամբ։*

*Հիրավի, առանց կոմունիզմի անմահ գաղափարներին նվիրված լինելու, առանց սոցիալիստական Հայրենիքը սիրելու մի՞թե հնարավոր էր պատմական կարճ ժամանակամիջոցում հաղթահարել հսկայական դժվարություններ և երկիրը դարավոր հետամնացությունից դուրս բերել զարգացման լայն ուղի։ Եվ մի՞թե հնարավոր է այժմ իրականացնել կոմունիստական շինարարության հոյակապ պլանները, հաղթահարել նրա ճանապարհին հանդիպող դժվարությունները, եթե նոր մարդը օժտված չլինի կոմունիստական աշխարհայացքով և բարոյական վեհ գծերով։*

### ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՀԱՄՈԶՎԱԾՈՒԹՅԱՆ ՄԵԾ ՈՒԺԸ

*Անցյալ դարի վերջին մարքսիզմը գերիշխող դարձավ բանվորական շարժման մեջ։ Նրա ազդեցության ոլորտը, տարածման շրջանակներն ավելի լայնացան, երբ այն մուտք գործեց Ռուսաստան և իր պայծառ շողերը սփռեց ռուսական խավարում։ Մարքսիզմի գաղափարները Ռուսաստանում ավելի պարարտ հող գտան, քանի որ XIX դարի վերջին և XX դարի սկզբին ռևոլյուցիոն շարժման կենտրոնն Արևմուտքից փոխադրվեց Արևելք՝ Ռուսաստան, որտեղ մարքսիստների մի ամրակուռ խումբ, Վ. Ի. Լենինի գլխավորությամբ, ահեղ գոտեմարտի բռնվեց հանուն հին աշխարհի ռևոլյուցիոն վերափոխման, հանուն աշխատավոր մասսաների ազատագրման։*

Անվեհեր ռևոլյուցիոներների խումբը, որն սկզբում շատ սակավաթիվ էր, համոզված էր, որ միայն մարքսիստական գաղափարների իրագործմամբ է հնարավոր ցարիզմի ճիրաններում տառապող աշխատավորությանը դուրս բերել երջանիկ կյանքի ուղի։ Հենց այդ գաղափարական համոզվածության շնորհիվ էր, որ ռուսական մարքսիստներին չընկճեցին ոչ մի զրկանք ու դժվարություն, ոչ մի բռնություն և դաժան հաշվեհարդար, որոնք կիրառվում էին ցարական բռնակալների կողմից ռևոլյուցիոն մարտիկների նկատմամբ։ Ընդհակառակը, որքան շատ ահ ու սարսափ էին տարածում ցարական սատրապներն ու ռեակցիոն ուժերը, այնքան ավելի էր բորբոքվում պայքարը, մեծանում ռևոլյուցիոն բանակը։ Ռուսական կոմունիստների համաշխարհային պատմական միսիան, իր նմանը չունեցող սխրագործությունն այն էր, որ նրանք կարողացան մարքսիզմի գաղափարները դարձնել բանվոր դասակարգի, աշխատավոր գյուղացիության հույսն ու հավատը և ղեկավարվելով նրանցով՝ ապահովել սոցիալիստական ռևոլյուցիայի և ապա սոցիալիզմի հաղթանակը մեր երկրում։

Լինել նվիրված կոմունիզմին, նշանակում է ներքուստ խորապես համոզվել նրա ճշմարտացիության ու արդարացիությանը։ Սովետական մարդկանց նվիրվածությունը կոմունիզմին, ինչպես և նրա հիմքում ընկած բարձր գաղափարայնությունն ինքնին չեն առաջացել։ Դրանք երկար ու համառ պայքարի, դաստիարակության արդյունք են։ Սովետական ժողովրդի ուղին պայքարի և հաղթանակների ուղի է։ Ինչպես սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման, այնպես էլ սոցիալիզմի հաղթանակի համար մղվող պայքարում պարտիան աշխատավորական մասսաների մեջ մշտապես սերմանել է սեր, հավատարմություն կոմունիզմի սկզբունքներին։ Լենինյան պարտիայի շարքերում աճել և կոփվել են գաղափարական բարձր համոզվածության հասած, խիզախ և աննկուն մարտիկներ, որոնք իրենց պարտքն են համարել պայքարել աշխատավոր ժողովրդի ազատագրման համար, նոր հասարակարգի հաղթանակի համար, պատրաստ՝ մինչև վերջ հավատարիմ մնալու մարքսիզմին։ Մեր պարտիայի և ժողովրդի պատմության էջերից երբեք չեն ջնջվի բանվոր դասակարգի գործին մինչև ուղն ու ծուծը նվիրված լենինյան գվարդիայի ականավոր գործիչների անունները։

Երբ կարդում ես Ձերժինսկու բանտային օրագիրը, չես կարող չլցվել անհուն հարգանքով և սիրով լենինյան պարտիայի այդ հին գվարդիայի մարտիկի նկատմամբ։ Վճռական այդ մարդն իր քրոջը գրում է. «Ես ավելի երջանիկ եմ նրանցից, ովքեր ազատության մեջ վարում են անիմաստ կյանք։ Եթե անհրաժեշտ լիներ ընտրություն կատարել բանտի և ազատ, բայց անիմաստ կյանքի միջև, ես կընտրեի առաջինը, ուրիշ կերպ ապրել չարժե». կամ 1909 թվականին նոր տարվա նախօրյակին, երբ պարտիան գտնվում էր ծանր վիճակում, Ձերժինսկին գրում է. «Այստեղ, բանտում, հաճախ ծանր է, ժամանակ առ ժամանակ նույնիսկ ահավոր... Բայց, այնուամենայնիվ, եթե ինձ վիճակվեր սկսել կյանքը նորից, ես կսկսեի այնպես, ինչպես սկսել եմ։ Եվ ոչ թե որպես պարտք, որպես պարտականություն։ Դա ինձ համար օրգանական անհրաժեշտություն է»։ Ինչպիսի՜ հավատով, մարքսիստական ինչպիսի՜ խոր համոզվածությամբ պետք է օժտված լինել, վարվելու համար այնպես, ինչպես Ձերժինսկին։

Ռուսական ռևոլյուցիայի խիզախ մարտիկների պանծալի կերպարները, ինչպես անմար ջահեր լուսավորում են նրանց ուղին, ովքեր այսօր կապիտալիստական աշխարհում պայքարում են աշխատավոր ժողովրդի և սոցիալիզմի



համար։ Բոլշևիկների համար չի եղել և չկա ուրիշ ավելի բարձր, ավելի սրբազան նպատակ, քան ժողովրդին ծառայելը։ Այդ նույն նպատակն էլ այժմ ռևոլյուցիոն սխրանքների է մղում միջազգային կոմունիստական և բանվորական շարժման մարտիկներին, որոնք անձնվիրաբար պայքարում են, որպեսզի երկրի երեսից ընդմիշտ չքանան բոլոր կեղեքիչները, որպեսզի ամբողջ աշխարհում հաղթանակի կոմունիզմը և բոլոր ժողովուրդներն ապրեն ազատ, երջանիկ կյանքով։

Որքա՜ն խորն էին, օրինակ, թափանցել մարքսիստական-լենինյան մտքերն Իրանի երիտասարդ կոմունիստների ամենակարկառուն ներկայացուցիչներից մեկի՝ Խոսրով Ռուզբեհի հոգու մեջ, որ նա իր երիտասարդ կյանքն ամբողջովին նվիրեց ռևոլյուցիոն փոթորիկներին, իր սխրանքով հիացմունք պատճառելով աշխարհի առաջավոր մարդկությանը։ Ոչ մի զրկանք, Իրանի կառավարության և ոչ մի բռնի միջոց, դատավորների խորամանկ մեքենայությունները չընկճեցին լեգենդար Ռուզբեհի կամքը։ Դատավորները Ռուզբեհին առաջարկեցին դատվել ոչ թե որպես քաղաքական գործիչ, այլ որպես թեթև քրեական հանցագործ. այդ առաջարկը նողկանք ու ատելություն առաջացրեց նրա մեջ։ Մերժելով այդ ստոր առաջարկը՝ նա դատավորներից պահանջեց իրեն դատել որպես մարքսիզմին նվիրված մարդու, որպես Իրանի Կոմունիստական պարտիայի հավատարիմ անդամի։ Խոսրով Ռուզբեհը գերադասեց մահը՝ բարձր պահելով կոմունիստի սրբազան անունը, ռևոլյուցիոն մարքսիզմ-լենինիզմի դրոշն ամբողջ աշխարհում։

Նվիրվածությունը կոմունիզմին կապիտալիզմի պայմաններում և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումից հետո՝ դրսևորվում է այլ կերպ։ Կապիտալիստական հասարակարգը տապալելու և պրոլետարիատի դիկտատուրան հաստատելու համար մղվող պայքարը կապված էր, անշուշտ, ավելի մեծ զոհերի, դժվարությունների և վտանգների հետ։ Ճաշակելով կյանքի շատ դառնություններ, ռևոլյուցիոներների ավագ սերունդն անցավ հերոսական պայքարի և հաղթանակների ծանր ուղի, գաղափարական բարձր համոզվածության և քաղաքական կոփվածության սքանչելի լենինյան դպրոց։

Ինչպես ռևոլյուցիոն տարիներին կոմունիստների լավագույն հատկությունները արթնացնում էին մարդկանց դասակարգային ինքնագիտակցությունը և ոգեշնչում նրանց կապիտալիստների ու կալվածատերերի դեմ մղվող պայքարում, այնպես էլ այժմ, կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում, նրանց հետևորդներին մղում են աշխատանքային նոր սխրանքների։

Այն օրվանից, երբ մեր երկրում ոչնչացվեցին կապիտալիստական կարգերը, հասարակական ամբողջ կյանքը դրվեց գիտակցական կազմակերպված հունի մեջ, տարերային պրոցեսը, որն իշխում էր կապիտալիզմի օրոք, իր տեղը զիջեց գիտակցականին։ Պատմության մեջ առաջին անգամ միլիոնների աշխարհայացքը դարձավ մարքսիզմ-լենինիզմը, որն անփոխարինելի միջոց է նոր հասարակարգի կառուցման համար։ Սովետական իշխանության տարիներին երկրի սոցիալ-տնտեսական և քաղաքական զարգացման շնորհիվ արմատական փոփոխություններ տեղի ունեցան մարդկանց գիտակցության, միլիոնների կյանքի ու գործունեության մեջ։

Անկասկած, մեծ գործ է կատարված մասսաների կոմունիստական աշխարհայացքի մշակման ուղղությամբ. բայց այդ բնագավառում դեռ հսկայական անելիքներ ունենք։ Չպետք է մոռանալ, որ չափազանց դժվար է հասնել զար-

*գացման այնպիսի մակարդակի, որպեսզի բոլորն անխտիր մտածեն ու գործեն այնպես, ինչպես պահանջում են կոմունիզմի շահերը։ Վ. Ի. Լենինը «Ի՞նչ անել» նշանավոր աշխատության մեջ ասել է.*

«Մենք միայն խաբած կլինեինք մեզ, մեր աչքերը փակած մեր խնդիրների վիթխարիության հանդեպ, նեղացրած կլինեինք այդ խնդիրները,— երբ մոռանայինք առաջավոր ջոկատի և նրան հարող բոլոր մասսաների տարբերությունը, երբ մոռանայինք, որ առաջավոր ջոկատի մշտական պարտականությունն է՝ բ ա ր ձ ր ա ց ն ե լ ավելի ու ավելի լայն խավեր մինչև այդ առաջավոր մակարդակը» *(Երկեր, հատ. 7, էջ 326—327)*։

*Ճիշտ է, այդ խոսքերն ասված են սրանից ավելի քան կես դար առաջ, բայց նրանք չեն կորցրել իրենց նշանակությունը նաև այժմ։ Որպեսզի սովետական ամբողջ ժողովուրդը հասնի իր ավանգարդի՝ Կոմունիստական պարտիայի մակարդակին, անհրաժեշտ է առաջիկայում ևս ավելի լարված, ավելի բազմակողմանի գաղափարական աշխատանք, որի նպատակը պետք է լինի յուրաքանչյուր սովետական մարդու մեջ պատվաստել բարձր բարոյական հատկություն, նվիրվածություն կոմունիզմին։ Իսկ կապիտալիզմի մնացուկները՝ ծուլությունը, պորտաբուծությունը, հարբեցողությունն ու խուլիգանությունը, ժուլիկությունն ու շահամոլությունը և այլ արատներ խսպառ պետք է վերանան մեր կյանքից։ Դա, առաջին հերթին, նոր մարդու, կոմունիստական հասարակարգի մարդու դաստիարակության պրոցեսն է։ ՍՄԿՊ XXII համագումարում, Կենտկոմի հաշվետվության մեջ ընկ. Խրուշչովը նշում է.*

«Նոր մարդու դաստիարակությունը բարդ ու տևական պրոցես է։ Անհնար է մարդկանց մեխանիկորեն կապիտալիզմի բազավորությունից փոխադրել կոմունիզմի թագավորություն։ Չի կարելի կոմունիզմ տանել այն մարդուն, որը մամռակալել է կապիտալիստական նախապաշարմունքներով։ Հարկավոր է նախ հոգ տանել նրան անցյալի բեռից ազատելու մասին։ Մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմի մնացուկների դեմ մղվող պայքարը, միլիոնավոր մարդկանց մեջ դարերով մշակված սովորությունների և բարքերի փոփոխումը, որն սկսվեց մեր ռևոլյուցիայի կողմից, տևական և դժվարին գործ է։ Անցյալի մնացուկները մի ահավոր ուժ են, որ մղձավանջի նման ճնշում են ապրողների մտքերի վրա։ Դրանք միլիոնավոր մարդկանց կենցաղում և գիտակցության մեջ արմատացած են մնում դեռ նրանց ծնունդ տված տնտեսական պայմանների անհետացումից հետո երկար ժամանակ» *(ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 146)*։

*Դրանք կվերանան, երբ կոմունիստական համոզվածությունը դառնա բոլորի բնորոշ գիծը։ Առանց մարքսիստական-լենինյան գիտությանը տիրապետելու հնարավոր չէ լիովին համոզված լինել կոմունիզմի սկզբունքների ճշմարտության և արդարացիության մեջ։ Այս տեսակետից կենսական նշանակություն է ստանում հասարակության բոլոր անդամների կողմից մարքսիզմ-լենինիզմի աշխարհայացքին տիրապետելը։*

*Մատերիալիստական աշխարհայացքի ձևավորման սկիզբը դրվում է միջնակարգ դպրոցում, ապա այն ընդլայնվում և խորացվում է բարձրագույն դպրոցում, որտեղ ուսումնասիրվում են փիլիսոփայությունը, քաղաքատնտեսությունը և գիտական կոմունիզմը՝ մարքսիզմի երեք բաղկացուցիչ մասերը։ Այս ամենով դեռևս գործը չի ավարտվում։ Թեև գաղափարական համոզվածությունը զգալի չափով հիմնվում է թեորիական գիտելիքների վրա, բայց միայն գրքային ծանոթությունը դեռևս բավական չէ կոմունիստական աշխարհայացք ձևավորելու համար։ Այս տեսակետից հատկանշական են Վ. Ի. Լենինի հետևյալ խոսքերը.*



«Առանց աշխատանքի, առանց պայքարի՝ կոմունիստական բրոշյուրներից և աշխատություններից կոմունիզմի գրքային իմացությունը բացարձակապես ոչինչ չարժե, որովհետև դա կշարունակեր թեորիայի և պրակտիկայի հին խզումը, այն հին խզումը, որը կազմում էր հին բուրժուական հասարակության ամենազզվելի գիծը» *(Երկեր, հատ. 31, էջ 346)*։

*Հարկ չկա ապացուցելու, որ կոմունիստական համոզվածությունն արտահայտվում է ո՛չ միայն խոսքով, այլև կոնկրետ գործերով։ Ուսուցման զուգակցումը պրակտիկ գործունեության հետ, ակտիվ հասարակական աշխատանքի հետ կոփում է կոմունիզմ կառուցող մարդուն, հանուն կոմունիզմի ամենօրյա պայքարը նրա համար դառնում է կենսական անհրաժեշտություն։*

*Պարտիայի գաղափարական աշխատանքի ձևերի ու մեթոդների զինանոցն օրըստօրե հարստանում է. ստեղծվում են լայն հնարավորություններ, որպեսզի յուրաքանչյուր մարդ կարողանա տիրապետել մարքս-լենինյան թեորիային և նրա դրույթների խսկությունն ստուգել կյանքում, դրանք օգտագործել այս կամ այն գործնական խնդրի լուծման համար։ Պարտիայի ձեռնարկած միջոցառումների շնորհիվ վերջին տարիներին զգալի չափով հաղթահարվեց գաղափարական-քաղաքական աշխատանքի կտրվածությունը կյանքից։ Այժմ քաղաքական լուսավորության խմբակներում, սեմինարներում, դասախոսությունների և զրույցների ժամանակ լայնորեն օգտագործվում են կոմունիստական շինարարության բազմաբովանդակ առօրյայից վերցված կոնկրետ փաստերը, որոնք գնահատվում են մարքս-լենինյան աշխարհայացքի տեսանկյունից, վճռականորեն խարազանվում, դեն է շպրտվում այն ամենը, ինչ խորթ է մեր հասարակարգին, նոր մարդու բարոյականությանը։*

*Մարքսիստական-լենինյան գաղափարախոսությունը մեր երկրում այն զորեղ զենքն է, որով Կոմունիստական պարտիան սովետական բազմազգ ժողովրդին խավարից դուրս բերեց լուսավոր կյանք, ապահովեց սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակը։*

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՐՁՐ ԳԱՂԱՓԱՐԱՅՆՈՒԹՅԱՆ ԴՐՍԵՎՈՐՈՒՄՆ Է

*Հայրենասիրությունը պատմական խոր արմատներ ունի, այն մարդկանց նվիրական զգացմունքների արտահայտությունն է։ Սակայն, հայրենասիրությունը յուրաքանչյուր էպոխայում ունի տարբեր սոցիալական, դասակարգային էություն։ Հայրենասիրությունը չի կարելի դիտել որպես մի ինչ-որ վերացական բնույթի բան։ Այն անպայման առնչվում է տվյալ երկրի սոցիալ-տնտեսական և քաղաքական կարգերի հետ, այսինքն՝ վերջիններիս նկատմամբ ցուցաբերվող վերաբերմունքով է բնորոշվում հայրենասիրական զգացմունքների և համոզմունքների էությունը։ Հայրենասիրությունը յուրաքանչյուր դասակարգ յուրովի է հասկանում ու մեկնաբանում։ Եվ քանի որ ռևոլյուցիոն բանվոր դասակարգի ու բուրժուազիայի տնտեսական և քաղաքական վիճակը բոլորովին տարբեր է ու միմյանց հակադիր, ուստի այդ դասակարգերի վերաբերմունքն էլ «բուրժուական հայրենիքի» նկատմամբ տարբեր է։*

*Բուրժուական հայրենասիրությունը հանդես է եկել բուրժուական ազգերի և ազգային պետությունների ստեղծման համար մղվող պայքարում։ Բուրժուա-*

կան ռևոլյուցիան, որն ուղղված է ֆեոդալական մասնատվածության և ճնշման դեմ, որի նպատակն է հաստատել ավելի պրոգրեսիվ տնտեսական ու քաղաքական հասարակարգ, արթնացնում է հասարակության առաջավոր ուժերի հայրենասիրական զգացմունքները։ Վ. Ի. Լենինը նշում էր, որ XVIII դարի 90-ական թվականների ռևոլյուցիոն պատերազմներում ֆրանսիացիների ցուցաբերած հերոսական հայրենասիրությունը պայմանավորված էր տնտեսական և քաղաքական որոշակի նախադրյալներով։

Սակայն բուրժուական հայրենասիրությունը սահմանափակ է. այն ենթարկվում է կապիտալի շահույթին, ծառայում է միայն բուրժուազիայի քսակին։ Պատմությունը ցույց է տվել, որ բուրժուազիան պատրաստ է վաճառելու ազգի շահերը, նրա ազատությունն ու անկախությունը՝ հանուն կապիտալիստական շահագործման, հանուն կապիտալի բարձրագույն շահութաբերության։ Դրա համար էլ բուրժուազիայի «հայրենասիրությունը» միահյուսվում է նացիոնալիզմի, շովինիզմի և կոսմոպոլիտիզմի հետ։ Ռուսական բուրժուազիան, օրինակ, ինչպես փետրվարյան բուրժուա-դեմոկրատական, այնպես էլ Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի նախապատրաստման և անցկացման ժամանակաշրջանում պատրաստ էր զոհաբերելու Ռուսաստանը, վաճառելու ազգի շահերն օտարերկրյա իմպերիալիստներին, միայն թե պաշտպաներ իր գոյությունը, կապիտալիզմը փրկեր կործանումից։

Բանվոր դասակարգի հայրենասիրական զգացմունքներն ի հայտ են գալիս դեռևս մինչև սոցիալիստական ռևոլյուցիան։ Ռևոլյուցիոն պայքարի ընթացքում պրոլետարիատն իր մեջ մարմնավորելով մի կողմից հայրենասիրությունը, իսկ մյուս կողմից պրոլետարական ինտերնացիոնալիզմը, պայքարում էր աշխատավոր մասսաների իսկական հայրենիք ստեղծելու համար։ Սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակից և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումից հետո պրոլետարիատի և աշխատավոր գյուղացիության հայրենասիրությունն ստանում է նոր բովանդակություն և այն ծառայում է միայն սոցիալիստական Հայրենիքին։

Սովետական հայրենասիրության էությունը սոցիալիստական հասարակական ու պետական կարգի, մեր Հայրենիքի, սոցիալիզմի բոլոր երկրների նկատմամբ անսահման նվիրվածության մեջ է։ Ստանալով սոցիալիստական բովանդակություն, հայրենասիրությունը, որը միահյուսվում է կոմունիզմին նվիրված լինելու հետ, խորապես թափանցեց բանվորների, աշխատավոր գյուղացիների ու ինտելիգենցիայի հոգու մեջ և հուժկու թափով նրանց միջից աշխատանքային սխրանքների՝ երկրի տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր ասպարեզներում։ Սովետական հայրենասիրության կենսունակության շնորհիվ էր, որ ժողովրդական մասսաներն ի հայտ բերեցին չտեսնված էնտուզիազմ և փառավոր էջեր գրեցին սոցիալիզմի պատմության մեջ։ Այն ավելի ցայտուն դրսևորվեց 1941—1945 թթ. Հայրենական Մեծ պատերազմի տարիներին։ Պատմությանը հայտնի չեն եղել հերոսության, խիզախության և արիության այնպիսի մասսայական օրինակներ, որոնք կատարվեցին մեզ մոտ, թե՛ ռազմաճակատում և թե՛ թիկունքում։

Սովետական հայրենասիրությունը, որի հիմքում ընկած է կոմունիզմի մեծ գաղափարը, գերազանցապես գիտակցական է։ Սովետական ժողովուրդը հպարտանում է նրանով, որ նա առաջինը կառուցեց սոցիալիզմ և առաջինն է կառուցում կոմունիզմ։ Նա խորապես գիտակցում է կոմունիստական հասա-



րակարգի առավելությունը կապիտալիստականի նկատմամբ։ Բայց սովետական հայրենասիրությունը երբեք չի նշանակում վճռականորեն մերժել այն ամենը, ինչ արտասահմանյան է։ Իսկական սովետական հայրենասերը նա է, ով ըստ արժանվույն գնահատելով մարդկային մտքի նվաճումները գիտության, տեխնիկայի ու կուլտուրայի բնագավառում, կարողանում է դրանք ստեղծագործաբար ծառայեցնել հայրենական գիտության, տեխնիկայի և կուլտուրայի զարգացմանը, իր երկրի բարգավաճմանը։

Ինչով են առաջնորդվում սովետական գիտնականները, որոնք ջանք չեն խնայում զարգացնելու գիտությունն ու տեխնիկան, մինչև վերջ իմանալու տիեզերքի գաղտնիքները՝ նախ և առաջ հայրենասիրությամբ, կոմունիզմի գործին անսահման նվիրվածության զգացումով։ Սովետական գիտությունն ու տեխնիկան նրանք պսակեցին փառքով, մեր երկրի հեղինակությունն ու պատիվը աշխարհում հասցրին ամենաբարձր աստիճանի։ Իսկ երբ խիզախ տիեզերագնացներ Յու. Գագարինը, Գ. Տիտովը, Ա. Նիկոլաևը և Պ. Պոպովիչը վճռեցին թափանցել տիեզերք և նրա նվաճման սկիզբը դնել, նրանք առաջին հերթին մտածում էին մեր Հայրենիքի փառքի մասին, կոմունիզմ կառուցող երկրի հզորության մասին։

Սովետական հայրենասիրությունն արտահայտվում է կոնկրետ գործերով՝ լինեն դրանք փոքր, թե մեծ։ Սովետական յուրաքանչյուր քաղաքացի իր վարքով, իր աշխատանքով կարող է ապացուցել իր հայրենասիրությունը, իր նվիրվածությունը կոմունիզմին։ Հիրավի, ով սիրում է սոցիալիստական Հայրենիքը, ով խորապես զգում, գիտակցում է իր պարտքը, կոնկրետ անելիքները, նա կշռադատում է յուրաքանչյուր իր քայլը՝ անխոնջ կերպով պայքարելով Հայրենիքի բարօրության և հզորության, ժողովրդի երջանիկ կյանքի համար։

Այս առնչությամբ բերենք մի բնորոշ օրինակ։ Այն պահին, երբ օդում, անհավասար մարտում, Հայրենիքը լքած և կապիտալիստական «դրախտով» հմայված մարդիկ մահվան սպառնալիքի տակ, ստիպում էին խիզախ օդաչուի Բախշինյանին կատարելու իրենց կամքը և դուրս գալու Հայրենիքի սահմաններից, նա համակված էր միայն մի մտքով. թեկուզ կյանքի գնով, չարատավորել գաղափարը, Հայրենիքի պատիվը։ Եվ միայն խոր համոզմունքը, նվիրվածությունը Կոմունիստական պարտիայի գործին, ուժ տվին նրան՝ հաղթելու լկտիացած թշնամիներին և խանգարելու նրանց՝ իրագործելու իրենց ստոր նպատակը։

Մեր անծայրածիր Հայրենիքի բոլոր տեղամասերում, լինի դա արդյունաբերության թե գյուղատնտեսության, գիտության, տեխնիկայի, թե կուլտուրայի բնագավառ, ամենուրեք, ուր համաժողովրդական պայքար է մղվում երկրի հետագա հզոր վերելքի համար, հանդիպում ենք բարեխիղճ աշխատողների, իրենց գործին նվիրված մարդկանց։ Եվ նրանք քիչ չեն՝ հազարներ, միլիոններ են։

Սակայն այդ միլիոնների կողքին կան աննշան թվով մարդիկ, որոնք դեռևս մնում են բուրժուական բարքերի ճահճում։ Այդ մարդկանց համար Հայրենիքը, ժողովրդի շահերը ոչինչ են, իսկ իրենց անձնականը՝ ամեն ինչ։ Այդպիսիք էին, օրինակ, քաղաքացիներ Ի. Գոլուբևը և Ն. Վոխմյակովը, որոնք արտասահման կատարած տուրիստական ուղևորության ժամանակ որոշել էին մնալ «ազատ աշխարհում», ընկնելով ամերիկյան հետախուզության ճանկը։ Նրանք «արևմտյան աշխարհը» պատկերացնում էին վարդագույն լույսի տակ,

ինչպես այն գունազարդում է բուրժուական պրոպագանդան։ Բայց ինչպիսի՞ հիասթափություն համակեց նրանց, երբ սպասած դրախտի փոխարեն նրանք ընկան խսկական դժոխք։ Նրանց անմիջապես համակեց Հայրենիք վերադառնալու տենչը, որն ի վերջո իրականացավ։ Իրենց կաշվի վրա զգալով կապիտալիստական աշխարհի նողկալի էությունը, նրա դառնությունները, նրանք սեփական փորձով համոզվեցին, որ մարդը կարող է ազատ ու երջանիկ լինել միայն սոցիալիստական հասարակարգում։

Նման երևույթների պատճառները պետք է փնտրել մի կողմից՝ մարդկանց գիտակցության մեջ դեռևս գոյություն ունեցող կապիտալիզմի մնացուկների, իսկ մյուս կողմից՝ մեր գաղափարական դաստիարակչական անբավարար աշխատանքի մեջ։ Պարտիական, կոմերիտական և պրոֆմիութենական կազմակերպությունների տեսադաշտից երբեք չպետք է վրիպի այս կամ այն մարդու ոչ ճիշտ արարքը, երբ ժամանակին հակահարված չստանալու դեպքում, խորացնում է մարդու սխալը, նրան կանգնեցնում դժբախտության առջև։ Մարդկանց մեջ սովետական հայրենասիրություն սերմանելն անխզելիորեն կապված է նրանց գիտակցությունից կապիտալիզմի մնացուկները վերջնականապես դուրս մղելու հետ։ Իսկական սովետական հայրենասերը ջերմությամբ է լցված իր ժողովրդի, իր Հայրենիքի հանդեպ, նա ապրում է, ոգևորվում կոմունիզմի հաջողություններով և մշտապես մտահոգված է նրա առօրյայով։

Սովետական հայրենասիրությունը բնականաբար զուգորդվում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի հետ, քանի որ նրանք երկուսն էլ համապատասխանում են բանվոր դասակարգի շահերին, քանի որ տարբեր ազգերի բանվոր դասակարգի շահերի միջև չկան հակասություններ, նրանց բոլորի շահերը միասնական են. սոցիալիզմը ոչնչացնում է ոչ միայն դասակարգային, այլև ազգային հակասությունները։ Սոցիալիզմի հաղթանակի համար մղվող ընդհանուր պայքարը մեր երկրի բազմաթիվ ազգություններին և ժողովուրդներին սերտորեն միավորեց մի միասնական, համերաշխ ընտանիքում։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո փոխադարձ օգնության ու համագործակցության շնորհիվ նրանք հասան տնտեսական, կուլտուրական և քաղաքական զարգացման բարձր մակարդակի։

Կառուցելով սոցիալիզմ, մեր երկրի աշխատավորները կատարեցին իրենց ինտերնացիոնալ պարտքը ամբողջ աշխարհի պրոլետարիատի և ողջ աշխատավորության հանդեպ։ Եվ այժմ էլ Կոմունիստական պարտիան, ինչպես առաջադրված է նրա նոր Ծրագրում, ՍՍՌՄ-ում կոմունիստական շինարարությունը դիտում է որպես սովետական ժողովրդի ինտերնացիոնալ մեծ խնդիր, որը համապատասխանում է ամբողջ համաշխարհային սոցիալիստական սիստեմի շահերին, միջազգային պրոլետարիատի, բովանդակ մարդկության շահերին։ Սոցիալիստական երկրների ժողովուրդների բարեկամությունն ու փոխօգնությունը պայմանավորվում են շահերի ընդհանրությամբ։ Սովետական ժողովուրդը, ինչպես և սոցիալիստական լագերի բոլոր ժողովուրդները չեն կարող անտարբեր լինել միմյանց հաջողությունների և դժվարությունների նկատմամբ։ Այստեղ սոցիալիստական հայրենասիրությունն ու պրոլետարական ինտերնացիոնալիզմն ուղղված են մի ընդհանուր նպատակի։

Զարգացնելով և ամրապնդելով իր երկրի էկոնոմիկան՝ սոցիալիստական լագերի յուրաքանչյուր ժողովուրդ միաժամանակ կատարում է իր ինտերնացիոնալ պարտքը համաշխարհային սոցիալիստական սիստեմի ամրապնդման



գործում։ Ահա թե ինչու կոմունիստական և բանվորական պարտիաները խորապես մտահոգված են այն հարցով, թե ինչպիսի նոր ձևերով ուժեղացնեն փոխադարձ կապերը, զարգացնեն ու կատարելագործեն ժողովրդատնտեսական պլանների կոորդինացումը, արտադրության մասնագիտացումն ու կոոպերացումը։ Հենց այդ նպատակով Մոսկվայում տեղի ունեցավ Տնտեսական փոխօգնության խորհրդի մասնակից երկրների ներկայացուցիչների խորհրդակցությունը, որը մի շարք նոր միջոցառումներ նշեց սոցիալիստական սիստեմի արտադրողական ուժերի հետագա զարգացման ուղղությամբ։

Այսպիսով, սովետական հայրենասիրությունը միահյուսվում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի հետ, ելնում է սոցիալիզմի բոլոր երկրների շահերից։ Այդ են վկայում հետևյալ փաստերը. 1956 թվականին Հունգարիայում կոնտրռևոլյուցիոն խռովության ժամանակ սովետական մարդիկ օգնեցին հունգար ժողովրդին իր թշնամիներին ջախջախելու և երկրում կարգ ու կանոն հաստատելու գործում։ Կամ 1961 թվականին Սովետական Միությունը և մյուս սոցիալիստական երկրները ողջունեցին և պաշտպանեցին Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի կառավարության ու աշխատավորության միջոցառումները արևմտագերմանական ռևանշիստների ագրեսիվ պլանները կանխելու համար։

Սոցիալիզմի երկրների տնտեսական, քաղաքական և կուլտուրական համագործակցության բարենպաստ պայմաններում ժողովուրդների աճող և զարգացող փոխադարձ նվիրվածությունը, անշահախնդիր բարեկամությունն ու եղբայրությունը սոցիալիզմի, կոմունիզմի մեծ գործի հաջող ավարտի վիթխարի երաշխիքն են։

***

Մարդկության առաջընթացը կոմունիզմի ուղիով նրա զարգացման օբյեկտիվ անհրաժեշտությունն է։ Եվ, ինչպես հորդառատ գետը ողողելով ծարաված դաշտերը ծաղկեցնում, կյանք է տալիս բույսերին, այնպես էլ մարքսիզմ-լենինիզմի, կոմունիզմի անմահ գաղափարները մարդկությանը բերում են Խաղաղություն, Աշխատանք, Ազատություն, Հավասարություն, Եղբայրություն և Երջանկություն։

Կոմունիզմի գործն ամենանվիրականն ու ամենաարդարացին է աշխարհում, և նրա իրականացնողները, որոնք առանց մնացորդի իրենց բոլոր խոհերն ու զգացմունքները, ողջ եռանդն ու կորովը նվիրաբերում են կոմունիստական հասարակարգի շինարարությանը, սոցիալիստական Հայրենիքին, սոցիալիզմի բոլոր երկրների առաջադիմությանը, իրավամբ կարժանանան պրոգրեսիվ մարդկության մեծագույն միլիոն իրականացնողների պատվավոր կոչմանը։

---

# ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ԲՆՈՒՅԹԸ

ՀՈՎՀ. ՂԱԶԱՐՅԱՆ

«...Ազգային ձևերը չեն Բարանում, այլ կերպարանափոխվում, կատարելագործվում և մերձենում են միմյանց, ազատվելով հնացած այն ամենից, ինչը հակասում է կյանքի նոր պայմաններին: Զարգանում է բոլոր սովետական ազգերի համար ընդհանուր ինտերնացիոնալ կուլտուրան: Յուրաքանչյուր ազգի կուլտուրական գանձարանը ավելի ու ավելի է հարստանում ինտերնացիոնալ բնույթի ստեղծագործություններով»: (ՍՄԿՊ ԾՐԱԳՐԻՑ)

Ակնհայտ ճշմարտություն է, որ ազգային խոշոր գրողները նաև մեծ հումանիստներ են եղել: Այդ նշանակում է, որ հումանիզմը օրգանապես ու սերտորեն միահյուսված է ազգայինին:

Հումանիզմը և ինտերնացիոնալիզմը ծագել ու զարգացել են հասարակական զարգացման տարբեր դարաշրջաններում, որպես սոցիալական պրոգրեսի գաղափարական ազդակներ և մարմնացել ազգային գրականության մեջ իբրև նրա որոշիչ առանցքը:

Մեր դարաշրջանում ազգային գրականությունն անջատել ինտերնացիոնալ գրականությունից, դրանք հակադրել իրար, սխալ հայեցակետ է և ոչ մի առնչություն չունի մարքսիստական էսթետիկայի հետ: Չընկալել ազգայրն գրականության ինտերնացիոնալ բնույթը, չտեսնել ազգային և ինտերնացիոնալ գրականության օրգանական կապը, այն, որ առանց ազգային գրականության չի կարող լինել ինտերնացիոնալ գրականություն, մտորել ազգային գրականության ճգնաժամի մասին, նշանակում է հեռանալ մատերիալիստական-դիալեկտիկ մտածողությունից, ընկնել խոր մոլորության մեջ:

Բուն ազգային գրականության մեջ է ցոլանում ինտերնացիոնալ ոգին. ազգային ինքնատիպ ոճի, վառ կերպարների, գույների ու երանգների միջոցով են դրսևորվում մարդկանց հումանիստական խոհերն ու զգացմունքները, նրանց ինտերնացիոնալ իդեալները:

Այս միանգամայն օրինաչափ և բնորոշ երևույթը փայլուն արտահայտություն է ստացել բոլոր ժողովուրդների, ինչպես և հայ ժողովրդի բանահյուսության ու դասական գրականության մեջ՝ հայ ժողովրդական հերոսական էպոսում, մեր բոլոր մեծ ստեղծագործողների՝ Սայաթ-Նովայի, Խաչատուր Աբովյանի, Հովհաննես Թումանյանի, Ալեքսանդր Շիրվանզադեի, Եղիշե Չարենցի, Հակոբ Հակոբյանի, Վահան Տերյանի և ուրիշների երկերում:



...Արև-աշխարք կա, արեգակ կա...
Էնքան լուս աստղեր կա...
...Ամեն մարդ հետ իր գործին...,—

Հնչում է հայկական էպոսի հերոսներից մեկի՝ Ծովինարի խանդաղատագին խոսքն իբրև բնությունից մարդուն պարգևած գեղեցիկ կյանքի ազատ վայելման սիմվոլ, իբրև մարդկային խաղաղ-ստեղծագործական աշխատանքի զովք ու պատգամ:

Ավեր բանից ի՞նչ կը դառնա,—

Ծովինարին արձագանքում է Սասունցի Դավիթը՝ ընդդեմ ավերի ու ավարի տենչամոլ բոլոր Մսրա Մելիքների, նրանց, ովքեր ժողովուրդների ազատ կյանքին, ազգերի ինտերնացիոնալ ազնիվ ձգտումներին հակադրում են իրենց բռնակալությունը:

Մեր էպոսի հերոսների մղած ազատագրական կռիվների ակնհայտ ինտերնացիոնալ ոգին իր բազմակողմանի ու համապարփակ արտացոլումն է ստանում Փոքր Մհերի կերպարում: «Կերտելով Մհերի վսեմ, մարգարեական, մեսիական կերպարը,— ասում է Ավետիք Իսահակյանը,— մեր վեպը ազգային շրջանակից ելնելով, ընդունում է համամարդկային որակ և դառնում է աշխարհհեղաշրջման և աշխարհավերակառուցման պատգամախոս»:

Համամարդկային հումանիստական այս բարձր իդեալներով հագեցած հայ ժողովրդական էպոսը դառնում է ներշնչարան, անցնում սերնդից-սերունդ, իբրև մի ջահ լուսավորում հայ ժողովրդի ազատագրական պայքարի ուղին:

Հայ ժողովրդի հերոսական էպոսում արտահայտված համամարդկային, ինտերնացիոնալ ոգին ներթափանցում է նաև ողջ դասական գրականության մեջ, դառնում խոհ ու զգացմունք, գաղափարական ուղղություն տվող մեծ ուժ:

Սիրել մարդուն ու վեր բարձրացնել, մաքրել ու մարդկայնացնել նրա հոգին՝ խանդավառել ու մղել դեպի գեղեցիկը, խաղաղ, ստեղծարար ու ազնիվ աշխատանքը, ոգեկոչել նրան խորունկ հայրենասիրությամբ՝ մերժելով ազգամոլությունը, ընչաքաղցությունը, եսապաշտությունն իբրև հակամարդկային ատելի գծեր— ահա մեր դասական գրականության բազմաթիվ երկերի բովանդակությունը:

Մեծ Սայաթ-Նովան՝ կովկասյան ժողովուրդների հարազատ ու սիրելի զավակը՝ «բռնված ու բռնկած սիրո հրդեհով... որպես աշխարհքի ու մարդու մեծ բարեկամ» հավասար ուժով՝ և՛ հայերեն, և՛ վրացերեն, և՛ ադրբեջաներեն հնչեցնում է իր այնքան քնքուշ ու բարի, մեղմ ու անվրդով ձայնը, թե՝

Աշխարըս քոնն ըլի, ի՞նչ պիտիս տանի՝
Աստված սիրե, հոգի սիրե, յար սիրե...
Աստված գիփունանցըն մին հոգի երիտ՝
Աղքատ սիրե, ղոնաղ սիրե, տար սիրե...,—

Սակայն շահագործման վրա հիմնված հասարակության օրոք մարդու ազնիվ ձգտումներն ու իղձերը անկատար էին մնում, հաճախ դառնում երազ և նրա կործանման պատճառ: Այդ բախտն են ունեցել Սայաթ-Նովան, Մ. Նալբանդյանը, Խ. Աբովյանը և ուրիշները:

Ահա թե ինչու նրանք հաճախ դառնացել ու հառաչել են, նրանց մարդ-

կային պայծառ խոհերն ու զգացմունքները հաճախ շաղախվել են արցունքով
ու արյունով։ «Այո՛, մենք շատ ենք հեռու էն լավ մարդուց ու լավ կյանքից,—
ասում է Թումանյանը,— որ երազում են լավագույն երազողները... Մի ժողո-
վուրդ, որ կլանված լինի իր գլխապահության հասարակ խնդրով, ինչպես մեր
ժողովուրդն է եղել կլանված ասիական բռնակալությունների տակ, «կյանքի,
գույքի ու պատվի» մշտական բռնաբարումի խնդրով, էլ նա ինչպե՞ս կարող է
մասնակից լինել մարդկության ընդհանուր հառաջադիմության գործին։ Մեր
կյանքը դժոխք են դարձրել նրանք, մեզ համար մարդուն անվայել սառը վի-
ճակ են ստեղծել ու սուտ խնդիրներ, մեր ուշքն ու միտքն էլ հետը ցած տարել։
Դառնացրել են մեր հոգին, նրա մեջ զարգացրել են վրեժի ու թշնամության
զգացմունքները, ստիպել են երգել «Արյան երգեր», և մեր լավագույն մարդիկն
էլ չեն կարողացել դուրս գան մեր իրականության անձուկ ու արյունոտ շրջա-
նակից...»։ Նրա՝ Թումանյանի և նրա ժողովրդի վեհ ձգտումները՝ հասնել հա-
մամարդկային մշակույթի, «տիեզերական մեծ կյանքի», մնում էին, սակայն,
անկատար։ «Ամեն հառաջադիմություն,— ասում է բանաստեղծը,— պայմա-
նավորված է ինքնուրույն քայլեր անելու, ունեցած լավագույն զգացմունքները
զարգացնելու ազատության պայմանով»։ Ահա այդ ազատությունն էր, որ չկար
և այն նվաճելու համար էր, որ մեր ստեղծագործողները նաև ծավալում էին
բուռն ու հարատև, դաժան ու աննահանջ պայքար։

Մարդն ու մարդկայինը — ահա հայ առաջադեմ գրականության լեյտմո-
տիվը։ Եվ որքան էլ ազգային, կրոնական տարբերությունները, կղերա-ռեակ-
ցիոն մտայնությունն ու ազգամոլությունը շարունակ խանգարել, թունավո-
րել ու տարաբաժանել են ազգերին, բայց չեն կարողացել խզել ու ոչնչացնել
հոգեկան, գաղափարական այն սերտ ու նվիրական կապերը, ինչը նրանց միջև
բնական պահանջ է ներկայացնում՝ ճշգրտված ու հարստացած դարերի տա-
ռապալից փորձով։ «Խանորդին,— ասում է Աբովյանը,— որ խանորդու սուրը
տեսնի ու դարդ չանի, արցունքը տեսնի ու ինքն էլ լաց չըլի, էն ողբալի ձենը
լսի ու ինքն էլ չմղկտա, նա էլ ի՞նչ ստեղծված կունենա, ի՞նչ հոգի, ի՞նչ հա-
վատ»։

Ժողովուրդների, ազգերի հոգեհարազատությունն ու փոխադարձ նվիրվա-
ծությունն ավելի ու ավելի մեծ ուժով են դրսևորվում առանձնապես նրանց
կյանքի ծանր ու շրջադարձային պահերին։

Առաջին համաշխարհային պատերազմի աղետի օրերին, երբ հայ ժողո-
վրդի բախտը դրված էր խաղաթղթի վրա, Գորկին ու Բրյուսովը՝ ընդդեմ
«վելիկո-ռուսական շովինիզմի խրախճանքի» (Լենին), ցարիզմի ազգահա-
լած քաղաքականության, ռուսերեն հրատարակեցին «Հայ գրականության»
ժողովածուն և «Հայ պոեզիայի» անթալոգիան։ Նրանք՝ Գորկին, Բրյուսովը,
նաև Վեսելովսկին, առաջինն էին, որ հայ գրականությունը դիտում էին «հա-
մաշխարհային ասպեկտով», դնում համամարդկային հողի վրա, ձգտելով ռուս
մեծ ժողովրդին, նրա միջոցով համաշխարհային ողջ հասարակությանը ներ-
կայացնել հայկական հանճարի հոգևոր գանձերը։

Այդ խիզախ նախաձեռնությունը Տերյանը համարում էր մեծագույն ա-
վանդ ռուս և հայ ժողովուրդների մերձեցման ճանապարհին, պարզ տեսնե-
լով, մի կողմից՝ Գորկու, Բրյուսովի Ռուսաստանը, որը ձեռք էր մեկնում աղե-
տի մատնված հայ ժողովրդին, բարոյապես ուժ ներշնչում նրան, մյուս կող-



մից՝ արակչեևների Ռուսաստանը՝ «արյունաներկ պալատներով» ու «անել
բանտով»։

Ահա այս՝ Գորկու և Բրյուսովի առաջադեմ Ռուսաստանի մասին է, որ
այնպես ջերմությամբ ու հիացմունքով է խոսում նաև մեծ Թումանյանը՝ գլ-
լուխը խոնարհելով Տոլստոյի, Գորկու Ռուսաստանի առջև։ Նա հիացմունքով
է խոսում նաև Բրյուսովի մասին, որը մեծապես գրվատում է հայ բանաս-
տեղծության համամարդկային գոհարները։

Պասկաներծ անելով ազգային հորջորջվող ինտելիգենցիային, որն ապ-
րում էր մեկուսացած կյանքով, տառապում ազգային սահմանափակությամբ,
որոճում ինչ-որ միջնադարյան, կղերական-ազգամոլ գաղափարներ, պայքա-
րելով գրական ռեակցիոն ուժերի, սեմինարիստ ազգայինների դեմ, Տերյանը
պայքարում էր ժողովրդական համամարդկային արվեստի համար։

Հայ գրականության ու արվեստի զարգացումը, սերտորեն կապելով ռուս
և համաշխարհային առաջադեմ գրականության ու արվեստի զարգացման
հետ, նա հակադրվում էր ապազգայնացմանը, միայն ազգային լավագույն
գործերի մեջ տեսնում համազգայինը, եռանդուն պայքար մղում նոր գրող-
ների այն էապես սխալ ըմբռնման ու մոլորության դեմ, որ իբր իրենց ստեղ-
ծագործությունը կդառնա եվրոպական, կլինի մի «Վիկտորիա», եթե հայկա-
կան անունները փոխարինեն եվրոպականով՝ Շողակաթը Լյուսիով, Օլգայով։
Արվեստի ուժը ոչ թե անունների մեջ է ու տարազում, այլ ճշմարտացի ար-
տացոլման, ամենից առաջ մարդկային հատկանիշների մեջ։ Տերյանը տեղա-
կանը, ազգայինը, ոչ թե հակադրում է միջազգայինին, այլ ընդհակառակը՝ ազ-
գայինի մեջ տեսնում է միջազգային, ինտերնացիոնալ ոգին, միայն ազգայինի
միջոցով հաղորդակից դառնում համամարդկայինին։ «Որքան և տեղական
լինի,— ասում է նա,— այնուամենայնիվ Շիրվանզադեի Շպպանիկն այդ
զարմանալի անունով իսկ ավելի հասկանալի է ամեն մի մարդու, որովհետև
նա կենդանի է, գունագեղ, ճշմարիտ, գեղեցիկ, իսկ այդ Լյուսիներն ու Օլգա-
ները՝ անհասկանալի, որովհետև նրանք ամենից առաջ մարդիկ չեն... նորերը
կամենալով եվրոպացի լինել, խրտվիլակներ են ստեղծագործում մարդկանց
տեղ։ Եվ որքան համամարդկային է հեղինակի գտած պատկերը, չնայած իր
ազգային տարազին ու բարբառին, այնքան նա սիմվոլիստական է, այնքան
նա անմահ է... Պեպոն մարդ է, կենդանի և հավիտենական— ահա թե ինչու
նա սիմվոլ է դառնում, նույնպես և Շպպանիկը...»։ Հակադրվելով արվեստի և՛
եվրոպական ձևին, և՛ ազգային-նեղ կոլորիտին, Տերյանը պահանջում էր ազ-
գային կյանքի վրա կառուցած, բայց ազգային պատնեշները ճեղքող, իր գա-
ղափարական բովանդակությամբ իրապես մեծ ու խոր, ձևով կատարյալ ար-
վեստ, իրապես համամարդկային ու հավիտենական կենդանի պատկեր։

Պայքարելով տեղայնության, ամեն սահմանափակության ու հետամնա-
ցության դեմ, ահարոնյանական շախե-վախեականության, անարյուն, սեն-
տիմենտալ «արվեստի» դեմ, Տերյանը բարձր էր գնահատում Սունդուկյանի,
Թումանյանի, Իսահակյանի, Շիրվանզադեի ստեղծագործությունները, որոնք
հայ գրականության մեջ պատվաստում ու արմատավորում էին համաշխար-
հային, առանձնապես ռուս մեծ գրականության լավագույն տրադիցիաները։

Հակառակ դաշնակցության ազգակործան քաղաքականության, Տերյանը
ռուսական օրիենտացիան համարում է հայ ժողովրդի վերածնության ճշմա-
րիտ ուղին։ «Մեր հայրենիքը Ռուսիան է,— 1914 թվականին ազդարարում է

նա,— և նրա ծոցումն է, որ կամենում ենք առաջ տանել և պահպանել մեր կուլտուրան»՝ հայ ժողովրդի բախտը բացառապես կապելով ռուս ժողովրդի բախտի հետ, նրա կուլտուրայի, գրականության ու արվեստի ծաղկումը տեսնելով ռուս մեծ ժողովրդի կուլտուրայի, գրականության ու արվեստի ծաղկման մեջ։ «...Ռուսաստանի ապագան ինձ համար աներկբայելի է,— շարունակում է նա։— Եվ կապելով իմ լավագույն հույսերը առաջավոր ռուս դեմոկրատիայի հույսերին և իմ բաղձանքները նրա բաղձանքների հետ, ես չեմ տարակուսում, որ չեմ հիասթափվելու»։

Նույն ուղին էր մատնանշում նաև հայ ազգային հանճարեղ կոմպոզիտոր Կոմիտասը, հանգելով ընդհուպ ռուսական ռևոլյուցիայի ընկալման մեծ գաղափարին, գտնելով, որ հայերը կարող են ազատագրվել միայն Ռուսաստանի օգնությամբ՝ խոր ատելությամբ լցված դաշնակների ավանտյուրիստական քաղաքականության դեմ՝ «էլ բավ է,— բուռն զայրույթով ասում է նա,— որքան քանդեցին մեր ներքին և արտաքին կյանքը՝ անմիտ հպարտությամբ ու փուչ ուժերով»։ Հայ ժողովրդին զգուշացնելով «Եվրոպայի զանազան խոստումնալից խաբկանքներեն», Ա. Չոբանյանին ուղղած իր նամակներից մեկում, 1912 թվականի դեկտեմբերի 12-ին նա առաջադրում է հայ ժողովրդի փրկության «Գործնական ճամփա». «Ըստ իս,— գրում է նա, շարադրելով իր ծրագիրը,— առաջին քայլն է բոլոր հայությունն ամփոփել ռուսի իշխանության տակ, երկրորդ քայլն է տնտեսապես ու բարոյապես, զուտ ազգային, առանց օտարին ու մեզ անմարս գաղափարներով առաջնորդվելու՝ կարգանալ. երրորդ քայլն արդեն ինքը ռուս հեղափոխությունն է, որ պիտի անե... Իսկ մենք օգտվելու ենք այդ քայլեն...»։

Մարդու, մարդկայինի պրոբլեմը գրականության մեջ, ազգային գրականության ինտերնացիոնալ ոգին ստանում է առավել շոշափելի ու կոնկրետ բովանդակություն, զգացողությունից ու հայեցողությունից վերաճում աշխարհայացքի, երբ Ռուսաստանի պատմության մեջ 1895 թվականից սկսվում է նոր էտապ, Լենինի բնորոշմամբ՝ Պրոլետարական էտապը, երբ ռուսական առաջին ռևոլյուցիայի կրակոցների տակ, ինչպես ասում է Լենինը՝ «Նիրհող Ռուսաստանը դառնում է ռևոլյուցիոն ժողովրդի Ռուսաստան»՝ հասարակական-քաղաքական հզոր գործոններ, որոնք և գեղարվեստական գրականության մեջ սկզբնավորում են նոր ուղղություն՝ սոցիալիստական ռեալիզմը։

Այնտեղ, որտեղ հասու չէր քննադատական ռեալիզմը, օգնության հասավ սոցիալիստական ռեալիզմը՝ իբրև բանվոր դասակարգի ռևոլյուցիոն պայքարը, պրոլետարական ինտերնացիոնալիզմն արտացոլող հրաշագործ մեթոդ։ Այնտեղ, որտեղ անզոր էին թափանցել Բալզակը, Տոլստոյը, Թումանյանն իրենց հզոր հանճարով, թափանցեց Գորկին իր ռևոլյուցիոն աշխարհայեցողությամբ։ Լեգիտիմիստ Բալզակը, չարին չհակառակվող Տոլստոյը, մեծ հումանիստ Թումանյանը՝ քննադատական ռեալիզմի այդ խոշորագույն ներկայացուցիչները, ինարկե, չտեսան օրըստօրե հզորացող բանվոր դասակարգին. աշխարհայացքի սահմանափակությունը, հասարակական շարժիչ ուժերի անտեսումը նրանց խանգարում էին տեսնել ազատության լուսավոր ուղիները։ Քննադատական ռեալիզմի հիմնական թուլությունը հենց այդ էր՝ բանվոր դասակարգին իբրև բուրժուական կարգերի գերեզմանափորի, իբրև կոմունիստական հասարակարգի արարչի անտեսումը։

Ռուսաստանում ծավալվող բանվոր դասակարգի ազատագրական ցույցերն



ու գործադուլները, պատմության մեջ երբևէ չեղած ռևոլյուցիոն վիթխարի շարժումները սնեցին, ուժ տվին Մաքսիմ Գորկուն, նրան մղեցին Մրրկահավի ռոմանտիկ և ազատության դրոշը կրող Պավել Վլասովի իրական հզոր ու կենդանի կերպարների ստեղծման, նրան դարձրին սոցիալիստական ռեալիզմի նախահայրը, պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշակակիրը գեղարվեստական գրականության մեջ։

Ռուսական առաջին ռևոլյուցիան, Գորկու գեղարվեստական խոսքը մեծապես ակտիվացնում են ճնշված բազմազգ ժողովուրդներին, նրանց ստեղծագործական ուժերը բարձրացնում մի նոր աստիճանի, բախտորոշ դեր խաղում նաև հայ հասարակական-քաղաքական կյանքում, կենսականորեն ազդում հայ գեղարվեստական գրականության զարգացման ընթացքի վրա, գրականությունը շիկացնում ռևոլյուցիոն պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով։

Հակոբ Հակոբյանը, Շուշանիկ Կուրղինյանը առաջիններն էին, որ նոր երակ՝ պրոլետարական-ռևոլյուցիոն, պրոլետարական ինտերնացիոնալիզմի երակը բաց արին հայ բազմադարյան գրականության մեջ՝ մարդու ու մարդկայինի ազատագրման բախտը, ազգերի, ինչպես և հայ ազգի վերածնության բախտը կապելով միայն բանվոր դասակարգի ռևոլյուցիոն պայքարի հետ։

Այսպես ուրեմն, Հոկտեմբերյան ռևոլյուցիայի բուն նախօրերին մեր ազգային գրականության գաղափարական համամարդկային, ինտերնացիոնալ բովանդակությունը ռևոլյուցիայի մրրիկներում զարգացավ ու խորացավ, ստացավ նոր որակ, դարձավ մարտնչող, դրսևորվեց իբրև պրոլետարական ինտերնացիոնալիզմ։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան կտրատելով ազգային ճնշման շղթաները, խորտակելով ու վերացնելով ազգային թշնամությունը, մաքրելով հողը ժողովուրդների համագործակցության համար, տեխնիկայի, կուլտուրայի բոլոր նվաճումները դարձնելով համաժողովրդական սեփականություն, մարդկային հանճարը ազատելով բռնությունից ու շահագործումից, մեր հողագնդի բոլոր մասերում պայծառ հորիզոններ բաց արեց ճնշված ազգերի ազատագրման, ուրույն ու անկաշկանդ բարգավաճման համար։

Ահա թե ինչու մեր առաջավոր գրողները «ամբողջ սրտով, ամբողջ գիտակցությամբ» ողջունեցին Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, նրա մեջ տեսնելով ողջ մարդկության, ինչպես և հայ ժողովրդի փրկությունը, մարդու ազատությունը, ազգային հարցի արմատական լուծումը։ Եթե Թումանյանը համոզված ասում է, որ Հոկտեմբերը «նոր դարաշրջան է բաց անում մարդկության պատմության մեջ», ապա Տերյանը խինդով բացականչում է.

> Նոր օր է բացվում ազգերի համար...
> Զարթե՛ք, վե՛ր ելեք, կենդանի ուժեր։

Իսկ Շիրվանզադեն իր ցնծագին ուրախությունն է հայտնում Գորկուն և խնդրում հայ ժողովրդին փրկել բնաջնջումից. «Ես հավատում եմ,— ասում է նա,— որ Սովետական կառավարությունը կհաջողվի խաղաղություն հաստատել անմտորեն իրար հետ թշնամացած ծայրամասերի ժողովուրդների միջև և ենթարկել նրանց մի ընդհանուր օրենքի՝ սիրո, եղբայրության և արդարության օրենքին», ընդգծելով, որ «մենք խաղաղ ժողովուրդ ենք և երբեք չենք ունեցել և հիմա էլ չունենք ոչ մի ագրեսիվ ձգտում»։

ժողովուրդները, ազգերը, հիրավի, չեն ունեցել և չունեն «ոչ մի ագրեսիվ

ձգտում». ագրեսիան միշտ էլ կազմակերպվել ու կազմակերպվում է ղեկավար շրջանների ու ղեկավար մարդկանց կողմից։ «Ինչ կռիվ ու կոտորած ուզում է լինի,— ասում է Թումանյանը,— հնագույն բռնապետներից մինչև դեմոկրատիկ հասարակապետությունները՝ միշտ սարքված են երկրները կառավարողների և ղեկավար շրջանների ու ղեկավար մարդկանց ձեռքով։ Եվ միշտ էդ արվել է հասարակ ժողովրդի, աշխատավոր մարդու կամքի և ցանկության հակառակ»։

Ընդդեմ անդրկովկասյան հակառևոլյուցիոն, ազգամոլ պարտիաների՝ դաշնակների, մենշևիկների, մուսավաթականների, հանուն ազգերի ազատ կյանքի, Թումանյանը բազմալեզու, բազմակրոն ժողովուրդներին համախմբման, համագործակցության խոսք էր ասում, նրանց մղում դեպի հանուր կյանքը՝ իրենց ազգային առանձնահատկություններով ու կենսունակ տրադիցիաներով։

Հին օրերի վերջալուսին,
Արշալուսին նոր կյանքի
Երգենք սրտանց ու միասին
Երգը հանուր բերկրանքի։

... Եկե՛նք՝ տեսով ու ճանաչով,
Ընկեր, ախպեր, մեր ու քուր՝
Մեր ֆյամանչով, ուրախ կանչով
Դնանք դեպ կյանքն ընդհանուր։

1917—1920 թվականներից սկսում է արմատապես փոխվել հայրենիք հասկացությունը՝ ստանալով բոլորովին նոր, սոցիալիստական բովանդակություն։ Տերյանն իրավամբ Սոցիալիստական հայրենիքը համարում է մերը, և, մութ աշխարհում վառվող ջահի պատկերով արտահայտում նրա ազատագրական կենսական մեծ ուժը, համաշխարհային, համամարդկային միսիան՝ ի հակադրություն գիշատիչ ինտերվենտների խելահեղ արշավանքների։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան մեր գրողներին հանեց նախկին անձուկ շրջանակներից, լցրեց նոր կենսազգացողությամբ, զինեց նոր հայացքներով, մղեց դեպի ստեղծագործական նոր ու լայն հորիզոններ։

Եթե հայ առաջավոր գրողներ Թումանյանը, Շիրվանզադեն, Իսահակյանը անվերապահորեն գալիս են դեպի ռևոլյուցիան, ապա Հակոբյանը, Տերյանը, Չարենցը դառնում են ռևոլյուցիայի անձնվեր մարտիկներ ու ականավոր գործիչներ, սոցիալիստական հայրենիքի խանդավառ երգիչներ՝ հայ գրականությունն իր զարգացման ճանապարհին մի քայլ առաջ մղում գաղափարական բովանդակության խորությամբ ու բարձր արվեստով՝ հագեցնելով այն ռևոլյուցիոն աշխարհայեցողությամբ ու պրոլետարական ինտերնացիոնալիզմով։

«Աշխարհը մի նոր երգով է հղի»,— ասում է Չարենցը և նրան էլ վիճակվում է դառնալ այդ նոր ու հզոր երգի ցայտուն արտահայտիչը, իր դառնակսկիծ, բայց վսեմ ու հեսանող հայրենասիրությունը հագեցնելով անհուն լավատեսությամբ ու խոր ինտերնացիոնալ ոգով, արտահայտելով ռևոլյուցիոն մասսաների վիթխարի ուժը, հերոսականությունը, «բազմամիլիոն, բյուր ընկերների խինդը այսօրվա ու թռիչքը մեծ»։

Ռադիո-կայան է իմ հոգին հիմա
Ամբողջ աշխարհի ու մարդկանց հանդեպ...,—

ասում է բանաստեղծը մտահոգված ո՛չ միայն հայ, այլև «ամբողջ աշխարհի ու մարդկանց» ճակատագրով, հավատալով մարդկանց երջանիկ գալիքին, համերաշխ ու համատեղ, ինտերնացիոնալ կյանքին։

Ես ասում եմ՝ աշխարհը կդառնա
Մի հանուր խնդության փողոց,



Ու Չինկ-ֆուն Պեկինում կխմե
Քո կենա՛ցը, Բաքթո՛ւղ, Պողո՛ս...

***

Ամայացած, բայց հարազատ հողի վրա, դաշնակներից ամոթալի ժառանգություն ստացած, բայց ազատագրված ու պետականություն նվաճած Սովետական Հայաստանում հայ ժողովուրդը պետք է կառուցեր իր նոր կյանքը, նոր տնտեսությունը, զարգացներ իր ազգային հանճարը և նոր խոսք ասեր աշխարհին։

Հայ ժողովրդի կյանքի վերածնությունը դառնում է ռեալ փաստ։ Սոցիալիստական Հայաստանում նոր կյանք է առնում «ալեզարդ հնությունը», նոր ձևով խոսում անցյալի կուլտուրական ժառանգությունը՝ հայ բազմադարյան կուլտուրայի, գրականության ու արվեստի գանձերը հոկտեմբերյան ռևոլյուցիայի միջոցով փոխանցվում են նոր սերնդին, սովետական մարդկանց։ «Եվ բազմադարյան կուլտուրան,— ասվում է «Պրավդա»-ի առաջնորդողներից մեկում,— բաց է անում իր բոլոր գանձերը՝ գրականության, արվեստի հարստացման համար, ամբողջ կյանքը ազգային գույների, կերպարների, հնչյունների շողշողուն խաղով հագեցնելու համար»։

Ահա ինչու Ալ. Շիրվանզադեն Հայաստանի ազատագրման օրը՝ 1920 թվականի նոյեմբերի 29-ը, համարում է «վեհապանծ վայրկյան», «Հայաստանը լենինյան հանճարով վերածնված»։ «Ես,— գրում է նա,— խոնարհում եմ իմ ալեհեր գլուխը լենինյան հանճարեղ ուսմունքի առջև, որն սպառիչ կերպով լուծել է ազգային հարցը, հնարավորություն ստեղծելով նաև մեր ազգային կուլտուրայի զարգացման համար»։

Սակայն, ինչպես պետք էր սպասել, անտագոնիստական դասակարգերի առկայության պայմաններում, 20-ական թվականներին ծավալվում է սուր պայքար հնի և նորի միջև՝ ազգային նոր կուլտուրայի, գրականության ու արվեստի սկզբնավորման ու զարգացման ճանապարհին։

Ռևոլյուցիոն ականավոր գրողներ Հակոբյանը, Չարենցը, նրանց հետ միասին Վշտունին, Զարյանը, Մահարին և ուրիշներ դեռևս հստակ պատկերացում չունեին ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական գրականության զարգացման ուղիների մասին։ Նրանց հրապարակային ելույթներում, գրական աշխատանքներում և ստեղծագործությունների մեջ շատ անգամ շփոթվում էին ազգայինն ու ազգայնականությունը (նացիոնալիզմը), հնի, վնասակար տրադիցիաներից հրաժարումն ու դասական հարուստ ժառանգության օգտակարությունը։

Տարված սոցիալիստական նոր կյանքը հաստատելու, հինը մերժելու, նեպի շրջանում աշխուժացող նոր բուրժուազիայի դեմ պայքար ծավալելու ազնիվ խանդով, իրենց ստեղծագործական որոնումների ճանապարհին նրանք հաճախ մոլորվում էին. բուրժուական աշխարհի դեմ տարած հաղթանակը նրանց տրամադրում էր բացասելու նաև այդ աշխարհում ստեղծված կուլտուրական արժանիքները՝ բռնելով պրոլետկուլտականության ուղին։

Որքան էլ բացահայտ ու խորն էին նրանց մոլորությունները, որոշողը սակայն, նոր կյանքն ավետող գարնանաշունչ խոսքն էր, պրոլետարական ինտերնացիոնալիզմի հաղթանակը, որը և հետզհետե թափանցում էր գրականության մեջ, դառնում տիրապետող ուժ. բնորոշը նիհիլիստական հոսանքին հակընթաց

հզորացող, ազգային գրականության այն կենսունակ շարժումն էր՝ ի դեմս հենց Չարենցի, Բակունցի, Մյասնիկյանի և շատ ուրիշների, որն արդեն դառնում էր ուղղություն տվող անպարտելի ուժ։

Ի հակադրություն «հայրենիք-տիեզերքի» անհող, «շինծու ու անարյուն» գրականության Ալ. Մյասնիկյանը առաջադրում էր ազգային գրականության զարգացման սկզբունքը՝ «Հայ գրականության պրոլետարականությունը կամ պրոլետարական գրականության հայկականությունը», ստեղծագործողի ուշադրությունը բևեռելով հայկական բնաշխարհի, հայ ժողովրդի կյանքի վրա. «Երգել հայավարի»,— ազդարարում էր նա՝ հարազատ ժողովրդի, ազգային կյանքի պատկերման խորության ու ճշմարտացիության մեջ տեսնելով համամարդկայինը, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգին։

Այս սկզբունքների գեղարվեստական հանճարեղ կատարմամբ է Չարենցը հասնում համաժողովրդական ճանաչման, և իբրև ազգային, խորապես ինտերնացիոնալ բանաստեղծ՝ համամարդկային իր խոհերով ու զգացմունքներով վեր բարձրանում, ճեղքում ազգային պատնեշները, դուրս գալիս համամիութենական, համաշխարհային ասպարեզ։

Հաղթանակում է կյանքի առաջընթաց տենդենցը։ Գրականության, գրողի հանդեպ ցուցաբերած Կոմունիստական պարտիայի զգայուն վերաբերմունքը ցայտուն արտահայտություն է ստանում գրականության մասին ունեցած նրա 1925 թ. որոշման մեջ, որը հսկայական ազդեցություն է թողնում սոցիալիստական գրականության զարգացման ողջ ընթացքի վրա, մեծապես նպաստում «իսկական միջազգային ոգով» ազգային գրականությունների ձևավորմանը։

Պատմական այդ որոշման լույսի, դրան նախորդող արտասահմանյան տպավորությունների (1924—1925), «մեր և հին աշխարհի հսկայական կոնտրաստի» ազդեցության տակ Չարենցն ամենից շատ ու ամենից խոր է զգում մեր գրականության մեջ իշխող լեֆիստական մոլորությունները՝ ամբողջովին մտահոգված ազգային գրականության ձևի ու բովանդակության հարցերով։

Դատապարտելով իր իսկ նիհիլիստական հայացքները, բանաստեղծը պահանջում էր «հայրենի եզերքում» ստեղծել «երկրի շաֆրանով» հագեցած ու «երկրի ցողով» պատած գործեր, ողջ մարդկության վրա օդի ու լույսի պես իր ազդեցությունը տարածող «ազգային արվեստ», «մի աչքանի, մի ոտանի», բետոնե մարդու փոխարեն մեծ դարաշրջանի մեծ մարդու կենդանի հույզերն ու բազմաշառաչ կրքերն արտահայտող համամարդկային արվեստ։

Խոր բովանդակության նկատմամբ տածած ձգտումը Չարենցին մղում է ազգային ձևի՝ իբրև խոր բովանդակությունը մարմնավորող արտահայտչական միակ կոնկրետ միջոցի, ընկալմանը։

Տոգորված ազգային արժանապատվության բարձր գիտակցությամբ, Չարենցը խորապես զգում էր միմյանցից սովորելու կենսական անհրաժեշտությունը, ընդգծելով ազգային գրականությունների առանձնահատկությունների ու դրանց խիստ կարևորությունը. «Որքան էլ փոքր լինի ժողովուրդը և գրականությունը,— ասում է նա,— վերջինս չի կարող չունենալ իր ինքնատիպ, եզակի և անկրկնելի նրբերանգը, որպիսին հատուկ է միմիայն տվյալ գրականությանը և նրա լավագույն ներկայացուցիչներին» (ընդգծումն իմն է— Հ. Դ.)։

Նա պահանջում էր «մարդկության կուլտուրայի բարձունքները» նվաճող, «ինտելիգենտական բարդություններից» զերծ, պարզ ու խորունկ, ինչպես ինքն էր ասում՝ «սինթետիկ արվեստ», դեռևս անբավական իր և սովետական մյուս



վարպետների գործերից՝ «...Մեր բարձր արվեստը,— ասում է նա,— ինչ-որ մի կարևոր կետում չի համապատասխանում մարդկության ամենաառաջավոր դասակարգի մասսայական հոգեբանությանը»՝ ամբողջությամբ բացասելով մերկ իդեոլոգիայի դրոշի տակ ծվարած վայ-հեղափոխականների գռեհկաբանությունն ու «անհուն տգիտությունը», հակադրվելով անսեռ գրականությանը՝ «Միջազգային կուլտուրան ոչ այլ ինչ է,— պնդում է նա,— եթե ոչ պրոլետարիատի իդեոլոգիան արտահայտող ազգային կուլտուրա»։

Բայց այն ժամանակ ռապպական գրական օրենսդիրները «էպիկական լուսաբացը» համարեցին հեռացում պրոլետարիատից, նահանջ դեպի ինդիվիդուալիզմը, Չարենցի ու նրա համախոհների առողջ, կենսունակ հայացքները՝ «լեգենդա ազգային ու միջազգային ձևի» մասին։

Այսպես էր բանը անցյալում՝ անհատի պաշտամունքի ծանր տարիներին։ Եվ այդ ամենևին զարմանալի չէր այն ժամանակ։ Այդ ժամանակներն անցել են անվերադարձ։ Կոմունիստական պարտիան ամբողջ խորությամբ բացահայտել է անհատի պաշտամունքի հետևանքով սովետական ժողովրդին հասած մեծ ողբերգության պատճառներն ու տխուր հետևանքները։

Սակայն, դժբախտաբար, այսօր էլ կան մարդիկ, որոնք խուճապահար ձգտում են ազգային կուլտուրաների, գրականությունների զարգացման բնական ընթացքը շեղել, հետևապես ազգերի միաձուլման ինտերնացիոնալ կուլտուրայի, միասնական լեզվի ստեղծման պատմական մեծ պրոցեսը կասեցնել արհեստական, կարելի է ասել բռնի միջամտությամբ՝ մղելով ռապպական նիհիլիզմի անձուկ ոլորտները, ինտերնացիոնալ կուլտուրայի, գրականության ձևավորումը տանելով «մակահավասարեցման ուղիով, երաժշտության, լեզվի, ազգային տրադիցիաների, ազգային առանձնահատկությունների, ազգային կուլտուրայի ոչնչանալու ուղիով»,— ինչպես Վլադիմիր Սոլուխինը իրավացիորեն նկատում է Ա. Աղաևի հոդվածների մասին։

Այժմ, երբ իսպառ վերացել են դասակարգային ներհակությունները մեր երկրում, երբ ազգային ճնշումների ու արյունահեղ ընդհարումների հետքն անգամ չկա, ջնջվել ու ջնջվում են ազգային պարփակվածության շրջանակները, այդ միաժամանակ հո չի՞ նշանակում, թե ստեղծագործողի ոտքի տակից փլվել է ազգային հողը։ Ամենևին։ Մեր երկրում, դրանով իսկ, լայն ասպարեզ է բացվել ազգերի շփման ու մերձեցման համար, անսահման հեռանկարներ՝ ազգային կուլտուրաների, ազգային գրականությունների պոտենցիալ անսպառ հնարավորությունների իրականացման համար, դրանով էլ ինտերնացիոնալ բովանդակության անընդհատ խորացման ու հարստացման համար։

Գրականության, արվեստի հարյուրամյակների ողջ նախընթաց պատմությունը ցույց է տալիս, որ ոչ թե ընդհանուրից պետք է գնալ դեպի ընդհանուրը, ինչպես բխում է Աղաևի թեզից, այլ կոնկրետից՝ դեպի ընդհանուրը, մարդուց՝ համամարդկայինը, ազգայինից՝ միջազգայինը։

Այս է արվեստի զարգացման իսկական ուղին, միասնական ինտերնացիոնալ կուլտուրայի, գրականության ստեղծման բնական ուղին։ «Բանվորական շարժման մեջ իսկական ազգային գաղափարները... միաժամանակ հանդիսանում են նաև իսկական ինտերնացիոնալ գաղափարներ»,— ասում է Էնգելսը՝ մերժելով ազգային շահերն ու գաղափարները ինտերնացիոնալ շահերին ու գաղափարներին հակադրելու ամեն փորձ։ Իր մի շարք հոդվածներում («Վելիկոռուսների ազգային հպարտության մասին», «Սոցիալիստական Ռևոլյու-

ցիան և ազգային ինքնորոշման իրավունքը (Թեզիսներ)», «Ինքնորոշման վերաբերյալ դիսկուսիայի արդյունքները») Լենինը նույնպես ցույց է տալիս, որ հայրենասիրությունը և ինտերնացիոնալիզմը չեն հակասում իրար, որ խսկական ազգային շահերը համընկնում են ինտերնացիոնալ շահերին։

Ազգային կուլտուրայի, գրականության ու լեզվի զարգացումն ու ծաղկումը միաժամանակ անպայման նշանակում է ինտերնացիոնալ կուլտուրայի ու լեզվի հարստացում, դրանց ոչ թե հեռացում ու հակադրում, ինչպես տեղի էր ունենում անցյալում, այլ անընդհատ մերձեցում, միահյուսում ու ներթափանցում և, ի վերջո, զարգացման ամենաբարձր աստիճանում՝ միաձուլում։

Եթե գեղարվեստական խոսքը մտածողություն է կոնկրետ պատկերներով, իսկ կոնկրետ պատկերների զինանոցը ազգային հողն է, ապա և հասկանալի է, որ կտրվելով ազգային հողից՝ ստեղծագործողը կտրվում է և իրականությունից, ապակողմնորոշվում՝ թեածելով վերացականության ու տիեզերքի մշուշոտ ոլորտները, ինչպես այդ պատահեց սովետական գրականության հետ 20-ական թվականների սկզբին։ Մինչդեռ ամրանալով ազգային հողի վրա, ստեղծագործողը, ինչպես ասում է Թումանյանը՝ կարող է մինչև երկինք հասնել։ Բոլոր մեծ գրողները՝ Շեքսպիրն ու Գյոթեն, Պուշկինն ու Թումանյանը, համամարդկային իրենց գաղափարներն ու զգացմունքներն արտահայտել են միայն ազգային արվեստի հզոր ուժով։

Պայքարելով ազգային պարփակվածության ու մեկուսացման, ազգային սահմանափակության ու տրադիցիաների քարացածության դեմ, ազգային ատելության ամեն մի դրսևորման դեմ, պետք է, սակայն, կարողանալ ինտերնացիոնալ սկզբունքայնությունը ճշտորեն և օրգանապես զուգորդել ազգային առանձնահատկությունների հետ, խորապես գիտակցելով դրա կենսական մեծ նշանակությունը և վերափոխիչ դերը։

Այն ամենը, ինչ մարդուն տրվել է հարյուրամյակների ընթացքում, սերունդների անդուլ ջանքերով, դարձել սրբազան տրադիցիա, դրանից չես կարող ազատվել միանգամից, կամայականորեն կամ բարի ցանկություններով։ Ազգային որոշ տրադիցիաներից մարդուն ազատագրելը նույնպես կպահանջի երկար տարիներ, անդուլ ջանքեր, կպահանջվի կոմունիզմի համաշխարհային հաղթանակ, այնպիսի միանման ու արգասավոր կենսապայմաններ, երբ հողագնդի վրա բացառվեն սոցիալական ու քաղաքական ամեն մի ճնշում, քաղցածություն, երբ «առանձին մարդու մասնավոր շահը համընկնի համամարդկայինին» (Մարքս), որպեսզի դրանք անմիջականորեն նպաստեին համամարդկային, միասնական գծերի, ինտերնացիոնալ հայացքների ու հոգեբանության ձևավորման պրոցեսին, համամարդկային, միասնական կուլտուրայի ու լեզվի առաջացման մեծ պրոցեսին։

Իր ««Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ» գրքում խոսելով II ինտերնացիոնալի պարտության պատճառների և կոմունիստների հաղթանակների մասին, մեծ Լենինը բոլոր երկրների բոլոր կոմունիստներին խիստ նախազգուշացնում էր «Համաշխարհային Սովետական ռեսպուբլիկաների համար մղած պայքարում» ազգային հարցում դրսևորվող տակտիկական կանոնների «շաբլոնացման, մեխանիկական հավասարեցման, նույնացման» անհեթ վտանգից։ «Քանի դեռ ժողովուրդների ու երկրների միջև գոյություն ունեն ազգային ու պետական տարբերություններ,— գրում է նա 1920 թվականին,— իսկ այդ տարբերությունները պրոլետարիատի դիկտատուրան նույնիսկ համաշխարհային մասշտաբով իրագործվելուց հետո էլ կպահպանվեն շատ ու շատ երկար ժամանակ— բոլոր երկրների կոմունիստական բանվորական շարժման ինտերնացիոնալ տակտիկայի միասնությունը պահանջում է ո՛չ թե բազմազանության վերացում, ո՛չ թե ազգային տարբերությունների ոչնչացում [1] (դա անմիտ ցնորք է ներկա մոմենտի համար), այլ կոմունիզմի հիմնական սկզբունքների (Սովետական իշխանություն և պրոլետարիատի դիկտատուրա) այնպիսի կիրառում, որը մասնավորություններում ճիշտ ձևափոխեր այդ սկզբունքները, դրանք ճիշտ հարմարեցներ, կիրառեր ազգային ու ազգային-պետական տարբերությունների նկատմամբ։ Յուրաքանչյուր երկրին կոնկրետ մոտեցում ունենալով, հետազոտել, ուսումնասիրել, գտնել, կռահել, ըմբռնել ազգային-առանձնահատուկը, ազգային-սպեցիֆիկը՝ միասնական (ընդգծումները Լենինինն են) ինտերնացիոնալ խնդիրը լուծելու համար, բանվորական շարժման ներսում օպորտունիզմն ու ձախ դոկտրինյորությունը հաղթահարելու համար, բուրժուազիային տապալելու համար, Սովետական ռեսպուբլիկա և պրոլետարական դիկտատուրա հաստատելու համար— ահա թե որն է բոլոր առաջավոր (և ոչ միայն առաջավոր) երկրների ապրած պատմական մոմենտի գլխավոր խնդիրը...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 97—98)։

Ո՛չ թե բազմազանության վերացում, ո՛չ թե ազգային տարբերությունների ոչնչացում, այլ դրանց հարստացում, ազգային առանձնահատկությունների խիստ հաշվառում, մինչև որ իրենց ծաղկման բարձրակետում երկար, շատ ու շատ տարիներից հետո կմիահյուսվեն, ապա կմիաձուլվեն՝ ի հակադրություն արհեստական կամ բռնի միջամտության։

Մարդկանց՝ նույնն է ժողովուրդների, ազգերի, բնորոշ կողմը փոխադարձ սիրո, մերձեցման ու բարեկամության, փոխըմբռնման ու փոխօգնության բնական ու անկասելի ձգտումն է, դեպի գեղեցիկը, խաղաղ-ստեղծագործ աշխատանքն ունեցած վսեմ զգացմունքը։

Ստեղծելով ազգային կյանքի խոր ու ճշմարտացի պատկերը, կերտելով ազգային հերոսին իբրև մեր դարաշրջանի՝ ամենաառաջավոր, համամարդկային իդեալների անմիջական կրող, իբրև կոմունիստական հասարակարգի աբարիչ, գրողն իրապես բացահայտում է սոցիալիստական հասարակարգի ներքին էությունը, հաստատում սովետական հասարակարգի հիմքերը, ներկայացնում այն լուսավոր ուղիները, որ տանում են դեպի կոմունիզմ։

Սովետական գրողի պատվավոր և միաժամանակ պատասխանատու խընդիրն է՝ ընթանալ այդ ճանապարհով՝ ազգայինի միջոցով դեպի ինտերնացիոնալիզմը, դեպի համամարդկային, համաշխարհային կուլտուրայի, գրականության ու արվեստի նոր բարձունքները։

---

[1] Ընդգծումներն իմն են— Հ. Դ.

## ԱՐՄԱՏԱՎՈՐԵՆՔ ԱՌԱՋԱՎՈՐ ՓՈՐՁԸ

ՍՄԿՊ Կենտկոմի Նոյեմբերյան պլենումը նշեց, որ սովետական ժողովուրդը պարտիայի XXII համագումարից հետո անցած ժամանակաշրջանում հսկայական հաջողություններ է ձեռք բերել երկրի էկոնոմիկայի զարգացման ասպարեզում։ Այդ առաջին հերթին արդյունք է այն բանի, որ սովետական մարդիկ իրենց եռանդն ու ջանքերը գործադրեցին իրականացնելու յոթնամյակի առաջադրանքները։

Պլենումն ընդգծեց, որ գյուղատնտեսության կառավարումը վերակառուցելու մասին պարտիայի Կենտկոմի Մարտյան պլենումի որոշումները կարևոր դեր խաղացին երկրում գյուղատնտեսական մթերքների արտադրությունն զգալիորեն ավելացնելու ասպարեզում։

Արտաշատի արտադրական վարչության կոլտնտեսությունների և սովխոզների աշխատավորներն առաջնորդվելով Կենտկոմի այս տարվա Մարտյան պլենումի որոշումներով, արտադրության մեջ ներդնելով առաջավոր փորձն ու գիտության նորագույն նվաճումները, որոշակի հաջողությունների հասան գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու և պետությանը դրանց վաճառքի առաջադրանքները կատարելու գործում։

Ինչպես հայտնի է, Մարտյան պլենումը, քննադատության ենթարկելով հողագործության խոտադաշտային սիստեմը, ցույց տվեց, որ այն արգելակում է հողի ինտենսիվ օգտագործմանը։ Կենսագործելով պարտիայի այդ ցուցումը, արտադրական վարչության տնտեսությունները ցածր բերքատու խոտաբույսերի տարածությունների հաշվին ընթացիկ տարում շուրջ 250 հեկտարով ավելացրին եգիպտացորենի և 70 հեկտարով շաքարի ճակնդեղի ցանքատարածությունները։ Նշված կուլտուրաներով զբաղեցված հեկտարներն ավելի շատ կերամիավոր են տալիս, քան առվույտը և մյուս խոտաբույսերը։ Իրենց լավ աշխատանքով աչքի ընկան Արտաշատի շրջանի Ազատավանի, Մխչյանի, Վ. Դվինի, Վ. Արտաշատի, Բուրաստանի կոլտնտեսությունները, Վեդու շրջանի Արարատի, Ղարալարի կոլտնտեսությունները, «Դվին» սովխոզը։

Վ. Դվինի կոլտնտեսությունում (Արտաշատի շրջան) առաջներում խոտաբույսերի ցանքատարածություններից ստացվում էր 30—40 ցենտներ բերք, այսինքն՝ 1500—2000 կերամիավոր. 1962 թ. այդ տարածությունների մի մասը օգտագործվեց եգիպտացորենի ցանքի համար և ամեն մի հեկտարից հավաքվեց 600 ցենտներ կանաչ զանգված՝ մոտ 12.000 կերամիավոր։ Արմաշում, Սուրենավանում, Մասիսում, Վ. Դվինում, Նովրզլուում և այլ տեղերում կերային կուլտուրաներով զբաղեցվեցին չյուրացված ճահճակալած ու աղակալած հողերը։ Նախատեսվում է առաջիկայում ցածր բերքատու խոտաբույսերի կրճատման, նոր հողերի յուրացման հաշվին զգալիորեն ավելացնել եգիպտացորենի, ճակնդեղի և կերային այլ կուլտուրաների ցանքատարածությունները։



Կոլտնտեսություններն ու սովխոզները եգիպտացորենի ցանքի 40 տոկոսը կատարեցին քառակուսի-բնային եղանակով։ Այդ հնարավորություն տվեց ցանքերը մշակել մեքենաների միջոցով՝ երկկողմանի, ժամանակին ու որակով կատարել մշակության բոլոր աշխատանքները։ Արտաշատի շրջանի կոլտնտեսությունների մեծ մասը և Վեդու շրջանի առանձին կոլտնտեսություններ ցանեցին եգիպտացորենի բարձր բերքատու «Մասինո» սորտը, որը գրեթե երկու անգամ շատ կանաչ զանգված է տալիս, քան «Վիր—42» սորտը։ Նոր սորտի սերմացուն տվեց հարուստ բերք, գերակատարվեց սիլոսի պատրաստման առաջադրանքը։

Հողատարածությունների ինտենսիվ օգտագործման նպատակով բազմաթիվ տնտեսություններում միևնույն հողից նույն տարում ստանում են երկու բերք։ Հացահատիկից ազատված 887 հեկտար հողերում այս տարի եգիպտացորենի ամառային ցանք կատարվեց, որով լրացուցիչ ստացվեց 13.400 տոննա կանաչ զանգված։ Կերաբույսեր (շաքարի ճակնդեղ և այլն) են ցանվում նաև բանջարա-բոստանային կուլտուրաների միջշարային տարածություններում։ Բնորոշ է հետևյալ փաստը։ Վեդու շրջանի Այգեվանի կոլտնտեսությունը տարեկան կուտակում էր 200 տոննա ճակնդեղ, իսկ 1962 թ. նույնքան ճակընդեղ ստացվեց միայն բանջարանոցների միջշարային տարածություններից։

Վեդու և Արտաշատի շրջանների մի շարք տնտեսություններում (Շիրազլու, Այգեզարդ) արմատավորված է եգիպտացորեն-սոյա, եգիպտացորեն-բակլա խառացված սխեմայով ցանքը։ Այգեվանում, Շիրազլուում, Ավշարում սիլոսը պատրաստվել է եգիպտացորենի և ծղնոտի խառնուրդով։

Կերի կուտակման գործում առաջավոր փորձի և աշխատանքի կազմակերպման առաջավոր եղանակների արմատավորումը հնարավորություն տվեց անցյալ տարվա համեմատությամբ 80.000 ցենտներով ավելացնելու խոտի և մոտ 100.000 ցենտներով սիլոսի պաշարները։ Արտաշատի շրջանի շատ կոլտնտեսություններ կուտակել են մեկուկեսից՝ երկու տարվա կեր։ Ինչպես հայտնի է, մինչև վերջերս էլ սիլոսը հիմնականում պահպանվում էր աշտարակներում ու խրամատներում։ Պարտիական կազմակերպությունների նախաձեռնությամբ այս տարի առաջին անգամ կիրառվեց վերգետնյա սիլոսացման առաջավոր եղանակը. 300 տոննա տարողությամբ սիլոսի խրամատ պատրաստելու համար առաջներում անհրաժեշտ էր 145 խմ. քար, 25 տ. ցեմենտ և կիր. աշխատանքի և նյութական ծախսերը նման խրամատի պատրաստման համար կազմում էր մոտ 4000 ռուբլի, մինչդեռ վերգետնյա սիլոսացումը կոլտնտեսությանն ազատում է այդ ավելորդ ծախսերից։ Կատարելով այդ հաշվարկումները՝ Շիրազլուի կոլտնտեսությունը առաջինը սիլոս պատրաստեց այդ առաջավոր եղանակով։

Պարտիական կազմակերպությունները, հաշվի առնելով իրենց տնտեսությունների հնարավորություններն ու պայմանները, իրագործում են խոր մասնագիտացում, առավելապես ավելացնելով գյուղատնտեսական այն արտադրանքը, որի համար լավագույն պայմաններ կան և որն ավելի քիչ ծախսեր է պահանջում։ Արտաշատի շրջանի Դալար գյուղում ոչխարաբուծության զարգացման համար չկային անհրաժեշտ պայմաններ, իսկ Ջրաշենը կարող էր մասնագիտանալ այդ ճյուղում, ավելացնել բրդի և մսի արտադրությունը։ Դալարի ոչխարաբուծական ֆերման հանձնվեց Ջրաշենին, իսկ Դալարի կոլտըն-

տեսությունը մասնագիտացավ կաթնաանասնապահության մեջ։ Նույն ձևով էջ
Նովրզլուի ոչխարաբուծական ֆերման հանձնվեց Գետաշենին։
Տնտեսությունների մասնագիտացումը տնտեսական մեծ առավելություն-

Տնտեսությունների մասնագիտացումը տնտեսական մեծ առավելություն-
ների հետ մեկտեղ անհրաժեշտ պայմաններ է ստեղծում արտադրության մեջ
աշխատանքի առաջավոր եղանակներն արմատավորելու համար։ Այսպես, Վե-
դու շրջանում նպաստավոր պայմաններ կան բանջարաբուծության զարգացման
համար. այդ նպատակով շրջանի տնտեսությունների մի մասը մասնագիտաց-
վել է այդ ճյուղում և իրականացվել են մի շարք միջոցառումներ բանջարաբու-
ծության արդյունավետությունը բարձրացնելու ուղղությամբ։ Արտաշատի
առաջավոր կոլտնտեսությունների օրինակով Վեդիում արմատավորվել է ցանքի
ակոսային եղանակը, որը հնարավորություն է տվել զգալի չափով մեքենա-
յացնելու մշակության աշխատանքները։ Եվ եթե անցյալ տարի յուրաքանչյուր
հեկտարից շրջանի տնտեսություններն ստացել էին ընդամենը 76 ցենտներ
բանջարեղենի բերք, այս տարի այն հասավ 140—150-ի։

Կոլտնտեսությունների պարտիական կազմակերպությունները լուրջ ուշա-
դրություն են հատկացնում անասնաբուծության բնագավառում առաջավոր
փորձի և գիտության նվաճումների արմատավորմանը։ Արդեն բոլոր կոլտնտե-
սությունները ու սովխոզները լայնորեն կիրառում են պրոֆ. Բայբուրթցյանի
առաջարկած ամորձատման մեթոդը, որը հնարավորություն է տալիս առանց
լրացուցիչ ծախսումների ավելացնելու մսի արտադրությունը։ Արմատավոր-
վում է նաև ոչխարների երկրորդ և վաղ ծին ստանալու առաջավոր մեթոդը։
ֆերմաները համալրվում են առավել կաթնատու կովերով։

Հայտնի է, որ անասնաբուծությունը գյուղատնտեսության նվազ մեքենա-
յացված ճյուղերից է, որի վրա և բևեռված է կոլտնտեսությունների ու սովխոզ-
ների պարտկազմակերպությունների ուշադրությունը։ Ն. Ջրաշենի և Բաղրամ-
յանի կոլտնտեսություններում 1962 թ. գործարկվեցին կթի ագրեգատներ, ներ-
ֆերմային տրանսպորտի մեխանիզմներ, նախապատրաստական աշխատանք-
ներ են տարվում Արաղաիի սովխոզում արմատավորելու անասունների արձակ
կերակրման մեթոդը։

Առաջավոր փորձի, գիտության նվաճումների արմատավորման, անասուն-
ների խնամքի ու կերակրման բարելավման շնորհիվ անասնաբուծության բնա-
գավառի աշխատողները հասել են լուրջ հաջողությունների. անցյալ տարվա
համեմատությամբ ավելացել է բոլոր տեսակի անասունների գլխաքանակը,
կրճատվել են անկումները, որոշ չափով ավելացել է անասնաբուծական մթերք-
ների արտադրությունը։ Պարտիական կազմակերպությունների ջանքերով կա-
տարվել ու գերակատարվել են անասնաբուծական մթերքների վաճառքի
1962 թ. սոցիալիստական պարտավորությունները։

Արտադրական վարչության կոլտնտեսությունների ու սովխոզների էկո-
նոմիկայում վճռական դեր են խաղում խաղողագործությունն ու բամբակագոր-
ծությունը։ Բնականաբար այդ ճյուղերում նորի արմատավորումը առաջնակարգ
նշանակություն ունի։

Լավ բերք է ստացվում միայն առաջավոր եղանակով ցանված բամբակից։
Վեդու շրջանի Նոր կյանքի, Մեծ Վեդու, Արարատի և մի շարք այլ կոլտնտե-
սություններ բամբակի ցանքը կատարեցին քառակուսի-բնային եղանակով։
Այդ եղանակով ցանված գրեթե բոլոր պլանտացիաներում կատարվեց երկկող-
մանի մեքենայական մշակություն, թեթևացավ կոլտնտեսականի աշխատանքը։



Պլանտացիաների մշակության բոլոր աշխատանքները՝ ոռոգումից ու քաղհան-
փխրեցումից մինչև սնուցումը, բուժումն ու ծերատումը կատարվեցին ագրո-
կանոններով նախատեսված ժամկետներում, խնամքով ու որակով։ Արդյունքը
եղավ այն, որ կոլտնտեսություններում, անցյալ տարվա համեմատությամբ,
բամբակի յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունն ավելացավ 10—15 տո-
կոսով, միաժամանակ իջավ հումքի արտադրության ինքնարժեքը։

Արտաշատի շրջանի Քաղցրաշենի կոլտնտեսությունում խաղողի այգիների
ամեն մի հեկտարից տարեկան ստանում են 200 և ավելի ցենտներ բերք։ Այդ
առաջավոր այգեգործների փորձը տարածելու նպատակով վարչությունը Քաղց-
րաշենում հրավիրեց Վեդու և Արտաշատի շրջանների մի շարք կոլտնտեսու-
թյունների ղեկավարների, պարտկազմակերպությունների քարտուղարների և
մասնագետների սեմինար պարապմունք։ Նրանք տեղում զրուցեցին այգեգործ-
ների հետ, ծանոթացան նրանց աշխատանքի մեթոդներին։ Ապա սեմինարի
մասնակիցները նույն օրը եղան Էջմիածնի արտադրական վարչության «Մա-
սիս» սովխոզում, ծանոթացան քառակուսի-բնային եղանակով տնկված այգի-
ներին։ Կոլտնտեսության ղեկավարներից շատերը որոշել են իրենց տնտեսու-
թյուններում նոր հիմնվող այգիների մեծ մասը տնկել քառակուսի-բնային եղա-
նակով։

Մի շարք տնտեսություններում իրագործվում է այգիների լարային սիս-
տեմը։ Վեդու շրջանի «Դվին», Արմաշի և Սպանդարյանի անվան սովխոզներն
այս տարի լարերի վրա բարձրացրին 250 հեկտար այգի։ Եկող տարվանից
կսկսեն բոլոր այգիները բարձրացնել տնկաշարերի վրա։

Արտաշատում է ծնունդ առել հարուստ հեկտարի շարժումը։ Պարտիական
կազմակերպությունները ձգտում են այդ շարժման մեջ ընդգրկել բոլոր աշխա-
տավորներին, պայքարում են ինչպես այգիներից, այնպես էլ գյուղատնտեսա-
կան մյուս կուլտուրաների ցանքատարածություններից ստանալ բարձր բերք,
հողի յուրաքանչյուր հեկտարից վերցնել առավելագույնը։ Լավ փորձ են կուտա-
կել և այգեզարդցիները, որոնք ձգտում են կրճատել միջնակները, առուները և
չօգտագործվող հողերը դնել կերային և այլ կուլտուրաների ցանքի տակ։

Անշուշտ, անհնար է արտադրության վերելք կազմակերպել, համարձակ
ներդնել նորն ու առաջավորը, առանց աշխատավորների նյութական շահա-
գրգռվածությունը բարձրացնելու։ Այս ուղղությամբ նորն այն է, որ արտա-
դրական վարչությունը Գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման
ինստիտուտի հետ միասին մշակել է կոլտնտեսականների նյութական շահա-
գրգռվածությունը բարձրացնելու օրինակելի միջոցառումներ։ Առաջներում
նույն պայմաններում գտնվող կոլտնտեսություններում հաճախ գործադրվում
էին նյութական շահագրգռվածության տարբեր սիստեմներ, որոնք, ինչպես
նաև աշխատանքի նորմավորման տարբերությունները, ստեղծում էին արհես-
տական դժվարություններ աշխատանքը լավ կազմակերպելու բնագավառում։
Այժմ վերացված են այդ տարբերությունները, ինչպես և լրացուցիչ վարձա-
տրությունը բնամթերքով վճարելու պրակտիկան։

ՍՄԿԿ Կենտկոմի Նոյեմբերյան պլենումը անհրաժեշտ համարելով ժողո-
վրդական տնտեսության պարտիական ղեկավարությունը վերակառուցել ար-
տադրական սկզբունքով, էլ ավելի է բարձրացնում պարտիական կազմակեր-
պությունների դերն ու պատասխանատվությունը տեխնիկական առաջադիմու-
թյան, առաջավոր փորձի ու գիտության նվաճումների արմատավորման համար։

Արտաշատի արտադրական վարչության կոլտնտեսությունների ու սովխոզ-
ների պարտիական կազմակերպությունները աշխատավորական լայն մասսա-
ներին պարզաբանելով ՍՄԿՊ Կենտկոմի Նոյեմբերյան պլենումի ծրագրային
կարևորագույն որոշումները, գործնականում լայն պայքար են ծավալել դրանց
անշեղ կենսագործման համար։

Օ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ
Արտաշատի կոլտնտեսային-սովխոզային
տերիտորիալ արտադրական վարչությունում
ՀԿՊ Կենտկոմի պարտկազմակերպիչ

## ՀԱՐԳԵՆՔ ՄԱՐԴՈՒՆ

Մեր պարտիայի համար չկա ավելի վսեմ նպատակ, քան մշտական հոգա-
տարությունը ժողովրդի նկատմամբ, նրա նյութական ու հոգևոր աճող պա-
հանջմունքների լրիվ և բազմակողմանի բավարարումը։ Եվ նա անում է ամեն
ինչ սովետական մարդու կյանքը ավելի ու ավելի հարուստ և գեղեցիկ դարձ-
նելու համար։

Հիրավի, կոմունիզմ կառուցող մարդն արժանի է ամենայն հարգանքի և
ուշադրության, նրա ամենօրյա կարիքների ու պահանջների նկատմամբ զգա-
յուն վերաբերմունքի։ Այդ է մեր պարտիական կազմակերպությունների, բոլոր
ղեկավար գործիչների սրբազան պարտականությունը։
Ազիզբեկովի շրջանի պարտիական կազմակերպություններն զգալի գործ
են կատարում բանվոր-ծառայողների, կոլտնտեսականների կյանքի ու կենցա-
ղային պայմանների բարելավման, բնակավայրերի բարեկարգման և բնակա-
րանային շինարարության ուղղությամբ։ Շրջանի սովետական ու տնտեսական
կազմակերպություններն սկսել են ավելի ուշադիր վերաբերվել և ժամանակին
ընթացք տալ աշխատավորների դիմումներին ու բողոքներին, ղեկավար աշխա-
տողները հաճախ են լինում կոլտնտեսություններում, սովխոզներում և արդյու-
նաբերական ձեռնարկություններում, հանդիպում մարդկանց հետ։

Կարելի է բերել բազմաթիվ փաստեր այն մասին, թե ինչպես կազմակեր-
պությունները, ղեկավար աշխատողները զգայուն և ուշադիր, իրոք հոգատար
վերաբերմունք են ցուցաբերում աշխատավորների նկատմամբ, ժամանակին
հոգում են նրանց կարիքները։

Չնայած մշտական զբաղվածությանը և արտադրության մի շարք հոգ-
սերին, Հերհեր գյուղի կոլտնտեսության ղեկավարները ժամանակ են գտնում
զբաղվելու կոլտնտեսականների կենցաղային պայմանների լավացման հար-
ցերով։ Օրինակ, արտելի վարչությունը հանրային շինարարությունն ավարտե-
լուց հետո աջակցում է նրանց՝ կառուցելու հարմարավետ տներ. տրամադրում
է տրանսպորտ ու շինարարական նյութեր. միայն վերջին երեք տարում իրենց
նոր բնակարաններն են փոխադրվել կոլտնտեսային 130 ընտանիք։

Վախճանվեց Մարտիրոս գյուղի կոլտնտեսության հովիվ Յա. Հախնազար-
յանը, բազմանդամ ընտանիքը զրկվեց ո՛չ միայն սիրելի մարդուց, այլև
հիմնական կերակրողից։ Մեծ էր հարազատների վիշտը, նրանք ողբում էին
վաղաժամ կորուստը։ Մարդկային ողբերգության այդ ծանր պահին գյուղի
ղեկավարները, կոմունիստները, համագյուղացիներն իրենց սրտացավ վերա-



բերմունքով սփոփում են հարազատների վիշտը, թույլ չտալով, որ նրանք վշտի
ծանրությունից ընկճվեն, թևաթափ լինեն։ Կոլտնտեսության վարչության որոշ-
մամբ թոշակավորվեցին Յա. Հախնազարյանի ծեր մայրը, դպրոցահասակ
հինգ երեխաները։ Ավելին, հանգուցյալի երեխաները դպրոցում ապահովվեցին
ձրի սննդով, հագուստով և այլն։

Լավ չէր Դայլաղլու գյուղի կոլտնտեսության շարքային անդամ Հ. Հա-
րությունյանի առողջական վիճակը. նա կարիք ուներ սանատորիական բուժ-
ման։ Արտելն իր միջոցներով ուղեգիր գնեց նրա համար։ Ապաքինվելուց հե-
տո Հ. Հարությունյանը վերադարձավ իր գործին և աշխատում է կրկնապատկ-
ված եռանդով։

Աշխատավորներից պետք է ոչ միայն պահանջել, որ նրանք լավ աշխատեն,
գործեն ուժերի առավելագույն լարումով, այլև անհրաժեշտ է հոգ տանել նրանց
մասին։ Սակայն, ցավոք սրտի, մեր կյանքում դեռևս հանդիպում ենք այնպիսի
դեպքերի, երբ առանձին կազմակերպություններ, պարտիական, սովետական
և տնտեսական օրգանների որոշ ղեկավար աշխատողներ սրտացավ չեն, կա-
սեինք՝ բյուրոկրատական վերաբերմունք են ցուցաբերում մարդկանց ամենօրյա
հոգսերի, կարիքների նկատմամբ։

Ջերմուկ քաղաքի պետառի բաժանմունքի ղեկավարները միշտ գոհ են
եղել բանվոր Ա. Դավեյանի գործունեությունից։ Սակայն պատահեց այնպես,
որ պաշտոնական ծառայության մեջ 1961 թ. նոյեմբերին նա ծանր հիվանդա-
ցավ և վեց ամիս գամվեց մահճին։ Այդ երկար ու ձիգ ամիսների ընթացքում
բաժանմունքի ղեկավարներից և ոչ մեկը չբարեհաճեց այցելել հիվանդին, իմա-
նալու՝ նրա առողջական վիճակը, ինչպես են ապրում չորս երեխաները, ինչպի-
սի օգնության կարիք ունի նրա ընտանիքը։

Ապաքինվելուց հետո խռոված հոգով ու փշրված սրտով ընկ. Դավեյանը
դիմում գրեց պետառի բաժանմունք՝ խնդրելով իրեն ապահովել համապատաս-
խան աշխատանքով, քանի որ առողջական վիճակն այլևս չէր ներում վերա-
դառնալու նախկին գործին։ Միանգամայն օրինական ու համեստ պահանջ։

Հենց այդ օրվանից էլ սկսվում են Ա. Դավեյանի տառապանքները։ Պետ-
առի բաժանմունքի պետի 1962 թ. հունիսի 8-ի հրամանով նա նշանակվում է
ջրավաճառ, իսկ մեկ օր անց ետ է վերցվում հրամանը՝ պատճառաբանելով,
թե տվյալ գործի համար նա պիտանի չէ։ Անհիմն պատճառաբանություն։ Նա
ունի ութնամյա կրթություն, կարգապահ, կուլտուրական և պարտաճանաչ ըն-
կեր է։ Անցնում է ևս մեկ ամիս. ընկ. Դավեյանի բազմիցս դիմումներից հետո
որոշում են նրան տեղավորել կրպակում որպես պատասխանատու վաճառող.
նախորդի նման վերջին հրամանը ևս մնում է անկատար։ Ում ի՛նչ փույթ, թե
նա չի աշխատում, թե խիստ ծանր է նրա տնտեսական վիճակը։

Վերադաս կազմակերպությունների միջամտությունից հետո գրվում է նրան
կրպակի պատասխանատու վաճառող նշանակելու վերաբերյալ երրորդ հրա-
մանը։ Հրամանը՝ հրաման, բայց մարդը շարունակում էր մնալ անգործ։ Վեր-
ջապես երկար մտորումներից հետո ընկ. Դավեյանին հանձնարարվում է վերա-
նորոգել խանութներում եղած տարաները, որը և առանց տրտունջի կատարում
է։ Բայց աշխատելով մեկ ամիս, նա չգիտեր, թե որքան են իրեն վարձատրելու,
չկար աշխատանքի ընդունման վերաբերյալ ոչ հրաման և ոչ էլ սահմանված
էին աշխատանքի գնահատման նորմաները։

Պարզվում է, որ ընկ. Դավեյանն ունի և բախտակիցներ։ Պետառում չկար ընդհանրապես օրենքով սահմանված հրամանագիրք, ժամանակին չէին ձևակերպվում աշխատանքի ընդունման ու ազատման հրամանները, ընթացք չէր տրվում քաղաքացիների դիմումներին։ Այսպես, քաղաքացի Ք. Մելիքյանը 1962 թ. օգոստոսի 12-ից որպես բանվոր աշխատում էր ճաշարանում, բայց երկար ժամանակ չէր տրվում նրան աշխատանքի ընդունելու հրամանը և, հետևապես, չէր կարող ստանալ աշխատավարձ։ Նա հարկադրված դիմում է պետառի բաժանմունքի պետ ընկ. Բունիաթյանին. դիմումը մնում է անպատասխան։ Անպատասխանատվությունը հասել էր այն աստիճանի, որ նույնիսկ աշխատանքից հեռացված մարդկանց մասին հրաման չէր տրվում։ Օրինակ, աշխատանքները չգլխավորելու, սանիտարական կանոնները չպահպանելու և խախտումներ թույլ տալու համար 1962 թ. սեպտեմբերի մեկից ճաշարանի խոհարար Մ. Պետրոսյանը հեռացվել է աշխատանքից, բայց մինչև վերջերս էլ չէր ձևակերպված նրան աշխատանքից ազատելու հրամանը։ Կամ պետառի բաժանմունքի ղեկավարությունը առևտրի գործը բարելավելու, սպասարկումը կանոնավորելու նպատակով առևտրական կետերում ու խանութներում երկհերթ կամ հերթափոխային աշխատանք սահմանելու փոխարեն, անօրինական հրաման է գրում այն մասին, որ առևտրի աշխատողները յոթ ժամի տեղ օրական պետք է աշխատեն տասն և կես ժամ։ Բաժանմունքի պարտիական և արհմիութենական կազմակերպությունների աչքի առաջ այստեղ ամենակոպիտ կերպով խախտվում էր աշխատանքային օրենսդրությունը և ոտնահարվում էին քաղաքացիների տարրական իրավունքները։

ՀԿՊ Ազիզբեկովի շրջկոմը, քննության առնելով պետառի բաժանմունքում տիրող վիճակը, ձեռնարկեց մի շարք միջոցառումներ, պարտիական պատասխանատվության ենթարկելով առանձին ղեկավար աշխատողների։

«Ջերմուկ» հանքային ջրի գործարանի բանվոր Վ. Հակոբյանը թոշակի անցնելու կապակցությամբ դիմում է քաղաքային Սովետի գործկոմին անհրաժեշտ փաստաթղթեր ստանալու համար։ Անցնում է չորս ամսից ավելի, սակայն նա չի կարողանում ստանալ տեղեկանք այն մասին, որ ինքն իրոք Ջերմուկ քաղաքի բնակիչ է։ Միայն պարտիայի շրջանային Կոմիտեի կրկնակի պահանջից հետո նրան տրվում է վերոհիշյալ տեղեկանքը։

Ինչո՞ւմն է բանը, ինչո՞ւ քաղաքացի Վ. Հակոբյանը չէր կարող ստանալ պահանջվող փաստաթղթերը։ Քաղսովետի ընկերները պատճառաբանում են, որ նա չի կատարել քաղսովետի գործկոմի նախագահ ընկ. Ա. Ավետիսյանի կարգադրությունը և իր բնակեցրած շենքի պատշգամբից չի հանել վառելիքը և տնային այլ իրեր։ Բայց դա չէր հիմնական շարժառիթը, այլ այն, որ բանվոր մամութղթակից Վ. Հակոբյանը «համարձակվել էր» մի քանի անգամ հանդես գալ մամուլում և բացահայտել քաղաքային տնտեսության գործում եղած լուրջ թերությունները։

Միշտ չէ, որ քաղաքացիները կարողանում են օգտվել իրենց տրված օրինական լայն իրավունքներից։ Երբեմն առանձին մինիստրություններ, գերատեսչություններ և կազմակերպություններ չեն ընդառաջում և հոգատար վերաբերմունք չեն ցուցաբերում քաղաքացիների պահանջների նկատմամբ։ Հերհեր գյուղի բնակչուհի Ս. Հարությունյանը մինչև Հայրենական պատերազմն ավարտել է Ռոստովի Շահումյանի անվան միջնակարգ դպրոցը։ 1941 թվականին



ընդունվում է Երևանի երաժշտական տեխնիկումը, սակայն պատերազմն
սկսվելուց հետո տեղափոխվում է Ազիզբեկովի շրջանի Դայլաղլու գյուղը և աշ-
խատում որպես ուսուցչուհի։ 1942 թվականին մեկնում է ռազմաճակատ և ծա-
ռայում որպես հետախույզ. այստեղ էլ նա կորցնում է իր բոլոր փաստաթղթերը,
այդ թվում նաև միջնակարգ դպրոցի վկայականը։ Զորացրվելուց հետո,
1945-ից մինչև 1949 թվականը աշխատում է Հերհերի դպրոցում որպես ուսուց-
չուհի։ 1949 թվականին ազատվում է աշխատանքից՝ վկայականը չներկայաց-
նելու պատճառով։ Ս. Հարությունյանը դիմում է Ռոստովի պետական արխի-
վին՝ խնդրելով տալ միջնակարգ կրթության վկայականի պատճենը, սակայն
նրան պատասխանում են, որ դպրոցի արխիվային փաստաթղթերը չեն պահ-
պանված։

Այստեղ արդեն ձևական կողմը, փաստաթղթամոլությունը այնպես է գլուխ
բարձրացրել, որ բոլորովին մոռացվել է անհատական մոտեցումը մարդու
նկատմամբ։ Եթե չհաշվենք պատերազմից առաջ նրա կատարած ուսուցչական
աշխատանքը, 1945—1949 թթ. նա ուսուցչություն է արել. մի՞թե այդ բավա-
կան չէ, որոշելու համար, թե նա կարո՞ղ է շարունակել մանկավարժական գոր-
ծը և եթե ուսուցչուհի չէ, գոնե գրադարանավարուհի՞ էլ չի կարող լինել։ Զի
կարելի մարդուն զրկել աշխատելու հնարավորությունից։ Տվյալ դեպքում, երբ
տարիներ շարունակ մարդուն ճանաչում են համատեղ աշխատանքում, միթե
նրա նկատմամբ կարելի է նման վերաբերմունք ցուցաբերել։

Երբեմն առանձին կազմակերպությունների ղեկավարներ, առանց հանգա-
մանորեն ուսումնասիրելու իրական վիճակը՝ հիմնվելով միայն իրենց ենթակա
աշխատողների ոչ ճիշտ ինֆորմացիաների վրա, մարդկանց ազատում են աշ-
խատանքից, կրճատում նրանց աշխատավարձը, խախտում օրինականությունը։

Շատ անարդարացի է Ջերմուկի շինվարչության պետ Վ. Լալաևի 1962
թվականի հունիսի 6-ի հրամանը, որով դարբին Հ. Թադևոսյանն ազատվում է
աշխատանքից՝ իբր ինքնակամ հեռանալու պատճառով, հիմք ընդունելով միայն
գլխավոր մեխանիկի զեկույցը։

Ստուգումից պարզվում է, որ Հ. Թադևոսյանի աշխատավարձից գլխավոր
ինժեներ Ա. Գևորգյանը անօրինական կերպով պահում է 43 ռուբլի։ Վերջինիս
բողոքից հետո շինվարչության գլխավոր ինժեները ետ է վերադարձնում այդ
գումարը մաս-մաս։ Դրանից հետո սկսվում են ինտրիգներն ու հաշվեհարդա-
րը նրա նկատմամբ։ Պակասեցնում են վարձատրության արտադրական նորմա-
ները։ Հ. Թադևոսյանը դիմում է տեղկոմին. տեղկոմի որոշմամբ ստանում է
85 ռ. 15 կ. պակաս ստացած վարձատրությունը։ Այդ ամենից հետո ցանկա-
նում են նրան ազատել աշխատանքից, տեղկոմի որոշմամբ վերականգնվում է։
Վերջին հաշվով շինարարության վարչության պետը հունիսի 6-ին տալիս է
հրաման՝ աշխատանքին չմասնակցելու համար նրան ազատել աշխատանքից.
մինչդեռ նա վերջին ամսին՝ մայիսին, աշխատել է 24 աշխատանքային օր և
ստացել 89 ռ. 70 կ. աշխատավարձ։

Շինվարչության պետի այս կամայական, բյուրոկրատական վերաբերմուն-
քը բացառություն չէ։ Առանձին բանվորների նկատմամբ էլ նա անարդարացի,
անմարդկային է վարվել։ Մարդկանց նկատմամբ այդպիսի վերաբերմունք ցու-
ցաբերելու համար պարտիայի շրջանային կոմիտեն պարտիական պատասխա-
նատվության է ենթարկել շինարարության պետ Վ. Լալաևին, իսկ գլխավոր
ինժեներ Ա. Գևորգյանին ազատել է աշխատանքից։

Երբեմն լավագույն կոլտնտեսականների նկատմամբ էլ ցուցաբերվում է ոչ հոգատար վերաբերմունք։ Առանձին կոլտնտեսությունների վարչությունների նախագահներ չեն ընդառաջում կոլտնտեսականների օրինական պահանջներին, կոպտում, վիրավորում են նրանց։

Արտավանի կոլտնտեսության անդամ Խ. Ավետյանը 1962 թվականին երեք անգամ դիմել է շրջանային կազմակերպություններին, այն բանի համար, որ կոլտնտեսության վարչության նախագահ Կ. Վարդանյանը իրեն թույլ չի տալիս աշխատել որպես տավարապահ, մինչդեռ կոլտնտեսությունում աշխատում են (դրամական վարձատրությամբ) այնպիսի մարդիկ, որոնք կոլտնտեսության անդամ չեն։

Կոլտնտեսությունների վարչությունների որոշ նախագահներ չեն մտահոգվում կոլտնտեսականների տարրական կենսապայմանների բարելավմամբ։ Սերսի կոլտնտեսության անդամ Ի. Հարությունյանն իր ընտանիքով ակտիվ մասնակցում է կոլտնտեսային աշխատանքներին։ Չորս ամիս է արդեն, ինչ նա խնդրում է գոնե մեկ օրով իր հաշվին մի ավտոմեքենա տրամադրել իրեն անհատական բնակարանային շինարարության համար և մերժվել է. էլ ինչպե՞ս նա պետք է հանգիստ սրտով աշխատի։ Պետք է գնահատել մարդուն, նրա աշխատանքը։ Հաճախ էլ կոլտնտեսականներին չեն հատկացնում փոխադրական միջոցներ հացահատիկը ջրաղաց տեղափոխելու, շինանյութեր տեղափոխելու և այլ նպատակների համար։ Իսկ կոլտնտեսությունն ունի այդպիսի հնարավորություններ։

Ձեռնարկությունների առանձին ղեկավարները, ընկնելով պլանների կատարման հետևից, մոռանում են աշխատանքի անվտանգության կանոնների պահպանումը, որի պատճառով էլ լինում են դժբախտ դեպքեր։

Պատասխանատու աշխատողների բյուրոկրատական վերաբերմունքի պատճառով մարդիկ երբեմն ամիսներով չեն կարողանում ստանալ պատասխանն իրենց հուզող այնպիսի հարցերի, որոնց լուծումը երկար ժամանակ չի պահանջում և կախված է հենց իրենցից։ Առանձին կոլտնտեսությունների վարչությունների նախագահներ, հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներ արհամարհում, չեն պատասխանում մարդկանց հարցերին, չեն բավարարում նրանց պահանջները։ Այդպիսի անհոգությունը, մեծամտությունն ու անտարբերությունը վիրավորում են մարդկանց, վարկաբեկում սովետական կազմակերպությունների ղեկավարներին։

Առանձին ղեկավար աշխատողներ, չարաշահելով իրենց նկատմամբ տածված վստահությունը, կոպտում, վիրավորում են մարդկանց, նվաստացնում նրանց արժանապատվությունը։ Ամեն մի աշխատողի պարտականությունն է՝ ոչ թե կոպտել, վիրավորել մարդուն, այլ նրա հետ վարվել՝ ինչպես հավասարը հավասարի հետ։ Խստապահանջ, գործի նկատմամբ խիստ պատասխանատու լինելը չի նշանակում լինել կոպիտ, կիրթ չվերաբերվել այցելուների հետ։ Մարդկանց ղեկավարել, չի նշանակում գոռալ նրանց վրա, նշում է Ն. Ս. Խրուշչովը, գոռալով ոչինչ չես անի... ղեկավարի արվեստը մարդկանց ճիշտ կազմակերպելու, նրանց օգնելու հմտության մեջ է։

Պարտիան բոլոր պարտիական, սովետական և արհմիութենական կազմակերպություններից, տնտեսավարներից պահանջում է ամենուրեք և անընդհատ զբաղվել աշխատավորների աշխատանքային ու կենցաղային պայմանների բարելավման հարցերով։ Որքան մեծանա ուշադրությունն ու հոգատարությունը



սովետական մարդկանց նկատմամբ, այնքան ավելի եռանդուն, բուռն խանդավառությամբ նրանք կմասնակցեն կոմունիստական հասարակարգի կառուցմանը, կծառայեն մարդկային բարօրությանը։

Ժ. ՍԱՆՈՅԱՆ

ՀԿՊ Ազիզբեկովի շրջկոմի քարտուղար

## ԳՈՀԱՑՈՒՑԻՉ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐ

Շիրակի դաշտում աշուն էր, բնատուր գույների հանդես։ Այդ օրերին դաշտամիջյան ճանապարհները լիքն էին ավտոմեքենաներով ու սայլերով, ֆուրգոններով ու տրակտորաքարշ լաֆետներով։ Բերքառատ դաշտի հարստությունը մեծ ու փոքր ճամփաներով հոսում էր դեպի գյուղ, դեպի հանրային շտեմարանները։ Քանի՜, քանի՜ այսպիսի բարեբեր տարիներ է փակել Ղարիբջանյան գյուղը ու տարիների հետ ինքն էլ է զորացել, վերափոխվել ու գեղեցկացել։

Գյուղի լիարյուն, շռնդալից կյանքին թև ու թափ է տալիս գյուղի պարտիական կազմակերպությունը։ Կոմունիստներն ամենավճռական տեղամասերում են, պայքարի ամենաառաջավոր բնագծում՝ կոմբայնի ղեկի մոտ, ճակնդեղի պլանտացիաներում, յայլաղներում ու ֆերմաներում։

Պատահական չէ, որ այստեղ հավատով ու հարգանքով են խոսում կոմունիստների մասին. շատերի նվիրական ցանկությունն է՝ լինել անդամն այն կազմակերպության, ում այսօրվա խոսքը վաղը գործ է դառնում, ով խանդավառել գիտե, ոգեկոչել ու նախաձեռնել։

Անասնաբուծական ֆերմայում մեր դեմ ելավ մի ծերունի և ասաց.

— Էսօր մեր հաշվետու ժողովն է։ Տղերքը դաշտում են, ուզում ենք մինչև իրիկուն ճակնդեղի հանձնման պլանը գերակատարել։

Թեև ծերունի Ալեքսանը պարտիայի անդամ չէ, բայց նա և մյուսները սովորել են այդպես ասել՝ «մեր հաշվետու ժողովը»։ Չէ որ Ալեքսանի հետ միևնույն ֆերմայում են աշխատում նաև կոմունիստները, և նույնն են նրանց խոհերը աշխատանքի ու կյանքի մասին, նույնն են նրանց մտահղացումները։

* * *

Գյուղի վրա իջնում էր աշնան խաղաղ երեկոն, իջնում էլեկտրական լույսերի ցոլքերով, բաց պատուհաններից սփռվող ռադիոընդունիչների մեղմանույշ երգով։ Վաստակած մարդիկ շտապում են դեպի ակումբ՝ դիտելու նոր կինոնկարը, շատերն էլ իրենց հանգիստն են վայելում տանը, հեռուստացույցի մոտ։

Այդ երեկո սովորականից մարդաշատ էր դպրոց տանող ճանապարհը։ Այնտեղ կայանալու էր Ախուրյանի շրջանի Ղարիբջանյանի կոլտնտեսային սկզբնական պարտիական կազմակերպության հաշվետու-ընտրական ժողովը։ Ժողովի սկսվելուն դեռ ժամանակ կար։ Ընդարձակ սենյակում աշխույժ զրուցում էին։ Դեռ նոր էին հանդիպում յայլաղից իջած անասնապահները՝ դաշտից քիչ առաջ վերադարձած ճակնդեղագործներին։ Անկյունում նստած ճակնդեղագործուհի Լյուսյա Հովհաննիսյանը հայտնեց, որ իր օղակն արդեն ավարտել է բերքահավաքը և հեկտարից ստացել է 420 ցենտներ շաքարի ճակնդեղ։

— Դուք հիմա ձեր մասին մտածեք,— դիմելով նստածներին, ծիծաղով ասում է Լյուսյան։

— Մեր գործերն էլ վատ չեն,— նույնքան ուրախ պատասխանում է կոլտնտեսության նախագահը և ծոցագրպանից հանելով խունացած բլոկնոտը, մոտենում է Լյուսյային ու մատով ցույց տալիս «25 հազար» թիվը։ Լյուսյան ուրախությունից շողացող դեմքով հայտնում է, որ ճակնդեղի հանձնման տարեկան առաջադրանքն արդեն գերակատարված է 1000 ցենտներով։ Ամենքն էլ միևնույն հրճվանքն են ապրում։ Ինչպես միշտ, այնպես էլ այս տարի շաքարի ճակնդեղի բերքատվությամբ կոլտնտեսությունը ռեսպուբլիկայում առաջինն է։

Իրավ, բերկրալի են արդյունքները, որ համառ, ստեղծագործ աշխատանքով ձեռք են բերել գյուղի կոմունիստները։ Այդ արդյունքների մասին է խոսում պարտբյուրոյի քարտուղար Սեյրան Համբարձումյանը։

Ղարիբջանյանի կոլտնտեսությունում բերքը հազարներով է չափվում, իսկ հազարներն էլ ծնվում են մարդկանց ստեղծագործ ջանքերով։ Այստեղ բնության հետ գրեթե հաշվի չեն նստում։ Ամենաաննպաստավոր տարում էլ՝ 1961 թվականին, կոլտնտեսությունը լրիվ կատարեց առաջադրանքները և առաջնությունը նորից չզիջեց ոչ մի մրցակցի։ Այժմ էլ, հարազատ պետությանը հացահատիկ վաճառելուց և բոլոր ֆոնդերն առանձնացնելուց հետո, հանրային պահեստները լիքն են նոր բերքի հացահատիկով. հեկտարի բերքատվությունը տարիներ շարունակ չի իջնում 17 ցենտներից։

Մարդիկ գիտեն և հաստատ հավատում են, որ հանրային հոտի ձմեռումը ինչպես միշտ, այս տարի ևս կանցնի բարեհաջող։ Չէ որ դրա համար ամենաանհրաժեշտ նախադրյալներն արդեն ստեղծված են։ Դեռ հունիս-հուլիս ամիսներին գյուղը ոտքի ելավ՝ մեկուկես տարվա կեր կուտակելու համար։ Կոմունիստներն այն ժամանակ անձամբ էին գլխավորում սոցիալիստական մրցությունը և իրենց օրինակով ոգևորում մյուսներին։ Կոմունիստներ Արտաշ Մխիթարյանի, Անդրանիկ Մելիքյանի, Հայկարամ Նազարեթյանի, Վասիլ Առաքելյանի ջանքերով. առվույտի յուրաքանչյուր հեկտարից ստացվեց ութ տոննա բերք։ Մեկը-մյուսի հետևից բարձրացան խոտի դեզերը, եգիպտացորենի կանաչ զանգվածով լցվեցին սիլոսի հորերն ու աշտարակները։ Կերի կուտակման համար պայքարողները հանգստացան միայն այն ժամանակ, երբ հավաքվեց ու պահեստավորվեց վերջին շյուղը, երբ ամեն մի կովի համար հաշվապահական մատյաններում գրանցվեց ավելի քան 16 տոննա բազմատեսակ կեր։ Եվ այժմ քարտուղարը հիացմունքով է խոսում այն մարդկանց մասին, որոնք պատվով կատարեցին կերի պաշար ստեղծելու առաջադրանքը։

Ժողովի մասնակիցները յուրովի աշխուժություն են դրսևորում, երբ զեկուցողը անդրադառնում է անասնաբուծության բնագավառին։ Իրոք, անասնաբույծները հպարտանալու շատ բան ունեն՝ հարյուր հեկտարի դիմաց նրանք ստացել են 405 ցենտներ կաթ, 80 ցենտներ միս, ամեն մի կովի կաթնատվությունը հասցրել են 2200 կիլոգրամի։ Ժամկետից երկու ամիս շուտ նրանք գերակատարեցին կաթի, մսի, բրդի և ձվի վաճառքի տարեկան առաջադրանքները։

Պարտիական կազմակերպությունը դեռևս տարեսկզբին մշակեց ու իրագործեց օգտավետ շատ միջոցառումներ, որոնք մեծ չափով նպաստեցին անասնաբուծության զարգացմանը։

Բայց տնտեսությունում դեռ ստվերոտ տեղեր, անավարտ գործեր, առաջընթացն արգելակող խոչընդոտներ կան։ Քարտուղարը չի մոռանում խոսել այն թերությունների մասին, որոնք նկատվում են այս կամ այն տեղամասում։ Օրինակ, բազմիցս խոսվել է կովերի կիթը մեքենայացնելու մասին, բայց գործնա-



կանում ոչինչ չի արված։ Քիչ հնարավորություններ չկան հացահատիկի բերքատվությունը բարձրացնելու համար. հաճախ աչքաթող է արվում այնպիսի հնարավորություն, ինչպիսին հացահատիկի դաշտերի ոռոգումն է։ Բայց չէ որ այդ մասին քիչ որոշումներ չի ընդունել պարտիական կազմակերպությունը։

— Մեզանից յուրաքանչյուրը,— եզրափակում է քարտուղարը,— պետք է քաջ իմանա, որ ամեն մի լավ բան ծնվում է մարդու բարեխիղճ աշխատանքով։ Ազնիվ աշխատանք, այս պետք է լինի յուրաքանչյուրի խորհրդանիշը։ Մեր շարքերում էլ դեռևս կան մարդիկ, որոնք խուսափում են հանրօգուտ աշխատանքից, ինչպես մեր հարգելի Ջագլաղան է ասում՝ նրանց խիղճը մնացել է իրենց տնամերձում։

— Այդպիսիները գործ չունեն մեր համերաշխ, աշխատասեր ընտանիքում,— տեղից բացականչում է ժողովականներից մեկը։

— Այո՛, գործ չունեն, բայց պորտաբույծների դեմ պետք է պայքարեն բոլորը, որպեսզի նրանք զգան կոլեկտիվի ուժը և իմանան իրենց տեղը հանրային արտադրության մեջ։

Ժողովականները բավարարված են պարտբյուրոյի հաշվետվությամբ։ Նրանք իրենց ելույթներում խոսում են վաղվա հեռանկարների մասին, հանդես գալիս արժեքավոր առաջարկություններով ու դիտողություններով։

— Մենք դեռևս վատ ենք կատարում պարտիական կազմակերպության այն որոշումը,— ասում է արտելի նախագահ Լևոն Գևորգյանը,— որը վերաբերում է աշխատողների նյութական շահագրգռվածության սիստեմի կատարելագործմանը. անհրաժեշտ է կարգավորել հավելյալ վարձատրությունը։ Մենք պետք է հասնենք այն բանին, որ մարդը չկորցնի հավատը, իմանա, որ ինքը անպայման կստանա իրեն հասանելիք հավելյալ վարձատրությունը։

Վոլոդյա Եղիազարյանն առաջարկում է ամառանոցում կառուցել տիպային հարմարավետ շենքեր և մինչև ձմեռնամուտ հանրային հոտը պահել այնտեղ, ավելի երկար ժամանակով օգտագործել արոտավայրերը։

Հաշվի առնելով տարիների փորձը, կոմունիստ Գարեգին Հարությունյանը գտնում է, որ պետք է ունենալ եգիպտացորենի սեփական սերմնադաշտ։ Դա մեզ հնարավորություն կտա, ասում է նա, տեղական պայմաններին հարմարեցված, բերքատու սերմեր ունենալ։

Իր ելույթը մեքենաների պահպանմանն ու տեխնիկական խնամքին է նվիրում մեխանիկ Մկրտիչ Գասպարյանը. նա առաջարկում է կառուցել արհեստանոցի շենք, ինչպես և տանիքավոր սրահներ։

Բազմաթիվ արժեքավոր առաջարկություններ և քննադատական դիտողություններ արվեցին ագիտացիոն-մասսայական աշխատանքի, կոմունիստների քաղաքական ուսուցման, աշխատանքային կարգապահության ամրապնդման, արտադրվող մթերքների ինքնարժեքի իջեցման և այլ հարցերի վերաբերյալ։ Խնդիր դրվեց ստեղծել գյուղատնտեսության էկոնոմիկան և առաջավոր փորձն ուսումնասիրող կոլտնտեսային համալսարան։

Ուշ երեկոյան միայն ժողովատեղում մարեցին լույսերը։ Կոմունիստները տուն էին գնում, խորհելով նոր բնագծեր նվաճելու մասին։

ԱԼ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
Վ. ԲԵՅԲՈՒԹՅԱՆ

# ԳՈՐԾՈՒՆ ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅՈՒՆ

Երևանի էլեկտրաապարատների գործարանի որ տեղամասում էլ լինեք, կզգաք, որ մարդիկ իրենց ողջ եռանդը դրել են գործի մեջ, որպեսզի այն հաջող ընթանա, ձեռնարկությունն ավելի շատ էլեկտրական վահաններ, մագնիսային կայաններ, ծրարային փոխանջատիչներ և այլ էլեկտրական սարքեր թողարկի։ Չէ՞ որ մեծ է դրանց պահանջը. արդյունաբերության զանազան ճյուղերում ու շինարարության մեջ դրանք օգտագործվում են հաստոցների ու մեխանիզմների էլեկտրական կարգավորման համար։

Ոգեշունչ, խանդավառ աշխատանքը գործարանի կոլեկտիվին նորանոր հաջողություններ է բերում։ Տարեկան պլանը 103 տոկոսով կատարելու համար ռեսպուբլիկայի արտադրական ձեռնարկությունների կոլեկտիվների ծավալած սոցիալիստական մրցության մեջ գործարանը առաջավոր տեղ է նվաճել։ Ձեռնարկությունն այս տարվա անցած տասն ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարել է 105,3, ապրանքայինը՝ 102,9 տոկոսով։ Հաջողությամբ իրականացվել են արտադրանքի բոլոր հիմնական տեսակների թողարկման առաջադրանքները, զգալի չափով բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, իջել արտադրանքի ինքնարժեքը։ Նախորդ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ թողարկվող արտադրանքի ծավալը մեծացել է 34,6 տոկոսով։

Երբ թափանցում ենք այս թվերի էության մեջ, ապա դրանք դառնում են պերճախոս մի պատմություն գործարանի մարդկանց սխրագործ աշխատանքի մասին։ Այդ թվերը արտահայտությունն են պարտիայի XXII համագումարի որոշումների անշեղ կենսագործման համար պայքարելու նրանց հաստատակամության։

Իսկ կոլեկտիվի ոգին, նրան ոգեշնչողը գործարանի պարտիական կազմակերպությունն է։ Ուժեղ է այն, մարտունակ։ Այդ մասին վկայում են ո՛չ միայն գործարանի աշխատանքի կոնկրետ արդյունքները, այլև այն պրակտիկ գործերը, որ կատարել են պարտիական կազմակերպությունը և նրա բյուրոն արտադրության վերելքն ապահովելու համար։

Գործարար մարդիկ են այս ձեռնարկության կոմունիստները։ Դա ակնառու երևաց պարտկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում։ Թե՛ պարտբյուրոյի քարտուղար Ք. Թադևոսյանը հաշվետու զեկուցման մեջ, թե՛ ելույթ ունեցող կոմունիստները հանգամանորեն վերլուծելով իրենց գործունեության արդյունքները, ցույց տվին դրականը և այն թերին, որ դեռևս կա պարտկազմակերպության աշխատանքում։

Հաշվետու ժամանակաշրջանում էլեկտրաապարատների գործարանի սկզբնական պարտիական կազմակերպությունն ուժեղացրել է իր վերահսկողությունը ձեռնարկության ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ. այդ պարտիայի այսօրվա կարևորագույն պահանջներից մեկն է։ «Ներկայումս,— ասել է Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ XXII համագումարում,— առաջնահերթ նշանակություն է ստանում վերից վար և վարից վեր պարտիական, պետական ու հասարակական վերահսկողության հարցը։ Վերահսկողությունը կոմունիստական շինարարության ղեկավարումը կատարելագործելու ազդու միջոց է»։

Պարտիական խիստ վերահսկողություն սահմանել՝ այդ նշանակում է թափանցել էկոնոմիկայի հարցերում, գտնել և ցույց տալ ռեզերվներն ու հնարա-



վորությունները լրիվ օգտագործելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու կոնկրետ ուղիները, ժամանակին բացահայտել թերությունները և կազմակերպական եռանդուն գործունեությամբ վերացնել դրանք։ Ինչպես ցույց տվեց ժողովը, գործարանի պարտբյուրոյի նիստերում և պարտիական ժողովներում պարբերաբար քննարկվել են ցեխերի ու տեղամասերի պետերի զեկուցումները, նրանց ուշադրությունն է հրավիրվել տեխնիկայի ու տեխնոլոգիայի կատարելագործման, մեքենաների ու սարքավորումների արտադրողականության բարձրացման, արտադրական տարածությունների արդյունավետ օգտագործելու, աշխատանքն ավելի լավ կազմակերպելու և արտադրանքի թողարկումն ավելացնելուն նպաստող այլ կարևոր հարցերի վրա։ Արտադրության «նեղ» տեղերը վերացնելու նպատակով իրականացվել են համապատասխան միջոցառումներ։

Գործարանի թողարկած էլեկտրաապարատների որոշ տեսակներ հնացել էին. 1962 թվականի մարտին գործարանի կոլեկտիվին հանձնարարվեց յուրացնել ՐՊ—2, ՐՊ—3, ՊԿՊ և «Զեֆյուռ» ապարատների արտադրության տեխնոլոգիան։ Այդ գործը, որը պետք է ավարտվեր չորրորդ եռամսյակում, ձգձգվում էր։ Ի՞նչն էր պատճառը։ Պարտիական բյուրոն պարզեց, որ գործիքային ցեխը, ծանրաբեռնված լինելու հետևանքով, չէր հասցնում պատրաստել նոր ապարատների թողարկման համար անհրաժեշտ սարքավորումներն ու գործիքները։ Այդ ապարատների նախագծերում, որոնք ստացել էր գործարանը, թերություններ կային։ Պարտիական բյուրոյի միջամտությամբ դրոշմների հիմնական նորոգումը գործիքային ցեխից տեղափոխվեց մամլման ցեխ, որտեղ այդ նպատակով ստեղծվեցին համապատասխան պայմաններ։ Գործիքային ցեխի փականագործների տեղամասում կազմակերպվեց երկհերթ աշխատանք, ձեռք բերվեցին նոր տեսակի ապարատների արտադրությունը յուրացնելու համար պահանջվող մետաղներ։ Պարտիական վերահսկողություն սահմանվեց, որպեսզի ժամանակին ու անթերի կատարվեն աշխատանքային գրաֆիկով նախատեսված միջոցառումները, ինչպես և շտկվեն նախագծերում թույլ տրված սխալները։ Այդ ամենի շնորհիվ նոր տեսակի էլեկտրաապարատների արտադրության տեխնոլոգիայի յուրացումը արագացավ և ժամանակին սկսվեց դրանց թողարկումը։

Ինչպե՞ս է ընթանում մեքենաների մոդեռնացումը. չի՞ ձգձգվում, արդյոք, նոր սարքավորումների տեղադրումը, նոր տեխնոլոգիայի կամ ռացիոնալիզատորական առաջարկությունների արմատավորումը։ Հարցեր, որոնք դարձել են կոմունիստների, պարտիական բյուրոյի ամենօրյա մտահոգության առարկան։ Ամեն ամիս քննարկվում են արտադրության տեխնիկական զինվածությունը բարձրացնելու ուղղությամբ կատարված աշխատանքի արդյունքները. այդ օգնում է տվյալ բնագավառում եղած թերությունները ժամանակին վերացնելու։ Անցած մեկ տարում այստեղ շահագործման են հանձնվել երկու մագնիսային կայանների և բլոկային նոր ցեխերը, տեղադրվել և գործարկվել են 18 նոր, բարձր արտադրողական հաստոցներ, մոդեռնացվել են մի շարք մեքենաներ, մամլման ցեխում անց է կացվել կոնվեյերային գիծ և այլն։ Այս տարի ձեռնարկության նորարարներն արել են 95 առաջարկություն, որոնցից մոտ 70-ը ներդրվել է արտադրության մեջ։ Այդ առաջարկությունների ներդրումից ստացվող տարեկան պայմանական օգուտը հասնում է 40 հազար ռուբլու։

Արտադրական խորհրդակցությունների ու տեխնիկական կոնֆերանսների

հրավիրումը, հասարակական ստուգատեսները, ռեյդերը և նման այլ միջոցառումներ օգնում են պարտիական և հասարակական վերահսկողությունն ավելի մասսայական դարձնելուն: Արդյունավետ գործ են կատարել ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ պարտկազմակերպության վերահսկողությունն իրականացնող հանձնաժողովները: Հաշվետու ժամանակաշրջանում նոր տեխնիկայի արմատավորմանը վերահսկող հանձնաժողովը հենվելով պարտիական, արհմիութենական և կոմերիտական ակտիվի վրա, գործնական օգնություն է ցույց տվել մեխանիկական, գործիքային և այլ ցեխերի ղեկավարներին՝ արագացնելու սարքավորումների տեղադրումն ու գործարկումը: Թողարկվող արտադրանքի որակին վերահսկող հանձնաժողովի միջամտությամբ հավաքման ցեխում բարձրացել է էլեկտրասարքերի հավաքման որակը:

Միաժամանակ հաշվետու-ընտրական ժողովում ընդգծվեց, որ գործարանը կարող էր ավելի մեծ արդյունքների հասնել, եթե առանձին տեղամասերում լավ կազմակերպվեր աշխատանքը, ավելի խելացի օգտագործվեին սարքավորումները: Հատկապես առանձին սրությամբ դրվեց թողարկվող արտադրանքի որակը բարձրացնելու հարցը: Նշվեց, որ այս տարի ձեռնարկությունն ստացել է քսան ռեկլամացիա, որն ամենևին էլ նորմալ երևույթ չէ: Իսկ ի՞նչն է ցածրորակ արտադրանք թողարկելու պատճառը:

— Մեր ձեռնարկությունը, ընդհանուր առմամբ, համաչափ է աշխատում,— ասաց իր ելույթում գործարանի գլխավոր մեխանիկ Խ. Տեր Մխիթարյանը,— բայց նույնը չի կարելի ասել մամլման, հավաքման և գործիքային ցեխերի մասին, որոնց կոլեկտիվներն ամսվա առաջին կեսին թուլացնում են աշխատանքի տեմպը, որի պատճառով երկրորդ կեսում նրանք հարկադրված են դիմելու գրոհայնության: Իսկ այդ բացասաբար է անդրադառնում նրանց թողարկած արտադրանքի որակի վրա:

— Մեքենաներն ու սարքավորումները երբեմն ժամանակին չնորոգելու և վատ խնամելու հետևանքով,— իր ելույթում ասաց ֆրեզերագործ Գ. Մանասարյանը,— անկանոն են աշխատում և խոտան արտադրանք տալիս:

Պարտիական բյուրոն և գործարանի դիրեկցիան անբավարար են հոգ տարել բանվորական կադրերի աճեցման, նրանց աշխատանքի համար պատշաճ պայմաններ ստեղծելու մասին: Դրա հետևանքով լինում է բանվորական ուժի մեծ հոսունություն:

— Մենք գործն իմացողներին ազատում ենք և անընդհատ նոր մարդիկ ընդունում,— իր ելույթում ասաց Ա. Ենգոյանը:— Հասկանալի է, որ դրա հետևանքով արտադրանքի որակն էլ կիջնի: Պարտկազմակերպությունը պետք է միջոցների դիմի բանվորական ուժի հոսունությունը կանխելու համար:

Ավագ կոմպլեկտավորող Ա. Գալստյանը պարտկազմակերպության ուշադրությունը հրավիրեց մետաղները խնայողաբար ծախսելու վրա:

Ժողովում քննադատվեց Ժողտնտխորհի էլեկտրատեխնիկական և սարքաշինության արդյունաբերության վարչությունն այն բանի համար, որ վարչության ղեկավարները հազվադեպ են լինում ձեռնարկությունում, ժամանակին չեն լուծում պլանավորման և մատակարարման հարցերը:

Էլեկտրասարքերի գործարանի կոմունիստները համակված են մեկ ցանկությամբ՝ ավելի արագ զարգացնել արտադրությունը, որի համար ջանք չեն խնայում:

**Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ**

---



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԻ ԵԼՈՒՅԹՆԵՐԻ ՆԵՐԳՈՐԾՈՒՆՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն քննության առավ սովետական մամուլի ելույթների ներգործունությունը բարձրացնելու հարցը: 1962 թվականի սեպտեմբերի 18-ին այդ հարցի առթիվ ընդունված որոշման մեջ նշվում է, որ ՍՄԿՊ XXII համագումարից հետո անցած ժամանակամիջոցում որոշ չափով բարձրացել է մեր մամուլի ընդհանուր մակարդակը, աճել նրա կազմակերպական դերը: Պարտիական ու հասարակական կազմակերպությունների, պետական կոմիտեների, մինիստրությունների, գերատեսչությունների ու ձեռնարկությունների մեծ մասն ուշադիր հետևում է թերթերին ու ժուռնալներին, ժամանակին հասարակայնությանը իրազեկ դարձնում ձեռնարկված միջոցառումներին, օգտագործում է մամուլի օգնությունը տնտեսական-քաղաքական խնդիրները հաջողությամբ լուծելու համար:

Միաժամանակ ՍՄԿՊ Կենտկոմը նշեց, որ կան փաստեր, երբ թերթերի ու ժուռնալների ելույթները չեն պաշտպանում որոշ պարտիական օրգաններ, մինիստրություններ, հիմնարկներ ու գերատեսչություններ: Պարտիական կոմիտեները, սովետական, տնտեսական և արհմիութենական օրգանները հաճախ ոչ ժամանակին ու գործարար կերպով են արձագանքում մամուլի այն ելույթներին, որոնցում պրոպագանդվում է առաջավոր փորձը, պատմվում աշխատավորների հայրենասիրական նախաձեռնության մասին, որի նպատակն է արագացնել տեխնիկական առաջադիմությունը, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, լավ օգտագործել ռեզերվները, իջեցնել արտադրանքի ինքնարժեքը, հաջողությամբ կատարել ՍՄԿՊ XXII համագումարի որոշումները: Դրա հետևանքով արդյունաբերության և գյուղատնտեսության աշխատողների շատ արժեքավոր ձեռնարկումներ, որոնց մասին գրում են թերթերն ու ժուռնալները, պատշաճ տարածում չեն գտնում, դանդաղ են արմատավորվում արտադրության մեջ:

Կան փաստեր, երբ որոշ կազմակերպությունների ու հիմնարկների ղեկավարներ ամեն կերպ ձգտում են հերքել մամուլի արդարացի քննադատական ելույթները, ամեն տեսակ «արդարացուցիչ փաստարկներ» են գտնում, կամ էլ խոսքով ընդունում են քննադատությունը, բայց գործնական ոչինչ չեն անում թերությունները վերացնելու համար:

Հազվադեպ չեն այն դեպքերը, երբ կազմակերպությունները, գերատեսչություններն ու հիմնարկները անպատասխան են թողնում աշխատավորների այն նամակներն ու ահազանգերը, որոնք հրապարակված են մամուլում կամ թերթերի ու ժուռնալների խմբագրություններն ուղարկում են տեղերը՝ միջոցներ ձեռք առնելու համար: ՍՄԿՊ Կենտկոմի որոշման մեջ բերվում են նման օրինակներ. «Տրուդ» թերթում ընթացիկ տարվա վեց ամսում հրապարակվել է 218 նյութ, որոնցում քննադատության են ենթարկվել արհմիութենական ու տնտեսական օրգանների, արդյունաբերական ձեռնարկությունների, սովխոզների, հիմնարկների աշխատանքում եղած թերությունները: Սակայն «Տրուդ» թերթի խմբագրությունը հաղորդումներ է ստացել միայն 129 քննադատական ելույթների կապակցությամբ ձեռնարկված միջոցառումների մասին: Կազմակերպությունների, ձեռնարկությունների և գերատեսչությունների ավելի քան 200 ղեկավարներ չեն պատասխանել «Ստրոիտելնայա գազետա»-ի ելույթներին:

ՍՄԿՊ Կենտկոմի որոշման մեջ մատնանշվում է, որ մամուլի ահազանգումների նկատմամբ ցուցաբերվող աղայական-արհամարհական վերաբերմունքը, հեղինակության և փիրավորանքի նըրկատառումները պարտիական ու պետական շահերից վեր դասելու ձգտումը վնաս են հասցնում կադրերի դաստիարակության գործին, անհամատեղելի են ՍՄԿՊ անդամի բարձր կոչման հետ:

Միաժամանակ ՍՄԿՊ Կենտկոմը նշեց, որ որոշ թերթերի ու ժուռնալների խմբագրություններ թույլ են պայքարում հրապարակված նյութերի գործունեության բարձրացման համար: Հաճախ ելույթների ներգործունության վերահսկողությունը խմբագրություններում մղվում է հետին պլան, դիտվում որպես երկրորդական գործ: Դրա հետևանքով հասարակայնությանը միշտ չէ, որ իրազեկ են դարձնում մամուլի ելույթների կապակցությամբ ձեռք առնված միջոցառումներին:

Ոչ բոլոր խմբագրություններն են հաղթահարել պարտիական ժուռնալիստիկային խորթ նախայնպիսի մի մնացուկ, ինչպիսին է հրապարակվող նյութերի աննշտությունը: Որոշ ժուռնալիստների գրչի տակ մեր կյանքում եղած առանձին թերություններ ուռցվում և չափազանցվում են, մի բան, որ թյուր պատկերացում է ստեղծում սովետական իրականության մասին: Մամուլի որոշ աշխատողներ մինչև այժմ չեն հրաժարվել այն սխալ տեսակետից, որի համաձայն «հինգ տոկոս

կոշիկների վրա, պիջակի ուսերին նստած փոշու բարակ շերտը ցույց էր տա-
լիս, որ օրվա մեծ մասն անց է կացրել դաշտում։

***

Սովխոզի դիրեկտորը՝ Սարգիս Սարգսյանը, միջին տարիքի մարդ է։ Գլխի-
սև, կիսագանգուր մազերի մեջ արդեն երևում են արծաթափայլ ծամեր։ Սար-
գըսյանն ավելի քան 15 տարի է, ինչ վարում է այդ մեծ տնտեսությունը։
Աշխատանքում նա խստապահանջ է։ Պախարակում է նրան, ով անկար-
գապահ է, ձգձգում և վատ որակով է կատարում հանձնարարված գործը։ Դրա
հետ միասին Սարգսյանը հոգատար է իր ենթակաների նկատմամբ, ջանք չի
խնայում հոգալու նրանց կարիքները, բավարարելու նրանց աշխատանքային
և կուլտուր-կենցաղային պայմանները։ Ասում են, որ մի անգամ նա խիստ
բարկացել է տրակտորիստ Ազատ Օհանյանի վրա ու հանդիմանել՝ հանձնա-
րարված գործը անբավարար կատարելու համար, պահանջել է վերացնել այդ
թերությունը։ Մի քանի օր անց, երբ Օհանյանը դիմել է դիրեկտորին իր բնա-
կարանի վերանորոգման խնդրով, բավարար պատասխան է ստացել։
Սարգսյանի դիրեկտորության տարիներին սովխոզում տնկվել են մոտ 100
հեկտար խաղողի և 45 հեկտար պտղատու այգիներ։ Ազնիվ, ջանասեր աշխա-
տանքի համար նա պարգևատրվել է Լենինի շքանշանով, արժանացել վաստա-
կավոր ագրոնոմի կոչման։ Լսելով, թե ինչ նպատակով եմ ես եկել սովխոզ,
նա սիրով ինձ առաջնորդեց դեպի գրասենյակը։
Սովխոզի հողատարածությունների, այգիների ու ցանքերի դասավորու-
թյունը նա անգիր գիտեր, սակայն սեղանի վրա փռեց քարտեզը (սովխոզի
«Ներտնտեսական հողաշինարարության նախագիծը») ու դիտելով այն, սկսեց
պատմել.

— Սովխոզը կազմակերպվել է քառասուն տարի առաջ՝ Աթարբեկյաննե-
րի կալվածքի վրա։ Այգիների տարածությունը եղել է աննշան, վարելահողե-
մի մասում ցանել են բրինձ, մի մասում մշակել են այլ կուլտուրաներ, իսկ
մեծ մասը մնացել էր անմշակ՝ ջրի պակասության պատճառով։ Այժմ ունենք
1100 հեկտար հողատարածություն, որից 400 հեկտարը գրավում են խաղողի,
150-ը՝ պտղատու այգիները, 71 հեկտարը վարելահողեր են, 3-ը՝ տնկարան-
ներ, մնացած տարածության մի մասն ավազն է, մի մասը ճանապարհները։
Միայն վերջին երեք տարիներին բերքատու այգիների տարածությունն ավելա-
ցել է մոտ հարյուր հեկտարով և այժմ այն հասնում է մոտ 340 հեկտարի։ Սով-
խոզում մշակում ենք ավելի քան հիսուն տեսակ խաղող, այդ թվում՝ ոսկե-
հատ, երևանի, արևիկ, մուսկաթ (սպիտակ, վարդագույն և սև), սապերավի,
նազենի, ռկածիթելի, բանանց, կիրովաբադի և այլն։
Սովխոզի այգետարածությունների, նրանից վիճակի ու խաղողի մշակու-
թյան մասին հակիրճ պատմելուց հետո ընկեր Սարգսյանը գլուխը բարձրաց-
րեց քարտեզի վրայից ու ինձ հարցրեց.

— Ուրիշ ի՞նչ է հետաքրքրում ձեզ։
Ես խնդրեցի պատմել սովխոզի տնտեսական ու ֆինանսական վիճակի և
այն մասին, թե ինչպես են կատարվում պետական առաջադրանքները։ Այս
բանում դիրեկտորին լրացրեց սովխոզի գլխավոր հաշվապահ Գարեգին Հով-
հաննիսյանը։ 1959 թվականին 254 հեկտար խաղողի բերքատու այգիներից



ստացվել է 18390 ցենտներ բերք, կամ յուրաքանչյուր հեկտարից՝ միջին հաշվով
72 ցենտներ։ Տնտեսությունն այդ տարի ունեցել է 630 հազար ռուբլու (նոր
դրամով) եկամուտ, 320 հազար ռուբլի մաքուր շահույթ։ 1962 թվականին 340
հեկտար խաղողի բերքատու այգիներից սոցիալիստական պարտավորությամբ
ստանձնած 22 հազար ցենտների փոխարեն ստացվել է 25 հազար ցենտներ
համախառն բերք, կամ յուրաքանչյուր հեկտարից՝ միջին հաշվով 78 ցենտներ։
Սովխոզի ընդհանուր եկամուտը հասել է 1 միլիոն 400 հազար, մաքուր շա-
հույթը՝ 700 հազար ռուբլու։ Տնտեսությունն ունի նաև անասնաբուծական ֆեր-
մա, որը կատարել է պետական առաջադրանքները։ Գործերը հաջող են ընթա-
ցել նաև պտղաբուծական ցեխում։

Խաղողի առատ բերք ստանալու հիմնական պայմանը՝ լիարժեք այգետա-
րածություններ ունենալն է։ Գիտակցելով այդ՝ սովխոզի յուրաքանչյուր բան-
վոր ու բանվորուհի, մեխանիզատոր ու մասնագետ ձգտում է ամեն մի հեկտա-
րի վրա պահպանել ու աճեցնել սահմանված քանակի՝ 2500—2700 վազ, իսկ
առանձին տեսակներից՝ 3500—4000։ Այդ է պատճառը, որ խաղողի այգինե-
րում ոչ մի մետր բաց տարածություն չկա։ Թմբերի վրա փարթամորեն աճած
և լարերին փաթաթված որթերի ճյուղերից կախված ոսկեգույն ողկույզները
շողշողում են արևի ճառագայթների տակ։

Սովխոզի ողջ կոլեկտիվը վաղ գարնանից սկսած խնամքով և ուշադիր
մշակում է այգիները։ Էտը, բուժումը, այգեփորը, ոռոգումը, կանաչատումը
կատարում են ագրոկանոններին համապատասխան։ Այգեմշակման մի շարք
գործեր (փոշոտումը, միջշարային տարածությունների փխրեցումը) կատար-
վում են մեքենաներով։ Որոշ պրոցեսների մեքենայացման շնորհիվ զգալի չա-
փով կրճատվել է այդ բնագավառներում աշխատող բանվորական ուժը և այն
օգտագործվում է ավելի աշխատատար պրոցեսներում։

Այգեկութից հետո, երբ վրա է հասնում ուշ աշունը, մարդիկ խնամքով
վազը ծածկում են 15—20 սանտիմետր հաստությամբ հողի շերտով, որպեսզի
սառնամանիքներից չվնասեն։

Խաղողի այգիներից 1962 թվականին առատ բերք ստանալու համար ծա-
վալված պայքարը սկսվել է դեռևս նախորդ տարվանից։ Դեկտեմբեր ամսին
ջրել են բոլոր այգիները՝ վաղ գարնանը հողում անհրաժեշտ քանակությամբ
խոնավություն ապահովելու համար։ Այս տարի սովխոզի այգիներում առաջին
անգամ կատարվել է կոմբինացված սպարտացում, իսկ հունիսի վերջերին և
հուլիսին տրվել է սնուցում, այդ ամենը նպաստել են վազերի արագ ու փար-
թամ աճմանը։ Բերքը կարճ ժամկետում և անկորուստ հավաքելու համար մո-
բիլիզացվել են բոլոր աշխատող ձեռքերը։ Այդ գործին սիրով մասնակցել են
նաև թոշակառուներն ու դպրոցների բարձր դասարաններում սովորողները։

Հոգատար խնամքը աչքի է ընկնում ամենուր։ Երբ շրջում ես սովխոզի այ-
գիներում, հրճվում ես փարթամորեն աճած վազերով, ծիրանի ստվերախիտ
ծառերով, երկնասլաց բարդիներով։ Նախկին անապատը ծածկված է ականա-
պարար կանաչով։ Այդ ամենը ստեղծվել է սովխոզի մարդկանց ազնիվ, հայրե-
նանվեր աշխատանքով, մարդիկ, որոնք համառորեն մաքառել են ջրերը նվա-
ճելու, անապատը ծաղկեցնելու համար։ Այդ մարդկանց մի մասը՝ Վահան
Ղարիբյանը, Սուրեն Սարգսյանը, Մամիկոն Բողոյանը, Մելիք Եղիազարյանը,
Ներսես Պետրոսյանը, Արմենակ Բոբիկյանը, Ենոք Հակոբյանը, Գրիգոր Գևորգ-
յանը, Ավագ Ավագյանը, Բագրատ Հարությունյանը, Եսայի ու Ավետիս Պո-

ղոսյանները և ուրիշներ այժմ սովխոզում չեն, բայց նրանց անունները հիշվում են հարգանքով՝ տնտեսությունը բարձրացնելու գործում նրանց մատուցած ծառայությունների համար։ Շատ շատերը երկար տարիներ է, ինչ աշխատում են սովխոզում։ Կատարելագործելով իրենց մասնագիտությունը, նրանք հմտորեն մշակում են հողը և ձգտում դրանից ստանալ առավելագույն բարիքներ։

Իրենց ազնիվ, բարեխիղճ աշխատանքով խաղողի առատ բերք ստանալու, պետական առաջադրանքներն ու սոցիալիստական պարտավորություններն անթերի կատարելու համար օղակավարներ Գաբրիել Թամազյանը և Ամիր Առաքելյանն արժանացել են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի պատվավոր կոչման։ Այգեգործության բնագավառում լավագույն արդյունքների հասնելու համար կոլեկտիվի վեց անդամներ, այդ թվում՝ ցեխի վարիչ, ագրոնոմ Ալեքսան Ալեքսանյանը և օղակավար Սարգիս Առաքելյանը պարգևատրվել են Լենինի շքանշանով, ինը՝ Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով, շատերն էլ՝ այդ թվում Ռոզա Սարգսյանը, Աշոտ Պետրոսյանը, Թովմաս Թովմասյանը պարգևատրվել են Սովետական Միության մեդալներով։

Այս տարի Գ. Թամազյանի օղակը խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից ստացել է 100 ցենտներ բարձրորակ խաղող, որի զգալի մասն ուղարկվել է երկրի արդյունաբերական կենտրոնները։ Հիանալի բերք է աճեցրել Հենրիկ Աբրահամյանի (կոմերիտական կազմակերպության քարտուղար) օղակը, որն իր խնամած այգետարածության յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացել է 95 ցենտներ բերք։ Բարեխիղճ այգեգործներից են Սմբատ Վարդանյանն ու Անդրանիկ Արթենյանը, որոնք անձնվեր աշխատանքով աճեցնում են խաղողի առատ բերք։

Մեխանիզատոր Անդրանիկ Ցարֆարյանը անխոնջ աշխատում է դաշտում, փխրեցնում միջշարային տարածությունները, փոշոտում այգիները, որպեսզի բերքն առատ լինի։ Աշխատասիրության լավագույն օրինակ է ցույց տալիս ավտովարորդ Գրիգոր Սարգսյանը։ Այսպիսիները շատ-շատ են։ Նրանք իրենց ջանասեր, ազնիվ աշխատանքով պայքարում են, որպեսզի տարեցտարի առաջ գնա սովխոզը, տնտեսապես ավելի հզորանա, ավելի շատ բարիքներ տա երկրին։

***

Սովխոզի այդ արտադրական հաջողություններն արդյունք են պարտիական-քաղաքական, մասսայական դաստիարակչական լավ աշխատանքի, որի նպատակն է հաջողությամբ լուծել սովխոզի առջև դրված տնտեսական խնդիրները։ Պրոպագանդիստական և ագիտացիոն աշխատանքներ են տարվում պարտիայի XXII համագումարի որոշումները, ՍՄԿՊ Ծրագիրը աշխատավորական լայն մասսաներին բացատրելու ուղղությամբ, յոթնամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու նշանաբանով։

Կոմունիստների մեծ մասը, իսկ կոմերիտականները գրեթե ամբողջությամբ, անմիջականորեն աշխատում են արտադրության մեջ։ Նրանք ցեխերի պետեր են, բրիգադավարներ, օղակավարներ, բանվորներ ու բանվորուհիներ, այգի մշակողներ։ Պարտիայի անդամներն արտադրության մեջ կատարում են ավանգարդային դեր։ Սկզբնական պարտիական կազմակերպության քարտու-



ղար, մասնագիտությամբ այգեգործ Ալբերտ Մաշիլյանը ցեխի վարիչ է։ Աշխատանքային բարձր կարգապահության, բանվորների ու բանվորուհիների եռանդուն, նվիրական աշխատանքի շնորհիվ Մաշիլյանի ղեկավարած ցեխը պատվով է կատարել խաղողի և մրգի բերքատվության առաջադրանքները։

Կոմունիստ Ռազմիկ Աբրահամյանի ղեկավարած բրիգադան վերջին երեք տարիներին միշտ էլ ստացել է սովխոզի միջինից բարձր բերք—հեկտարից միջինը՝ 80 ցենտներ։ Այս տարի բրիգադան իր մշակած 26,5 հեկտար այգիներից հեկտարից միջին հաշվով ստացել է 90 ցենտներ խաղող։ Բրիգադայի նշանաբանն է՝ աշխատել ազնվորեն, ավելի քիչ նյութական և աշխատանքային միջոցներ ծախսելով ստանալ ավելի շատ մթերքներ, արժանանալ կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման։

Սովխոզում հիացմունքով են խոսում շարքային բանվորուհի կոմունիստ Մարիամ Ջաթալյանի մասին։ Հավատարիմ մնալով կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի սկզբունքներին, նա գործի մեջ ազնիվ է ու առաջավոր, ընտանիքում համեստ, հոգատար։ Թե՛ այգեբացի, թե՛ էտի, թե՛ քաղհանի ու բերքահավաքի ժամանակ Մարիամը 130—150 տոկոսով է կատարում օրվա առաջադրանքը և լավագույն աշխատանքի օրինակ ցույց տալիս ընկերուհիներին։

Կոմունիստները գլխավորում են սովխոզի աշխատողների պայքարը տնտեսության ներքին ռեզերվները հայտաբերելու, գիտության, տեխնիկայի նվաճումներն ավելի լավ օգտագործելու և առաջավորների փորձը արտադրության մեջ լայնորեն արմատավորելու, սոցիալիստական մրցություն ծավալելու, ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ ստանալու համար։

***

Տարիներ առաջ երրորդ սովխոզի հողատարածությունում կառուցվեց խաղողի վերամշակման սեփական ձեռնարկություն։ Հետագայում, երբ սկսեց հետզհետե ընդարձակվել սովխոզի և նրա շրջակա կոլտնտեսությունների այգետարածությունը, ավելացավ խաղողի արտադրանքը՝ դրան համապատասխան էլ ընդարձակվեց խաղողի մշակման ձեռնարկությունը, դարձավ ինքնուրույն արդյունաբերական օբյեկտ՝ գինու գործարան։ Այն այժմ զբաղեցնում է ավելի քան յոթ հեկտար տարածություն՝ իր լաբորատորիաներով, մառաններով, օղի և սպիրտ թորելու սարքավորումներով և օժանդակ ցեխերով։

Գինու գործարանի դիրեկտորը՝ Խաչիկ Խավթյանը, Հայաստանի հին և փորձված գինեգործներից է. նա սիրով պատմեց այն մասին, որ գործարանում տարեկան մշակվում է ութից-տասը հազար տոննա խաղող, արտադրվում է 500—600 հազար դեկալիտր գինի։ Գործարանի արտադրած մուսկաթը իր համով, բուրմունքով, գույնով մեծ հռչակ է վայելում։ Բարձր հատկությունների համար այն պարգևատրվել է Հարավսլավիայի Լյուբլյանա քաղաքում 1955 և 1957 թվականներին կազմակերպված գինիների միջազգային համտեսի ոսկե մեծ մեդալով, Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի ոսկե մեծ մեդալով։ Սապերավին երաշխավորվում է որպես բուժիչ գինի, սեղանի բազմատեսակ, դեսերտի (քաղցր) գինիները խնջույքների զարդն են։ Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի ոսկյա մեծ և արծաթյա մեդալներով է պարգևատրված այգեշատ, իսկ ոսկե մեծ մեդալով՝ արենի գինի-

ները։ Գործարանը Սովետական Հայաստանի քառասնամյակի պատվին բաց է թողել նոր տեսակի դեսերտի գինի, որը համամիութենական համտեսում արժանացել է ամենաբարձր գնահատականի։

Այս տարի խաղողի մթերման ու վերամշակման սեզոնը լավ նախապատրաստելու և հաջող անցկացնելու շնորհիվ պլանով նախատեսված 7500 տոննայի փոխարեն գինու գործարանն է մտել 11000 տոննա խաղող։ Այժմ նրա մառաններում աշխատանքն է եռում։ Բանվորներն ու մասնագետները՝ Հերայր Վարդանյանը, Ջուլիետա Զաքարյանը, Լևոն Հակոբյանը, Հռիփսիկ Խաչատրյանը խնամքով մշակում են նոր բերքը։ Գործարանի կոլեկտիվը մտահոգված է նոր տեսակի, ավելի հաճելի գինիներով հարստացնել իր արտադրանքի ասորտիմենտը։

***

Կավե հյուղակներ, մի դինգ (բրինձը թեփից մաքրելու համար), կիսաշեն ախոռ։ Ահա այս է «ժառանգել» սովխոզն աղայից։ Մարդիկ ապրում էին խարխուլ տնակներում, զուրկ էին բժշկական օգնությունից, խմում էին առվի պղտոր ու գոլ ջուրը, որը համաճարակների, հատկապես տենդի տարածման աղբյուր էր։ Դպրոցի, կինոյի, գրադարանի, հիվանդանոցի մասին կարելի էր միայն երազել։

Իսկ այժմ, երբ սովխոզը բոլորում է իր գոյության քառասուն տարին, այգիների ու պուրակների մեջ կառուցվել է բանվորական ավան՝ ուղիղ փողոցներով, տուֆակառույց բնակելի տներով, հասարակական ու պետական շենքերով։ Այն ոչնչով չի տարբերվում քաղաքից։ Այստեղ նորակառույց երկու դպրոցում սովորում են դպրոցական հասակի բոլոր պատանիներն ու աղջիկները։ Դասատուներից տասնմեկը տեղացիներ են։ Կառուցված է ակումբ՝ 420 հանդիսատես տեղավորող դահլիճով, մշտական կինոսարքավորումով։ Հաճախ են հանդես գալիս ռեսպուբլիկայի կարող ուժերը, որոնց ներկայացումներն ու համերգները հետաքրքրությամբ դիտում ու լսում են սովխոզի բնակիչները։ Շատ բան է արված մարդկանց բուժսպասարկման գործը լավ կազմակերպելու ուղղությամբ. ավանն ունի հիվանդանոց, ծննդատուն, երկու բուժարան, բաղնիք. առողջապահության բնագավառում աշխատում են 17 մարդ։ Արագածից ջրմուղով բերված է սառնորակ ջուր։ Ավելի քան 200 ընտանիք օգտագործում են բնական գազի օջախները, հրաժարվելով աթարի շշմեցնող ծխից։ Ավանում կա 450 ռադիոընդունիչ, 280 հեռուստացույց, հեռախոսի ներքին հանգույց քսան կետից (որոնցից ութը բնակարաններում), սպորտ հրապարակ՝ լողարանով, ֆուտբոլի դաշտով. երիտասարդներն իրենց հանգիստը սիրով անցկացնում են այստեղ։

Սովխոզում գործում է մանկական երկու կոմբինատ (մսուր և մանկապարտեզ միասին), յուրաքանչյուրը հարյուր երեխայի համար։ Բանվորուհիները վստահությամբ իրենց երեխաներին հանձնելով դայակների ու դաստիարակչուհիների խնամքին, հանգիստ աշխատում են դաշտում։

Ահա շատ համառոտակի նոր, սոցիալիստական տիպի բանվորական ավանի համառոտ նկարագրությունը։ Լիովին համամիտ եմ ծերունի Դավթի հետ, որն ասում է՝ «մեր գյուղը Իրանի շատ քաղաքներից լավ է»։

Այս ավանի բնակիչներն օրինակելիորեն են պահպանում սոցիալիստա-



կան համակեցության կանոնները։ Սովխոզի ղեկավարները հայտարարում են, որ վերջին տասնհինգ տարում տեղի բնակիչներից ոչ մեկը դատի չի տրված, որ այդ ժամանակաշրջանում ամուսնալուծության դեպք չի արձանագրված։

Նախկին բրիգադավար, այժմ բանվորական կոմիտեի նախագահ Անիկ Ավետիսյանը պատմում է, որ սովխոզի կազմակերպման առաջին տարիներին բնակիչների թիվը մի քանի հարյուր էր, իսկ այժմ այստեղ բնակվում են 3200 մարդ։ Դրանց մեծ մասը, կամ նրանց ծնողները ներգաղթել են Արևմտյան Հայաստանի տարբեր նահանգներից, ոմանք պատերազմից առաջ՝ քսանական թվականներին, ոմանք էլ պատերազմից հետո՝ քառասնական թվականներին։ Նրանց այստեղ է բերել Հայրենիքի սերը, ազատության տենչը։

Դավիթ Միքայելյանը, պանդուխտի ցուպը ձեռքին, տասնյակ տարիներ տեղից տեղ է անցել, երկար ճանապարհ կտրել, օրվա հաց վաստակելու, ընտանիքի գոյությունը պահպանելու համար։ Անգլիական գաղութարարների մոտ նա եղել է բեռնակիր, Իրանի խաների մոտ՝ մշակ։ Աշխատել է արևածագից մինչև ուշ երեկո, թափել արյուն-քրտինք, ապրել է կիսաքաղց ու կիսամերկ, առանց օթևանի։ Նա բոլորել էր իր կյանքի վաթսուն տարին, երբ նոր կյանքի ուղի բացվեց նրա առջև։ Ծերունի Դավիթն իր որդու և դուստրերի հետ եկավ Հայրենիք, երիտասարդական ավյունով գործի անցավ երրորդ սովխոզում։

Հոր օրինակով հանրային այգիներում ջանասիրաբար աշխատում է որդին՝ Մարգարը։ Սովխոզում գործի անցնելու առաջին իսկ օրվանից նա իր բոլոր ջանքերը գործադրում է, որպեսզի հողը լավ մշակվի, այգիները փարթամ լինեն և առատ բերք տան։ Իր ազնիվ աշխատանքով նա մեծ սեր է վայելում ընկերների և սովխոզի ղեկավարների մոտ և աստիճանաբար առաջ է գնում։ Այժմ Ավետիսյանը կոմունիստ է, օղակավար և ակտիվ պայքարում է այգիների բերքատվությունը տարեցտարի բարձրացնելու համար։

Միքայելյանների ընտանիքն ունի երկու սենյակից բաղկացած, ճաշակով կահավորված բնակարան։ Մարդիկ, որ օտարության մեջ գիր ու գրականությունից, կրթություն ստանալու հնարավորությունից զուրկ էին, այսօր մայրենի լեզվով կրթություն են ստանում. ընտանիքում ստանում են չորս անուն լրագիր ու ամսագիր։

Ահա հայրենի հողում ապավեն գտած մեկ ուրիշը՝ Գաբրիել Թամազյանը։ Նա դեռահաս երիտասարդ էր, երբ չորս եղբայրների հետ առաջին անգամ ոտք դրեց հայրենի հողի վրա։ Նրա առջև բացվեց երջանիկ կյանքի լայն ասպարեզ։ Ցերեկը նա բանում էր այգիներում, երեկոյան սովորում դպրոցում։ Սերը դեպի գործն ու դպրոցը նրան առաջ են մղում։ Կարճ ժամանակ անց Գաբրիելը նշանակվում է օղակավար։ Այս գործում նա դրսևորում է իր ունակությունները, ազնիվ ու բարեխիղճ աշխատանքով աճեցնում բարձր բերք։ Երիտասարդի ջանքերն ապարդյուն չեն անցնում։ Այգեգործության մեջ լավագույն ցուցանիշներ ձեռք բերելու համար ՍՍՌ Միության Գերագույն Սովետի Նախագահությունը Գաբրիել Թամազյանին շնորհել է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում։ Այդ պատիվը նրան նոր սխրանքների է կոչում։ Սովխոզի օժանդակությամբ նա սովորել է և ավարտել այգեգործական տեխնիկումը, որից հետո նշանակվել բրիգադավար։ Այժմ Թամազյանի ձգտումն է ստանալ բարձրագույն կրթություն. իր ջանասիրությամբ նա այդ նպատակին էլ կհասնի։

Իր կյանքի պատանեկան ու երիտասարդական տարիներին ընչազուրկ Հռիփսիմե Ղազարյանը թափառելով արաբական բազմաթիվ երկրներում, թըշ-

*վառության մեջ ճաշակել է կյանքի բոլոր դառնությունները: Նա տեսել է կոտորածներ, համաճարակներ, սով. բայց ամեն անգամ մի պատահականությամբ փրկվել է մահից ու մի կերպ պահպանել իր գոյությունը:*

*Հայրենիք վերադառնալով 1946 թվականին, Հռիփսիմեն ընտանիքով բնակություն է հաստատում երրորդ սովխոզում: Ինքն ու ամուսինն զբաղվում են այգեգործությամբ, երեխաները դպրոց են գնում: Շուտով Հռիփսիմեն արժանանում է բոլորի սիրուն: Արտադրության մեջ աղնվորեն աշխատելու շնորհիվ նա վայելում է իր աշխատանքի ընկերների ջերմ համակրանքը և ընտրվում աշխատավորների դեպուտատների Էջմիածնի շրջանային Սովետի դեպուտատ: Նա կարոտով սպասում է այն օրվան, երբ օտարությունից կվերադառնա եղբայրը: Այդ մասին նա շատ է մտահոգվում ու հաճախ դիմում է սովխոզի դիրեկտորին:*

*— Ընկեր Սարգսյան, Շամը ինչքան էլ շաքար լինի, Հայրենիքը նրանից քաղցր է, օգնեք՝ եղբայրս գա այստեղ:*

*Միայն Հռիփսիմեն չէ, որ փափագում է իր եղբոր գալստյանը և միայն նրա եղբայրը չէ, որ փափագում է ապրել ազատ հայրենիքում:*

*Ես այստեղ հիշատակեցի Միքայելյանի, Թամազյանի և Ղազարյանի ազգանունները: Բայց նրանք եզակի չեն, շա՜տ շատ են՝ հարյուրներ ու հազարներ: Նրանց կհանդիպենք ոչ միայն Էջմիածնի երրորդ սովխոզում, այլև ռեսպուբլիկայի բոլոր բնակավայրերում՝ արդյունաբերության ու գյուղատնտեսության մեջ, գիտական լաբորատորիաներում ու կուլտուրական օջախներում, դպրոցներում ու հիվանդանոցներում: Օտարությունից վերադառնալով իրենց հայրենիքը՝ Սովետական Հայաստան, նրանք կատարում են բեղմնավոր գործ, վայելում ազատության ու երջանկության պտուղները: Ահա թե ինչու այսօր Սփյուռքի հայության մեծ մասի հայացքն ուղղված է մեր արևաշող հայրենիքին: Չի անցնի երկար ժամանակ, նրանց բոլորի իղձն էլ կկատարվի:*

*Երրորդ սովխոզում առաջիկա տարիներին հիմնականում պայքար է ծավալվելու այգիների բերքատվությունը բարձրացնելու համար, քանի որ բերքատվության ներկա վիճակը (հեկտարից՝ 78 ցենտներ) գոհացուցիչ չէ: Այդ նպատակով ավելի է կատարելագործվելու այգիների մշակության կուլտուրան ու աշխատատար պրոցեսների մեքենայացումը: Ավանում կառուցվելու են 20 բնակարաններ՝ բոլոր հարմարություններով, դպրոցի և հիվանդանոցի նոր շենքեր և այլն:*

*Սովխոզի համերաշխ կոլեկտիվը, թանկ գնահատելով հողագործ-այգեգործի պատիվը, անձնվիրաբար ջանում է կատարել յոթնամյակի առաջադրանքներն ու գալիք տարիներին ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ տալ Հայրենիքին:*

Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

# Արվեստասերի ԱՄԲԻՈՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԵՐԳԻԾԱԲԱՆՈՒԹՅԱՆ ՄԻ ՔԱՆԻ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Լենինյան նորմերի վերականգնումը մեր կյանքում սկսվեց ՍՄԿԿ XX համագումարից: Սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումը, քննադատության ու ինքնաքննադատության ծավալումը խիստ նպաստավոր պայմաններ են գրական այն ժանրերի համար, որոնք անհատի պաշտամունքի հետևանքով անտեսվել, մոռացության էին մատնվել կամ սխալ ուղղություն էին ընդունել: Չնայած որոշ հաջողություններին, այնուամենայնիվ, երգիծաբանությունը մինչև օրս էլ մնում է սովետական գրականության ամենից ավելի ետ մնացող բնագավառը: Հասկանալի է, որ անհատի պաշտամունքի պայմաններում այն զարգանալու հնարավորություն չուներ:

Ընկ. Խրուշչովը, մատը դնելով հենց այդ վերքի վրա, ասում է. «Գրողների, նկարիչների, կոմպոզիտորների, կինոյի ու թատրոնի գործիչների աշխատանքի կանխակալ, ոչ օբյեկտիվ գնահատականը անխուսափելիորեն հասցնում է այն բանին, որ նրանք կորցնում են վստահությունը աշխատանքում, վհատվում են, թուլանում է նրանց ստեղծագործական ակտիվությունը» [1]:

Երգիծանքի սուր զենքը հարկավոր է ուղղել հենց այն մարդկանց դեմ, որոնք խախտում են լենինյան նորմերը, սովետական դեմոկրատիայի սկզբունքները, պարտիական-պետական օրինականությունը, հասարակական գործերը վնասում են՝ ելնելով սեփական կամ խմբակային շահերից, անձնական համակրանքի կամ հակակրանքի զգացումներից, կանխակալ կարծիքներից ու նկատառումներից, որոնք շարունակում են աշխատել հին ոճով, հին մեթոդներով:

XXII համագումարից հետո երգիծանքի դերն ավելի է մեծանում, մանավանդ որ մեր առջև դրված է ժողովրդական զանգվածների կոմունիստական դաստիարակության, նոր մարդու ձևավորման խնդիրը:

Երգիծանքը հարկավոր է ետ մնացողներին բզգաստացնելու, առաջ մղելու, անցյալից եկած վնասակար բարքերի ու հակումների դեմ կռվելու, հին մնացորդներից մարդկանց զերծ պահելու համար:

Սխալ և վնասակար է այն մտայնությունը, թե մեզանում երգիծաբանության համար հող չկա: Դեռևս իր ժամանակին Մ. Գորկին, առաջադրելով երգիծաբանությանը զարկ տալու պահանջը, գրում էր. «Չէ՞ որ մեզ մոտ ևս կան այնպիսի թերություններ, որոնց դեմ պետք է կռվել երգիծանքի զենքով»:

Անմտություն է պատկերացնել արդի գրականությունն առանց երգիծանքի, առանց հեգնանքի, առանց հումորի: Ինչպես ծիծաղը անբաժան է կյանքից, այնպես էլ երգիծանքը պետք է անբաժան լինի գրականությունից: Երգիծանքը նախ և առաջ կատարում է հոգեբանական ֆունկցիա՝ իբրև ծիծաղի, զվարթության աղբյուր, որի կարիքը մարդիկ միշտ էլ զգացել են ու կզգան: Մյուս կողմից այն կատարում է սոցիալ-քաղաքական ֆունկցիա այն չափով, որ չափով ծառանում է վատի դեմ, մերկացնում մեր ճանապարհին եղած բացասականը:

Սակայն ծաղրը միայն քայքայող, կործանող ուժ չէ, այլև կազմակերպող ուժ: Այս առումով այն կատարում է մանկավարժական մեծ դեր, նպաստում ժողովրդական լայն զանգվածների դաստիարակման գործին: Կան հակահասարակական, բարոյական և այլ կարգի շատ թերություններ, որոնց դեմ հնարավոր չէ կռվել ո՛չ օրենքներով ու բանտերով, ո՛չ բանաձևերով ու որոշումներով: Դրանց դեմ կարելի է կռվել միայն երգիծանքի միջոցով: Չէ՞ որ հակահասարակական արարքների ամեն մի հեղինակ իրեն հերոս է երևակայում: Ցույց տվեք, որ նա հերոս չէ,

[1] Ն. Ս. Խրուշչով, *«Դեպի գրականության ու արվեստի նոր հաջողությունները», 1961 թ., էջ 44:*

չարագործ է և, նա կզգաստանա, ինքն անգամ իրեն կարճամարճի: Դեռ իր ժամանակին Չերնիշևսկին, շեշտելով երգիծանքի դաստիարակչական դերը, գրել է. «Ամեն մի փչացածություն հնարավոր չէ երևան բերել ու մատնացույց անել օրենքներով: Օրենքը պատժում է հանցագործություններն ու հանցագործներին, բայց ոչ թե փչացած բնավորությունը, ոչ ներքուստ այլասերված մարդուն:

Դրանք չարիքներ են, որոնք մատչելի չեն օրենքների պատիժներին և պետք է հալածվեն ու անարգվեն սատիրայի միջոցով»:

Դժբախտաբար մինչև օրս մենք չենք կարողանում ինչպես հարկն է գնահատել երգիծաբանների դերը: Շատերին թվում է, թե երգիծաբանությամբ զբաղվելը հեշտ գործ է և ամեն ոք կարող է երգիծաբան, կոմեդիոգրաֆ, ֆելիետոնիստ կամ պամֆլետիստ դառնալ, մինչդեռ երգիծանքը գրականության ամենադժվարին սեռն է, որովհետև բացի այն ամենից, ինչ ունեն մնացած սեռերի ներկայացուցիչները, երգիծաբանից պահանջվում է նաև սրամտություն և քաղաքացիական արիություն, իսկ այդ հատկությունները բոլորը չէ, որ ունեն: Իրավացի է Դիդրոն, երբ գրում է. «Հիանալի ֆարսը չի կարող լինել միջակ ընդունակության մարդու ստեղծագործություն, այն պահանջում է ուրախություն և ինքնատիպություն: Երբ դուք ենթադրում եք, թե գոյություն ունեն ավելի շատ մարդիկ՝ ընդունակ ստեղծելու «Պուրսոնյակ» քան «Միզանտրոպ», սխալվում եք»:

Երգիծաբանությունն ունի նաև այն առավելությունը, որ թեթև, զվարթ ձևով կարողանում է բազմաթիվ լուրջ հարցեր լուծել, առանց ընթերցողի մտքին ճիգ պատճառելու:

Սուր, մերկացնող սատիրայի, հեգնանքի կողքին մեզ հարկավոր է նաև մեղմ, ներողամիտ հումոր, որը զվարթություն, առույգություն է բերում, աշխատանքից հոգնած մարդկանց հանգստություն պատճառում, հատկություններ, որոնց համար դեռ իր ժամանակին հումորը բարձր է գնահատվել Էնգելսի կողմից:

Սովետական երգիծանքը, բացահայտելով թերություններն ու արատները, կռվելով մեր առաջընթացն արգելակող խոչընդոտների դեմ, վեր հանելով ճշմարտությունը, հաստատում է կոմունիստականը—ճանապարհ է հարթում կոմունիզմի կառուցման համար:

Մեր թերություններն աճման, զարգացման թերություններ են, այդ իսկ պատճառով չպետք է վախենանք դրանք բացահայտելուց, պետք է կռվենք դրանց դեմ: «Պարտիան չպետք է վախենա ժողովրդին ասելու ճշմարտությունը մեր առաջընթացի թերությունների ու դժվարությունների մասին,— ասում է ընկ. Խրուշչովը,— ով վախենում է սխալներն ու թերությունները խոստովանելուց, նա ռևոլյուցիոներ՝ չէ:

Հարկ չկա, որ մենք թաքցնենք մեր թերությունները, որովհետև մեր գլխավոր գիծը ճիշտ է, կոմունիստական շինարարության գործը անում է ու հաղթանակում, իսկ թերություններ այնքան ավելի քիչ կլինեն, որքան մասսաներն ավելի լայնորեն ընդգրկվեն այդ թերությունների դեմ մղվող պայքարում» 1:

Սովետական երգիծաբանության տեսական ու գործնական խնդիրների լուծման գործում հսկայական նշանակություն ունեն ընկ. Խրուշչովի մի շարք ելույթներն ու դիտողությունները: Նրա վերջին ճառերից մեկից երևում է, որ երգիծանքի պահանջը թելադրում է հենց ինքը կյանքը և այդ պահանջը միշտ էլ գոյություն է ունեցել: «Երբ ես աշխատում էի Ուկրաինայում,— ասել է ընկ. Խրուշչովը,— հաճախ դիմում էի ընկ. Օլեյնիկին, հիշում եմ՝ մի շարք մարզեր ետ էին մնացել եգիպտացորենի բերքահավաքում: Ես խնդրեցի նրան գրել ֆելիետոն:

Նա լավ ֆելիետոն գրեց Օդեսայի մարզի վերաբերյալ: Նկարիչները զարդարեցին ֆելիետոնը լավ ծաղրանկարներով: Դա ուժեղ ներգործություն ունեցավ նրանց վրա, ովքեր պիտի արագացնեին եգիպտացորենի բերքահավաքը»:

Շեշտելով սովետական երգիծաբանության օգտակար դերը, ընկ. Խրուշչովը շարունակում է. «Սատիրան, ընկերներ, իր գործը կատարում է: **Եվ դրա համար նրանց, ովքեր աշխատում են ա**ռանց լարվածության, օգտակար կլինի մի քիչ ծաղրել, դաղել: Դա թարմացնելու է մաշկը, մաքրելու է ծակոտիները, որպեսզի մաշկը շնչի:

Կարծում եմ, որ, օրինակ, ընկ. Միխալկովը և մեր շատ գրող-սատիրիկներ հաճույքով կվերցնեն իրենց սուր գրիչները և համարձակ կմերկացնեն գյուղական աշխատանքների թերությունները:

Հարկավոր է նաև երգիծական կինոժուռնալ բաց թողնել: Մի ժամանակ մենք Մոսկովյան մարզում բաց էինք թողնում մի քանի ժուռնալներ: Ընտելացել էինք Սաշա Բեզիմենսկուն...

Շատ ուժեղ երգիծանք կար. դա լավ գործ է և այժմ պետք է այն շարունակել»:

Երգիծանքը մեր ժողովրդի բարոյական ուժի, հզորության արգասիքն է: Մենք ծաղրում ենք, որովհետև ուժեղ ենք: Մեռնող դասակարգերը, պատմության կողմից դատապարտված ուժերը վախենում են երգիծանքից այնպես, ինչպես քննադատությունից, մինչդեռ մենք անողոք ենք ո՛չ միայն ուրիշների, այլև մեր սեփական թերությունների նկատմամբ: Մեր առջև պատմական մեծ խնդիրներ են դրված, որոնց լուծումը պահանջում է ուժերի առավել կենտրոնացում, առավել կարգապահություն, առավել բարձր ինքնագիտակցություն, որին պետք է ծառայի սովետական երգիծաբանությունը:

Անտեսել երգիծանքը կամ արգելակել նրա նորմալ զարգացումը՝ նշանակում է գրականությունը զրկել իր կենդանի հոսանքից:

Կենդանի հոսանք ասելով, պետք է հասկանալ ո՛չ միայն այն, որ երգիծաբանը, մոտ կանգնած լինելով իրականությանը, հասարակական-քաղաքական կյանքին, իր հետ բերում է իրականության շունչը, զգալ է տալիս հասարակական կյանքի զարկերակի տրոփը, այլև նրա համար, որ մեծ երգիծաբանները, սովորաբար լինելով դարաշրջանի առաջավոր ձգտումների, ժողովրդի տրամադրությունների ու ցանկությունների արտահայտիչները, իրոք թարմություն ու կենդանություն են մտցրել գրականության մեջ:

Երգիծաբանության հենց այդ դերը նկատի ունեին ռուս ռևոլյուցիոն դեմոկրատները, երբ այնքան մեծ նշանակություն էին տալիս «երգիծական ուղղությանը», նրա մեջ տեսնելով ռուս ժողովրդի ընդդիմադիր տրամադրությունները, ռուս առաջավոր միտքը և ամեն կերպ խրախուսում էին երգիծաբաններին:

Երգիծանքի հասարակական ֆունկցիան մեծանում է նրանով, որ, ինչպես ասացինք, նրա հիմքում ընկած է իրականության քննադատական յուրացումը, իրականության հանդեպ եղած քննադատական վերաբերմունքը, որը նրան դարձնում է ո՛չ միայն իմաստուն, այլև գիտակցական ու նպատակասլաց: Հենց այդ պատճառով երգիծանքը կարելի է դիտել իբրև քննադատության ու ինքնաքննադատության հիմնական միջոցը գեղարվեստական գրականության մեջ:

Առանց քննադատության իսկական երգիծաբանությունն անհնարին է: Երգիծաբանության մեջ քննադատությունը կատարում է վճռական դեր: Ըստ էության լավագույն երգիծական երկերը արդյունք են իրականության խոր ու բազմակողմանի վերլուծության ու քննադատության: Քննադատությունն օգնում է բացահայտելու իրականության հակասություններն ու արատավոր կողմերը, որոնք շատերին անմատչելի են, շատերից աննկատելի, և նպաստում է իրականության հանդեպ ճիշտ տեսակետի մշակմանը: Դրանով երգիծաբանությունը ձեռք է բերում նաև ճանաչողական մեծ նշանակություն: Այդ հանգամանքն էլ նկատի ուներ Բելինսկին, երբ հեգնանքի ու հումորի առկայությունը տվյալ գրականության մեջ դիտում էր իբրև նրա հասունության նշան: «Տիրապետելով ժամանակակից գրականությանը, հեգնանքը և հումորը ամենից լավ են ցույց տալիս նրա հսկայական հաջողությունը, այլապես հեգնանքի և հումորի բացակայությունը միշտ մերկացնում է գրականության մանկական վիճակը»,— գրել է նա:

Քննադատության և ինքնաքննադատության մեջ արտահայտվում է երգիծանքի ուժը, նրա հասարակական այժմեականությունը: Ինչպես ճիշտ կերպով նշել է Չերնիշևսկին՝ երգիծանքը քննադատության ծայրահեղությունն է: «Երգիծական ուղղությունը,— գրում է նա,— տարբերվում է քննադատականից, իբրև նրա ծայրահեղությունը, որը անհոգ է պատկերների օբյեկտիվության հանդեպ և թույլ է տալիս չափազանցություններ»:

Երգիծաբանության զարգացմանն առհասարակ շատ են խանգարում տեսական սխալ պատկերացումները, որոնց մի մասը գալիս է անցյալից, մյուս մասն էլ բխում է երգիծաբանության յուրահատկության անտեսումից: Այն վեճը, որ տարիներ շարունակ մղվում է երգիծական դրական հերոսի շուրջ, նման է շերամից բուրդ, կամ ջայլամից կաթ պահանջելուն: Որոշ քննադատներ համառ կերպով պահանջում են, որ երգիծաբանը չբավականանա միայն բացասական երևույթներով, բացասական կերպարներով, այլև ցույց տա դրականը, հանդես բերի դրական հերոսների: Նույնը պահանջում են նաև հրատարակիչները, խմբագիրները: Այդ ընկերները, թերևս, իրենց կամքից անկախ, նման պահանջներով փաստորեն ճակատ են ստեղծում երգիծաբանության դեմ և ոչնչացնում են այն:

Դրական կերպարը ստեղծվում է այն ժամանակ, երբ հեղինակը տվյալ անձնավորության հանդեպ լցված է սիրո, հարգանքի, սքանչացման, հպարտության և այլ համակրական զգացմունքներով. նրա ամեն մի քայլի, շարժուձևի, ամեն մի խոսքի մեջ տեսնում է լավը, գեղեցիկը, օրինակելին, ստիպում է ընթերցողին հետևել նրա օրինակին:

Արդ. երգիծաբանը ինչպե՞ս կարող է ստեղծել այդպիսի կերպար և մնալ երգիծաբան: Չէ՞ որ դա կլինի այնպիսի աբսուրդ, ինչպես, ասենք, հացթուխից պահանջենք, որ նա տաք սառույց թխի...

Միանգամայն իրավացի է քննադատ Նիկոլաևը. որը պաշտպանելով երգիծաբանության սպեցիֆիկան, գրում է. «Դրական հերոսի մասին վեճը կարող է յուրատեսակ տրոյական ձիու դեր կատարել երգիծաբանության մեջ, որի շնորհիվ երգիծաբանությունը պայթեցվելու է «ներսից»»:

Եվ իսկապես, եթե երգիծաբանը նպատակ դնի տեսնել մ ի ա յ ն դրականը, հանդես բերել մ ի ա յ ն դրական հերոսների, նա կդադարի երգիծաբան լինելուց: Ճիշտ է, երգիծական առանձին երկերում հանդիպում են դրական կերպարներ՝ ասենք Սուրեն Զանգուլկյանը Պապայանի «Մեծ հարսանիք» կոմեդիայում կամ Շահեն Գ. Տեր-Գրիգորյանի «Այս աստղերը մերն են» կոմեդիա-

---

*1 Հաշվետու զեկուցում ՍՄԿՊ XX համագումարին, էջ 155:*

յում և այլն, բայց նրանց երգիծական կերպար դարձնողը նրանց սրամտությունն ու զվարթությունն է, նրանց միջոցով ծաղրվում է բացասականը: Այդ սահմաններում ամեն մեկն էլ կարող է ստեղծել երգիծական դրական հերոս, բայց այդքանը բավական չէ, որպեսզի մենք խոսենք երգիծական լիարժեք դրական հերոսի մասին և պահանջենք, որ երգիծաբանը անպայման դրական հերոսներ ստեղծի:

Սովետական երգիծաբանը իրականությանը մոտենում է կոմունիզմի իդեալի բարձունքից, և դատապարտում ու ծաղրում է այն ամենը, ինչը չի համապատասխանում կոմունիզմի գաղափարին, ինչը ստորացնում է կոմունիստի արժանապատվությունը:

Երգիծական ստեղծագործությունը հնարավորություն չի տալիս լիարժեք դրական կերպարներ ստեղծելու, իրականության դրական պատկերումը տալու: Ուստի երգիծական ստեղծագործության չափանիշը ոչ թե երկի մեջ հանդես բերված դրական կերպարների թիվը պետք է լինի, այլ այն, թե երգիծաբանը ի՛նչ դիրքերից է մոտեցել իրականությանը, մարդկանց, ի՛նչ դիրքերից է կատարել իր մերկացումները: Երգիծական ստեղծագործության դրական կերպարը դա հենց ինքը հեղինակն է, որը երևույթների ու մարդկանց հանդեպ ունի որոշակի դիրք և հենց այդ դիրքից էլ ծաղրում ու մերկացնում է:

Այն բանից, թե ինչն է ծաղրում երգիծաբանը, ինչից է վրդովվում, ինչ է ժխտում, մենք գաղափար ենք կազմում, թե ինչն է նրան ցանկալի, ինչ է նա սիրում, ինչով է ոգեշնչված: Օրինակ, Գ. Տեր-Գրիգորյանը «Վերջին մեխակներ»-ի մեջ ծաղրում է սովետահայ ականավոր գիտնական Աշոտին:

Աշոտը աչքի ընկած, տաղանդավոր գիտնական է, բայց նա չի համապատասխանում կոմունիստ գիտնականի այն իդեալին, որն ունի հեղինակը: Աշոտը շեղվում է կոմունիստ գիտնականի իդեալից, նվաստացնում իր արժանապատվությունը, իր բնավորության շատ գծերով հիշեցնում է բուրժուական էգոիստներին ու կարիերիստներին: Հենց դա էլ վրդովում է գրողին, և նա ծաղր ու ծանակի է ենթարկում Աշոտին ու նրա նմաններին:

Աշոտը դրական կերպար չէ, բայց մի՞թե հեղինակի կատարած գործը դրական գործ չէ: Չէ որ նա այդ կերպ զգաստացնում է Աշոտի նման գիտնականներին, ստիպում հարգել կոմունիստի արժանապատվությունը, կանգնել կոմունիստ գիտնականին վայել բարձրության վրա:

Ինչպես տեսնում ենք, երգիծանքն, իրոք, իր գործը կատարում է և վատ չի կատարում:

Երգիծաբանին առաջադրվող մյուս պահանջը քաղաքացիական արիությունն է, թեմայի սրությունը, բովանդակության ակտուալությունը, նպատակասլացությունը, կոմիկական հագեցվածությունը: Քաղաքացիական քաջությունից զուրկ երգիծաբանը, որը մտածում է միայն ինքնապահովագրման մասին, որքան էլ նա սրամիտ գրող լինի, չի կարող մեծ օգուտ տալ հասարակությանը: Բոլոր մեծ երգիծաբանները եղել են մեծ քաղաքացիներ, ապրել են իրենց երկրի, իրենց ժողովրդի բախտով: Քաղաքացիական արիության մեծ գործ էր անհատի պաշտամունքի մերկացումը:

Պարտիան մերկացրեց անհատի պաշտամունքը, պայքար հայտարարեց անհատի պաշտամունքի վնասակար հետևանքների դեմ: Որքա՜ն մեծ նյութ է տալիս դա երգիծաբանությանը, իսկ ի՞նչ են արել մեր երգիծաբաններն այդ ուղղությամբ մինչև օրս—աննշան բան:

Մեր միակ երգիծական ժուռնալում՝ «Ոզնիում», շատ քիչ կարելի է հանդիպել սուր թեմաներ շոշափող, ակտուալ հարցեր դնող ստեղծագործությունների: «Ոզնի» քաղաքացիական քաջությունը բավականացնում է միայն թռչնաբուծական ֆերմայի վարիչի կամ կոլխոզի նախագահի փեշից զգուշությամբ քաշելուն:

Քաղաքացիական քաջության պակասի, սուր թեմաներից խուսափելու արդյունք պետք է համարել որոշ գրողների բացահայտ առակասիրությունը, որովհետև առակը կարելի է և՛ այսպես մեկնաբանել, և՛ այնպես, և՛ թշնամուն դուր գալ, և՛ բարեկամին: Առակի այլաբանությունն անցյալում ծառայել է իբրև քողարկման միջոց. այն նեղ բարոյախոսական հասկացողությունների շրջանակներից քիչ է դուրս եկել:

Սովետական առակի համար բնորոշը հենց թեմայի սրությունն ու ակտուալությունն է, բարձր գաղափարայնությունը, քաղաքացիական արիությունը, երգիծական հագեցվածությունն ու նպատակասլացությունը: Այս հատկություններով են բնորոշվում սովետական լավագույն առակագիրների՝ Դ. Բեդնու, Ս. Միխալկովի գործերը: Թեև Միխալկովի առակի մշտական հերոսներն են՝ նապաստակները, առյուծները, էշերը և այլն, բայց շոշափած թեմաները նոր են, առաջ քաշած խնդիրները՝ ակտուալ, հուզող, բարոյախոսական եզրակացությունները՝ խոր, ընդհանրացնող: Ընթերցողն զգում է, որ նա առակ չի գրել պարզապես առակի համար, այլ որոշ մարդկանց որոշ թերությունների դեմ կռվելու, մարդկանց օգնած լինելու համար:

Միխալկովի առակները չի կարելի և՛ այսպես մեկնաբանել, և՛ այնպես, դրանք միայն մի մեկնաբանություն ունեն, այն, որ հեղինակն է ուզում: Դա բխում է նրանից, որ նա նկարագրվող մարդկանց, երևույթների հանդեպ ունի գաղափարական հստակ և ճիշտ դիրքորոշում և հենց



դա էլ նրա առակները դարձնում է խիստ նպատակասլաց:

Ուրախալի է, որ վերջին տարիների ընթացքում մեզանում ևս զարգանում է առակը՝ ամենաժողովրդական, ամենապատկերավոր ժանրերից մեկը: Մի շարք լավ առակներ են գրել Մ. Կորյունը, Ա. Դարբնին, Հ. Շիրազը, Բ. Կարապետյանը և ուրիշներ: Սակայն մեր առակագիրները դեռևս մեծ մասամբ հետևում են անցյալի խրատական-բարոյախոսական առակին, որն այլևս չի կարող բավարարել սովետական ընթերցողի բարձր պահանջները: Նրանց առակների մեծ մասը ժողովրդական առածների, ասացվածքների իմաստային ընդլայնումն են՝ առանց ստեղծագործական թռիչքի, գաղափարական նոր մեկնաբանումների: Երբեմն նրանք բարձրացնում են հուզող հարցեր, արծարծում նոր բովանդակություն, բայց չեն կարողանում այդ հարցերի լուծումը նպատակասլաց դարձնել, որովհետև չգիտեն ինչի՛ դեմ են կռվում, ի՛նչ են ժխտում կամ ի՛նչ հաստատում: Այս տեսակետից շատ բնորոշ է Ա. Դարբնու վերջին առակներից մեկը՝ «Արտոնյալ այծը»: Թվում է, թե Ա. Դարբնին դատապարտում ու ծաղրում է այն ապիկար գիտնականներին, որոնք զբաղված են գիտական ու գործնական արժեք չունեցող թեմաներով: Դարբնու նկարագրած գիտնականները երկու տարի շարունակ այծի վրա փորձեր են կատարում՝ ապացուցելու համար այն հասարակ միտքը, որ այծը «սիրում է խոտ»: Ինչպես տեսնում ենք. Ա. Դարբնին միանգամայն ակտուալ թեմա է շոշափել, մի թեմա, որն առանձնապես շեշտեց ընկ. Խրուշչովը Մարտյան պլենումում: Բայց թեման լուծել է այնպես, որ առակի վերջում պատժվում են ոչ թե ապիկար գիտնականները, այլ պատժվում է այծը: Այսինքն՝ հարվածն ուղղել է ոչ թե ապիկար գիտնականների դեմ, այլ խեղճ այծի՝ նրանց զոհերի դեմ: Այսպիսի լուծումն արդեն բանի պետք չէ և ունքը շտկելու փոխարեն աչքն էլ է հանում:

Մեր առակագիրները երբեմն էլ չարաշահում են առակի հնարավորությունները և ամեն ինչի մասին առակ են գրում: Ճիշտ է, առակին մատչելի է ամեն մի թեմա և ամեն մի գաղափար՝ միայն մի պայմանով, որ թեման հենվի ժողովրդի դարավոր փորձի տվյալների վրա, արտահայտի փիլիսոփայական կամ բարոյական խոր ընդհանրացնող միտք, կամ հնարավորություն տա սոցիալ-քաղաքական մերկացումներ կատարելու:

Այնուհետև պետք է ընթերցողը զգա, որ տվյալ գաղափարը այլ կերպ արտահայտել էֆեկտավոր չէր լինի և որ այլաբանական այն ձևը, որ գտել է առակագիրը, ոչ թե պատահականորեն գտնված մի ձև է, այլ այդ գաղափարի դրսևորման բանաստեղծական լավագույն ձևը: Օրինակ, այն գաղափարը, թե՝ «ուժեղի մոտ միշտ էլ թույլն է մեղավոր», կարելի է արտահայտել և՛ վեպի, և՛ պատմվածքի, և՛ ակնարկի, և՛ պոեմի, և՛ դրամայի, բանաստեղծական ամեն մի ձևի միջոցով: Բայց թվում է, որ ոչ մի դեպքում այդ գաղափարն այնքան համոզիչ չէր լինի, քան գայլի ու գառան այն ծանոթ այլաբանության մեջ, որ ստեղծել է դեռևս հռոմեացի առակագիր Ֆեդրուսը և որն այնքան մեծ վարպետությամբ օգտագործել է նաև Կռիլովը: Այդ այլաբանությունն ունի և այն առավելությունը, որ խոր ժողովրդական է, հենվում է ժողովրդի դարավոր փորձի տվյալների վրա, արտացոլում ժողովրդի կյանքը, կենցաղը:

Ժողովրդական լայն մասսաների կոմունիստական դաստիարակության գործում մեծ դեր ունի կատարելու նաև սովետական կոմեդիան:

Երգիծական մյուս ժանրերի համեմատությամբ կոմեդիան ունի այն առավելությունը, որ լինելով ամենամեծ ֆորմայի երգիծական ժանրը, ի վիճակի է կյանքը պատկերել ավելի լայն ընդգրկումով, լայն մասշտաբի խնդիրներ դնել և լուծել, երգիծական համեմատաբար ավելի ամբողջական բնավորություններ ու տիպեր ստեղծել, կոմիկական ավելի հարուստ ու բազմազան միջոցներ կիրառել, որով կոմեդիան ձեռք է բերում ո՛չ միայն դաստիարակչական ու ճանաչողական մեծ արժեք, այլև էսթետիկական ավելի մեծ հաճույք է պատճառում հանդիսատեսին:

Հայտնի է, որ երգիծանքը ձգտում է առարկաներն ու երևույթները ներկայացնել իրենց զգացողական կոնկրետությամբ: Ժամանակակից թեման այս տեսակետից լիովին բավարարում է կոմեդիոգրաֆին: Որքան էլ կոմեդիոգրաֆը վառ երևակայություն ունենա, չի կարող երևակայության միջոցով հասնել երևույթների ու մարդկանց այն աստիճանի զգացողական կոնկրետության, ինչպիսին այդ ընձեռում է կենդանի իրականությունը, որը և կոմիզմի միակ աղբյուրն է: Ժամանակակից թեմատիկայով գրված երկի մեջ հեղինակը հենվում է կենդանի իրականության վրա, ելնում կենդանի տպավորություններից. մինչդեռ պատմական թեմատիկայով գրված երկի մեջ հենվում է երևակայության վրա: Դրանց միջև տարբերությունն այնքան մեծ է, ինչքան տեսածի ու լսածի միջև: Ինչ խոսք, որ տեսնելն ավելի լավ է, քան լսելը և տեսնելը հոգեկան ավելի մեծ ներգործություն է ունենում, քան լսելը: Եվ, քանի որ երգիծանքը միշտ ձգտում է զգացողական կոնկրետության, բնական է, որ այն միշտ պիտի գերադասություն տա ժամանակակից թեմատիկային, որի մեջ այն կանգնում է իր ուժի գագաթնակետին:

Կոմեդիան ավելի քան պետք է ձգտի դրան,

որովհետև այն ներկայացվում է բեմի վրա և նրանից ավելի շատ ճշմարտանմանություն է պահանջվում: Նույնը պետք է ասել նաև երգիծական մյուս ժանրերի մասին:

Այս կողմի վրա հրավիրելով մեր կոմեդիագրաֆների ուշադրությունը, անհրաժեշտ է, որ նրանք ավելի խորամուխ լինեն կյանքի ճշմարտության մեջ, որովհետև գեղեցիկը նախ և առաջ ճշմարիտն է, համարձակ կերպով մերկացնեն մեր առաջընթացին խոչընդոտող թերությունները: Այդ թերությունների դեմ մղվող պայքարում մեծ դեր ունեն կատարելու նաև երգիծական մյուս ժանրերը՝ ֆելիետոնը, սատիրան (նեղ իմաստով), պամֆլետը, պարոդիան, էպիգրամը և այլն, որոնք, դժբախտաբար, դեռևս շատ են ետ մնում:

***

Անցյալ երգիծաբանությունը հիմնականում արտահայտել է ճնշված, շահագործված դասակարգերի ընդդիմադիր տրամադրությունները, նրանց դժգոհությունը, քննադատական, ծաղրական վերաբերմունքը տիրապետող իրականության վերաբերյալ: Ուստի անցյալի երգիծաբանությունն ուղղված է եղել տիրապետող հասարակական կարգերի խարխլման, տապալման նպատակին, այսինքն՝ գլխավորապես քայքայման զենք է եղել:

Սովետական երգիծաբանությունն արտահայտում է ոչ թե ճնշված, հարստահարված դասակարգերի տրամադրությունները, այլև ազատագրված, իրենց սեփական բախտի տերը հանդիսացող դասակարգերի, ժողովրդական լայն զանգվածների տրամադրությունները, նրանց քննադատական, ծաղրական վերաբերմունքը:

Սովետական երգիծաբանությունը շահագրգռված է կոմունիստական կարգերի հաստատմամբ և հանդես է գալիս իբրև այդ կարգերի համար ակտիվորեն մարտնչող ուժ: Սովետական երգիծաբանությունն ունի կյանքը հաստատող նշանակություն, նրա պաթոսը քայքայման, կործանման մեջ չէ, այլ հաստատման մեջ:

Անցյալում երգիծաբանությունը աչքի էր ընկնում պրակտիկ թուլությամբ, որովհետև զրկված էր իր քննադատությունը հասարակականորեն իրագործելու հնարավորությունից, որը նրան պեսիմիստական բնույթ էր տալիս:

Սովետական երգիծաբանությունը զերծ է նման գծերից, պրակտիկ թուլությունից ու պեսիմիզմից, որովհետև սովետական երգիծաբանությունը, ինչպես ասացինք, իր բախտի տերը հանդիսացող ժողովրդի երգիծաբանությունն է, որն ունի բոլոր հնարավորությունները իր քննադատությունը հասարակականորեն իրագործելու և տոգորված է թերություններն ուղղելու խոր հավատով, սովետական սոցիալիստական հասարակարգի հանդեպ ունեցած լավատեսությամբ:

Սովետական երգիծաբանության սուր սլաքն ուղղված է այն ամենի դեմ, ինչ խանգարում է, սովետական մարդկանց, ժողովուրդների առաջընթացին դեպի կոմունիզմ:

Այստեղ ամենից առաջ պետք է նկատի ունենալ կապիտալի աշխարհում տեղի ունեցող այն բոլոր երևույթներն ու ձեռնարկումները, որոնք ուղղված են մարքս-լենինյան գաղափարախոսության դեմ, Սովետական Միության, սոցիալիզմի լագերի մյուս երկրների դեմ, աշխարհի բոլոր ժողովուրդների խաղաղասիրական ձգտումների, երկու սիստեմների խաղաղ գոյակցությանը խոչընդոտող ձեռնարկումների, ընդհանուր զինաթափման դեմ:

Մեր ներքին կյանքում ևս քիչ չեն այն թերությունները, որոնք խանգարում են կոմունիզմի կառուցման գործին: Դրանց թվին են պատկանում կապիտալիզմի մնացուկները մարդկանց գիտակցության մեջ, պորտաբուծությունը, շահամոլությունը, էգոիզմը, կարիերիզմը, նախահասարակական արարքները, կողմնակալությունը, աչքակապությունը և այլ բարոյական արատներ:

Սովետական երգիծանքը օգնում է մեր մարդկանց զգաստանալու, ճիշտ ուղու վրա կանգնելու, ինքնագիտակցության գալու, առաջ գնալու: Սովետական երգիծանքը օգնող, կազմակերպող, առաջ մղող երգիծանք է:

Ա. ԿԱՐԱՅԱՆ

# ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ

## ԱՆՎԵՀԵՐ ԻՆԵՍԱՆ



Վ. Ի. Լենինի զինակից և բարեկամ Ինեսա Ֆյոդորովնա Արմանդի անունն անխզելիորեն կապված է սոցիալիստական ռևոլյուցիայի և Կոմունիստական պարտիայի պատմության, կանանց միջազգային կոմունիստական շարժման հետ:

Ինեսա Արմանդը (1875—1920 թթ.) անցել է կյանքի բարդ ու դժվարին ուղի, պատահական անակնկալներով լի անուրախ մանկություն, որ անց է կացրել իր ծնողների՝ ֆրանսիական թատրոնի դերասանների տանը (հայրը անգլիացի էր, իսկ մայրը՝ ֆրանսիացի): Այնուամենայնիվ տեղափոխվել է Ռուսաստան. վաղաժամ ամուսնություն, ընտանեկան կյանքի միօրինակություն ու ձանձրույթ ամուսնու՝ մոսկվացի հարուստ գործարանատեր Ալեքսանդր Արմանդի տանը:

Միակ մխիթարությունն ու ուրախությունը երեխաներն էին, որոնց մեջ նա ներդնում էր իր ամբողջ բարի ու կրքոտ հոգին, և մեկ էլ գրքերն ու երաժշտությունը, որոնք նրա մեջ զարթնեցրել էին նոր, ավելի իմաստավորված ու լիարժեք կյանքով ապրելու ցանկություն: Անվերջ դեգերումներ ու կյանքի իմաստի որոնումներ, գործելու ջերմ ցանկություն, պերճությամբ ու պարապությամբ լի ընտանեկան նեղ աշխարհից հասարակական կյանքի լայն ասպարեզ դուրս գալու ձգտում:

Շարունակ լինելով բուրժուական միջավայրում, ապրելով հին կենցաղի գռեհկությունն ու նողկալիությունը, խորապես տանջվելով հարստահարության ու ապականության այդ աշխարհում, տեսնելով կանանց արժանապատվության նվաստացումն ու անարգվածությունը, նա հանգեց այն մտքին, որ այդպես ապրել այլևս անհնար է:

Եվ ահա XIX դարի 90-ական թվականների վերջերին Ինեսա Արմանդը դառնում է Կնոջ վիճակի բարելավման Մոսկվայի ընկերության ակտիվ անդամ, իսկ շուտով նաև այդ ընկերության նախագահը:

Իր էությամբ տիպիկ բուրժուական այդ ընկերության գործունեությունը սկզբից իսկ կրում էր վառ կերպով արտահայտված էթիկական բնույթ: Միանգամայն հասկանալի է, որ Ինեսա Արմանդի և ընկերության մյուս անդամների ակտիվ աշխատանքը սպասված արդյունքը չէր տա:

Կանանց բարոյական ու ֆիզիկական կործանումից փրկելու ուղիների մասին Ինեսա Արմանդի խորհրդածություններն ու տարակուսանքները չկարողացավ լուծել նաև Լ. Ն. Տոլստոյը, որի մոտ որպես պատվիրակ ընկերությունն ուղարկել էր իր անդամներից մեկին: Լ. Ն. Տոլստոյը, ելնելով մի՛ կալ հակառակ չարին կրոնական կոնցեպցիայից, հավանություն չտվեց ընկերության գործելակերպին, ասելով, «Ձեր գործունեությունից ոչինչ դուրս չի գա. այդպես է եղել Մովսեսից առաջ, այդպես է եղել Մովսեսից հետո, այդպես եղել է, այդպես կլինի»:

Տոլստոյականությունը, բնականաբար, չէր կարող հարգանք ներշնչել գործունյա Ինեսային, և նա փնտրում էր կանանց երջանիկ վիճակի համար պայքարելու կազմակերպական նոր ձևեր: Այսպես, նրա հարցախույզ մտքում ծնվեց մի գաղափար՝ ստեղծել Ընկերության հատուկ տպագիր օրգան, մի յուրահատուկ ամբիոն, որտեղից

կարելի կլիներ դիմել հասարակական խղճին: Թե Ինեսա Արմանդն ինչպիսի լրջությամբ էր մոտենում իր գաղափարի իրագործմանը, վկայում է «Կնոջ վիճակի բարելավման Մոսկվայի ընկերության տեղեկագրի» հրատարակության կապակցությամբ եղած մինչև այժմ անհայտ նամակագրությունը, որ մենք հայտաբերել ենք Լենինգրադի Կենտրոնական պետական պատմական արխիվում:[1] 1902 թվականի փետրվարի 12-ին Կնոջ վիճակի բարելավման ընկերության կոմիտեին հայտնվեց, որ «ներքին գործերի պ. մինիստրը գտնում է, որ հնարավոր չէ բավարարել վերոհիշյալ կոմիտեին Մոսկվայում «Կնոջ վիճակի բարելավման Մոսկվայի ընկերության տեղեկագիր» վերնագրով հանդես հրատարակելու թույլտվության մասին միջնորդությունը»[2]:

Բերված փաստերը ամբողջապես վերաբերում են Ինեսա Արմանդի գործունեության այն շրջանին, երբ նա դեռ կանգնած էր բուրժուական ֆեմինիզմի դիրքերում: Բայց դրանք, ինչպես մեզ թվում է, կօգնեն հասկանալու նրա հոգեկան զարգացման պրոցեսը, այն բեկումը, որի շնորհիվ նա դարձավ կանանց կոմունիստական շարժման ղեկավարներից մեկը:

Կնոջ վիճակի բարելավման Մոսկվայի ընկերության տպագիր օրգանի հրատարակումը արգելելու մեջ արտահայտվեց ցարիզմի ձգտումը՝ խեղդել ամեն մի նոր, առաջադիմական ձեռնարկություն այն պայմաններում, երբ երկիրն ապրում էր ռևոլյուցիոն խմորում: Ամենայն հավանականությամբ, կասկածանք էր առաջացնում Ինեսա Արմանդի անձնավորությունը, որի վարքագիծը չէր կարող արտասովոր չթվալ ցարական չինովնիկներին: Իշխանությունների կողմից «Տեղեկագրի» հրատարակման թույլտվությունը մերժելու փաստը արագացրեց Ինեսա Արմանդի վերջնական խզումը բուրժուական միջավայրից: Նա սկսեց աստիճանաբար հասկանալ, որ գոյություն ունեցող կարգերի շրջանակներում չկա կնոջ դրությունը բարելավելու ո՛չ մի ռեալ հնարավորություն և որ կանանց իրավազրկությունը կարելի կլինի վերացնել միայն հին կարգերի հետ միասին: Ինեսա Արմանդի գիտակցության բեկումը տեղի ունեցավ առաջին ռուսական ռևոլյուցիային անմիջականորեն նախորդող տարիներին:

1904 թվականին, դառնալով բոլշևիկյան պարտիայի անդամ, Ինեսա Արմանդը մինչև իր կյանքի վերջը չշեղվեց ռևոլյուցիոն ուղուց և մարտնչեց պայքարի ամենադժվարին ու վտանգավոր ճակատներում: Նա ակտիվորեն մասնակցեց 1905 թվականի ռևոլյուցիոն մարտերին:

Ռևոլյուցիայի պարտությանը հաջորդած ռեակցիայի տարիներին մենք Ինեսա Արմանդին որպես պարտիայի ագիտատոր և պրոպագանդիստ տեսնում ենք ֆաբրիկաներում ու գործարաններում, Մոսկվայի բանվորական ավաններում ու ժողովներում:

Ն. Կ. Կրուպսկայան հետևյալ կերպ է բնութագրում Ինեսա Արմանդի այդ տարիների գործունեությունը. «Հանրագումարի բերելով Ինեսայի գործունեության այդ շրջանը, հարկավոր է նշել նրա եռանդը, հայացքների կայունությունը, մարքսիստական լուրջ պատրաստականության առկայությունն ու պրոպագանդիստի տաղանդը...»[3]:

Կառավարությունը հետապնդում ու հալածում էր տոկուն և հետևողական ռևոլյուցիոներին. այդ քնքուշ, բայց հոգով ուժեղ կնոջը համարելով իր թշնամին: Մի քանի անգամ ձերբակալվելուց հետո, երկու տարով աքսորվեց Արխանգելսկի նահանգ, որտեղից նա փախավ և 1909 թվականին դարձավ վտարանդի:

Հերոսական դրվագներով լի է նաև Ինեսա Արմանդի կյանքի վտարանդիության շրջանը: Տիրապետելով մի քանի օտար լեզուների, նա նամակագրական լայն կապեր է հաստատում տարբեր երկրների բանվորական պարտիաների հետ, զեկուցումներով հանդես գալիս Եվրոպայի քաղաքներում և ամենուրեք կոմունիստի իր կրքոտ խոսքով բորբոքում ունկնդիրների սրտերը:

Որպես բոլշևիկյան՝ «Պարտիայի աջակցության փարիզյան խմբի» նախագահության անդամ, նա սերտ կապ էր պահպանում ֆրանսիական բանվորների հետ, պարզաբանում պարտիայի քաղաքականության էությունը, նրանց ներգրավելով ռևոլյուցիոն պայքարի մեջ:

1911 թվականը հանդիսացավ Ինեսա Արմանդի կյանքի ամենանշանակալի տարեթվերից մեկը, եթե ոչ ամենանշանակալին: Փարիզից ոչ հեռու, գեղատեսիլ Լոնժյումո գյուղում Ինեսա Արմանդը հանդիպեց Վ. Ի. Լենինին ու Ն. Կ. Կրուպսկայային և ընդմիշտ բարեկամացավ նրանց: Այստեղ, ռուս բանվորների համար կազմակերպված պարտիական դպրոցում, ռևոլյուցիայի հանճարեղ առաջնորդը դասախոսություններ էր կարդում, իսկ նրա հետ միասին պարապմունքներ էր անցկացնում նաև Ինեսա Արմանդը:

¹ Տե՛ս «Вопросы истории», № 3, 1960, էջ 213—216:

² *Լենինգրադի Կենտրոնական պետական պատմական արխիվ, ֆ. 776, ցուց. 8, պահպ. միավ. 1434, գ. 19, թ. 20:*

³ *Н. Крупская,* Пламенные борцы за социализм, «Спутник коммуниста в деревне», *№ 4, 1938, էջ 17:*



Այդ դպրոցի ունկնդիրներից շատերը, ինչպես, օրինակ, Սերգո Օրջոնիկիձեն, հետագայում դարձան պարտիայի ականավոր գործիչներ:

Ինեսա Արմանդի մասին Ն. Կ. Կրուպսկայայի հիշողություններում բազմակողմանիորեն ու մեծ խորությամբ բացահայտված է նրա հոգեկան կերպարը, մեծ ջերմությամբ է խոսվում նաև այն բարեկամության մասին, որը Վլադիմիր Իլյիչին ու իրեն՝ Նադեժդա Կոնստանտինովնային կապում էր Ինեսա Արմանդի հետ:

Ահա թե ինչ է գրում Ն. Կ. Կրուպսկայան Լոնժյումոյի ժամանակաշրջանի մասին. «Նրա (Ինեսայի) տունը դարձել էր կենտրոն. նրա մոտ էին բնակություն հաստատում Շվարցը, Օրջոնիկիձեն, Բրեսլավը: Այնտեղ էլ կազմակերպվեց ընդհանուր ճաշարան: Ապրում էինք համերաշխ ընտանիքով: Շատ էինք պարապում: Վլադիմիր Իլյիչը կարդում էր մեծ դասընթացներ, Ինեսա Արմանդը կարդում էր քաղաքատնտեսության դասընթացը...

1911 թվականի ձմռանը նա երեխաների հետ միասին բնակություն հաստատեց այն ժամանակ մեր ապրած տան կողքին: Մենք տեսնվում էինք ամեն օր: Ինեսան դարձավ մեզ համար մոտիկ մարդ... Երբ Ինեսան գալիս էր, տունը լուսավորվում էր: Երբեք և ոչ մի բանի նկատմամբ Ինեսան անտարբեր չէր, միշտ ամեն ինչ սրտին մոտ էր ընդունում»[1]:

Մինչև կյանքի վերջն անխզելի մնաց Լենինի, Կրուպսկայայի և Արմանդի բարեկամությունը:

Այսպես, 1912 թվականին Ինեսա Արմանդը այցելեց նրանց Կրակովում, ընտանեկան նեղ շրջանում որոշ ժամանակ անցկացնելով սիրելի բարեկամների հետ: «Մեր ամբողջ կյանքը,— գրում է այդ մասին Կրուպսկայան,— լի էր պարտիական հոգսերով ու գործերով, ավելի շատ նման էր ուսանողական, քան ընտանեկան կյանքի; և մենք ուրախ էինք Ինեսայի համար... Մենք Իլյիչի և Ինեսայի հետ շատ էինք զբոսնում... գնում էինք քաղաքի ծայրը, մարգագետին (մարգագետին՝ լեհերեն «բլոն»), և այդ ժամանակից Ինեսան նույնիսկ իր համար ընտրեց կեղծանուն՝ Բլոնինա: Ինեսան լավ երաժիշտ էր, բոլորին համոզում էր լսել Բեթհովենի համերգները, ինքն էլ սքանչելի նվագում էր Բեթհովենի շատ գործերը: Իլյիչն առանձնապես սիրում էր *«Sonate Pathétique»-ը, խնդրում էր նրան շա*րունակ նվագել. նա սիրում էր երաժշտություն»[2]:

Արդեն այն փաստը, որ Ինեսա Արմանդի մահից հետո նրա զավակների դաստիարակության հոգսը իրենց վրա վերցրին Վ. Ի. Լենինը և Ն. Կ. Կրուպսկայան, նրանց շրջապատելով մտերմական հոգատարությամբ և ուշադրությամբ, վկայում է, որ նրանց համար թանկ էր ընկերուհու հիշատակը:

Այս տեսակետից մեծ հետաքրքրություն է ներկայացնում այն հեռագիրը, որ մենք հայտաբերել ենք արխիվում. «Շտապ: Գրություն ուղիղ գծով: Ստավրոպոլ Աշխպաշտխորհի նահանգական արտվերահսկիչ Ռեսկեին: Լենինի հանձնարարությամբ խնդրում եմ շտապ գտնել Նալչիկում մահացած Ինեսա Արմանդի տասնվեցամյա որդուն: Ինեսան Նալչիկ է եկել Կիսլովոդսկից սեպտեմբերի 20-ին, մահացել է 23-ին:

Տղային ցույց տվեք ամենայն աջակցություն, շտապ հաղորդեցեք բոլոր տեղեկությունները: Ժողկոմսովետի քարտուղար Ֆոտիևա: 1. 10. 1920 թ., Մոսկվա, Կրեմլ»[3]:

Վ. Ի. Լենինի և Ն. Կ. Կրուպսկայայի հետ ունեցած բարեկամությունը վճռական դեր կատարեց Ինեսայի ռևոլյուցիոն իդեալների ձևավորման ու ամրապնդման գործում, նրան հաղորդելով նոր ուժ, ոգեշնչելով անդուլ ծառայելու պարտիային ու ժողովրդին: Եվ, պատահական չէ, որ առաջին համաշխարհային պատերազմի տարիներին Ինեսա Արմանդի ռևոլյուցիոն գործունեությունն ստանում է նոր թափ: Վ. Ի. Լենինի և պարտիայի հետ նա պայքար է մղում շովինիզմի և II Ինտերնացիոնալի առաջնորդների օպորտունիզմի, բոլոր հակառևոլյուցիոն պարտիաների ու հոսանքների ներկայացուցիչների դեմ, որոնք համընդհանուր հաշտության, դասակարգային պայքարի մարման և այլնի մասին իրենց շաղակրատանքներով թունավորում էին ժողովրդի գիտակցությունը:

Իր ամենօրյա աշխատանքից բացի Ինեսա Արմանդը եղել է նաև պարտիական կյանքի այնպիսի նշանակալի իրադարձությունների ակտիվ մասնակիցը, ինչպիսիք էին ինտերնացիոնալիստների Ցիմմերվալդի և Կինտալի կոնֆերանսները:

Ն. Կ. Կրուպսկայայի հետ միասին, նա կանանց միջազգային առաջին կոնֆերանսի կազմակերպիչներից էր, որտեղ «կրքոտությամբ պաշտպանում էր բոլշևիկների գիծը», ինչպես նաև Երիտասարդության միջազգային առաջին կոնֆերանսի մասնակիցը:

Այդ տարիներին դրսևորվեց Ինեսա Արմանդի գրականագետ-հրապարակախոսի տաղանդը:

Երբ 1914 թվականին Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ Պետերբուրգում ստեղծվեց բոլշևիկյան «Ռաբոտնիցա» հանդեսը, Ինեսա Արմանդը Ն. Կ.

¹ Памяти Инессы Арманд. Сборник под редакцией Н. К. Крупской, Госиздат, М.—Л., 1926, *էջ 12:*

² *В. И. Ленин* о литературе и искусстве, М., *1957, էջ 549:*

³ *Տե՛ս* «Вопросы истории», *№ 11, 1961, էջ 167:*

ջիստացիաներ։ Նրանք պիկետային հսկողություն էին սահմանել կառավարական և մունիցիպալ հիմնարկների վրա, բարիկադներ էին սարքել՝ փակելով ոստիկանության ճանապարհը։ Բելգիայի պատմության մեջ այս խոշորագույն գործադուլը ջախջախիչ հարված հասցրեց «դասակարգային հաշտության» բուրժուական տեսություններին։

Բելգիայում աշխատավորական հզոր ցույցերը միայն սրանով չսահմանափակվեցին։ 1962 թվականի մայիսին, ավելի քան 40 զանազան կազմակերպություններ միավորող, այսպես կոչված՝ «Մայիսի 8-ի շարժման» կոչով երկրի գործարաններում ու շինարարություններում 15 րոպեով դադարեցվեց աշխատանքը։ Ատոմային պատերազմի վտանգի դեմ կազմակերպված ցույցերին մասնակցեց Բելգիայի ազգաբնակչության կեսից ավելին։

Գործադուլային մեծ ցնցումներ տեղի ունեցան նաև Դանիայում։ 1961 թվականի սկզբներին, երկրի պատմության մեջ խոշորագույն համընդհանուր գործադուլին մասնակցեցին 150 հազար մետաղագործներ, ծովայիններ, նավահանգստային բեռնակիրներ և ավտովարորդներ. այն քաղաքական սուր ճգնաժամի հասցրեց երկիրը։ Վախենալով իրադրության հետագա բարդացումից՝ կառավարությունը պառլամենտի միջոցով հրապարակեց բանվորների պահանջները բավարարող օրենք։

— «Ֆաշիզմը չի անցնի»— այս լոզունգով էին ֆրանսիական 12 միլիոն աշխատավորներ պայքարի դուրս եկել 1961 թվականի ապրիլին, որոնք ձախողեցին ֆաշիստական խռովությունն Ալժիրում։ Իսկ դեկտեմբերին՝ ՕԱՍ-ի դեմ և «հանուն խաղաղության օրվա» Ալժիրում ցույցի ելան 11 միլիոն մարդ։ Մասսայական հակաֆաշիստական մանիֆեստացիաներ տեղի ունեցան ողջ երկրում, 1962 թվականի սկզբին, իսկ փետրվարի 9-ի հակաֆաշիստական գործադուլին մասնակցեցին մոտ երկուս ու կես միլիոն մարդ։

Ֆրանսիայում գործադուլ էին անում ոչ միայն բանվորները։ 1961 թվականի մարտին 24-ժամյա գործադուլ հայտարարեցին մեկ միլիոն պետական ծառայողներ, քաղաքային տրանսպորտի ու երկաթուղու աշխատողներ. հոկտեմբերին 36-ժամյա գործադուլ արեցին կես միլիոն երկաթուղայիններ ու գազի արդյունաբերության աշխատողներ և կես միլիոն պետական ծառայողներ։ Երկիրը ցնցեցին նաև գյուղացիական հզոր շարժումները։ Բուրժուական «Ֆիգարո» թերթն այդ առթիվ գրում է. «1961 թվականին գյուղացիները գիտակցեցին իրենց ուժը, իրենց հնարավորություններն ու թափն այնպես, ինչպես այդ արեց բանվոր դասակարգը՝ 1848 թվականին» (խոսքը միապետությունը խորտակող 1848 թվականի ռևոլյուցիայի մասին է — Ա. Լ.)։ Ինչպիսի՜ խոստովանություն...

Դասակարգային պայքարը բուռն վերելք ապրեց և Իտալիայում. դրա վկայությունն են 1961 թվականի փետրվարին տեղական ադմինիստրատիվ հիմնարկների կես միլիոն ծառայողների 24-ժամյա գործադուլը, մեկուկես միլիոն կիսարարների համազգային գործադուլը՝ մայիսին, հուլիս-օգոստոս ամիսների 1,5—2 միլիոն բատրակների պայքարը՝ հողային ռեֆորմի համար, 800 հազար շինարարական բանվորների գործադուլը՝ հոկտեմբերին, տեքստիլագործների 400-հազարանոց և մունիցիպալ ու գավառական խորհուրդների ծառայողների ու կոմունալ տնտեսությունների կես միլիոն աշխատողների դեկտեմբերյան գործադուլները։ 1962 թվականի հունվարին, իտալական տեքստիլագործները հաղթեցին՝ նրանց աշխատավարձը բարձրացավ 13 տոկոսով։

Քաղաքական բնույթի գործադուլային շարժումների թվարկումը շատ էջեր կգրավի։ Սակայն բերված փաստերն էլ բավական են ցույց տալու համար, թե ինչպիսի հսկայական տեղաշարժեր են տեղի ունեցել կապիտալիստական երկրներում և ինչպիսի թափով են դասակարգային պայքարի ելնում աշխատավորներն ամենուրեք։

## ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆԸ ՈՐՈՇԻՉ Է

Կապիտալիստական երկրների բանվոր դասակարգը, ողջ աշխատավորությունը վերջին տարիների գործադուլային պայքարի շնորհիվ հասան զգալի արդյունքների։ Ռեալ աշխատավարձի և գործազրկության նպաստների որոշ ավելացումը, բանվորական շաբաթվա կրճատումը, աշխատանքից ազատելու որոշ կամայականությունների կանխումը, աշխատանքային օրենսդրության բարելավումը, ֆաշիզմի տիպի ռեակցիոն ռեժիմների սահմանման փորձերի ձախողումը, տնտեսապես և քաղաքական անկախության ու սոցիալական առաջընթացի, խաղաղության և համագործակցության համար մղվող պայքարը ժամանակակից բանվորական գործադուլային շարժումների ուժի վկայությունն են։ Սակայն այդ ուժը դեռևս միասնական չէ։

Փաստերի համար շատ հեռու գնալու անհրաժեշտություն չկա։ Երբ 1962 թվականի փետրվարի 8-ին ֆրանսիական ոստիկանությունը. կառավարության կարգադրությամբ դաժանորեն ճնշեց ցույցը, որի հետևանքով զոհվեցին 8 մարդ, վիրավորվեցին 250-ը, Ֆրանսիայի բոլոր պրոգրեսիվ ուժերը Կոմպարտիայի ղեկավարությամբ որոշեցին հայտարարել համընդհանուր գործադուլ մայրաքաղաքում և ոստիկանական ռեպրեսիայի զոհերի թաղման օրը կազմակերպել մանիֆեստացիա։ Այդ դուր չեկավ Ֆրանսիայի սոցիալիստական պարտիայի պարագլուխներին, որոնք սովորականի նման դիմեցին պառակտիչ գործողությունների՝ կոչ անելով աշխատավորներին բավարարվել «մեկ րոպե լռությամբ» պատերազմի զոհերի հուշարձանի առջև։ Իսկ սոցիալիստներին մոտ կանգնած, «Ֆորս ուվրիեր» արհմիութենական կոնֆեդերացիան փորձեց նույնիսկ գործադուլը սահմանափակել միայն, այսպես կոչված՝ «Ազատ արհմիությունների» (քրիստոնեական, «ավտոնոմ», ուսանողական և այլն) անդամների մասնակցությամբ, ջանալով այնպես անել, որ Ֆրանսիայի աշխատավորական ամենամեծ կազմակերպությունը՝ «Աշխատանքի համընդհանուր կոնֆեդերացիան», չմասնակցի այդ մանիֆեստացիային։

Այդ նրանց, իհարկե, չհաջողվեց և «ԱՀԿ»-ի անդամներն էլ ցուցարարների շարքում էին՝ «Ազատ արհմիությունների» բանվորների կողքին։ Բայց բոլո՞րն արդյոք։ Ցավոք սրտի, ոչ։ Եթե սոցիալիստները ցուցաբերեին համերաշխություն և միասնական ճակատով հանդես գային, արդյունքը խիստ գոհացուցիչ կլիներ աշխատավորության համար։

Կամ, մի՞թե իտալական աշխատավորները վկա կդառնային 1962 թվականի փետրվարին Ֆանֆանիի կառավարության կիսատ-պռատ որոշումներին՝ էլեկտրաէներգետիկայի ազգայնացման և այլ մանրուքների վերաբերյալ, եթե իտալական կոմպարտիայի հետ միասնական ճակատով հանդես գար սոցիալիստական պարտիան, որը համագործակցության փոխարեն «չեզոքության», կոմունիստների հետ մշտական համագործակցությունից հրաժարվելու քաղաքականություն է վարում։ Միաժամանակ ԻՍՊ-ի ղեկավարությունը կառավարական Քրիստոնեա-դեմոկրատական պարտիայի հետ մերձենալու ուղիներ է փնտրում։

Իսկ ի՞նչ են ասում Բելգիայի դեպքերը։ Այստեղ ևս երկու արհմիությունների միջև համաձայնություն գոյություն չունի։ Հայտնի է, որ «Քրիստոնեական արհմիությունների կոնֆեդերացիան», հարելով «Սոցիալ-քրիստոնեական պարտիային», քարոզում է դասակարգային հաշտություն, ձախողում է գործարանատերերի դեմ աշխատավորության մղած միասնական պայքարը, խանգարում դրան։ Այն նույնիսկ դատապարտեց 1960 թվականի դեկտեմբեր — 1961 թվականի հունվարին տեղի ունեցած ամենահզոր գործադուլային շարժումը։

Բելգիական պառակտիչներին նպաստում է այն հանգամանքը, որ արհմիությունները որոշ չափով ազգային են։ Օրինակ, «Բելգիայի աշխատանքի համընդհանուր ֆեդերացիայի» մեջ մտնում են 346 հազար ֆլամանդցիներ և մոտ 300 հազար վալոնցիներ։ Իսկ «Քրիստոնեական արհմիությունների կոնֆեդերացիայի» մեջ ճնշող մեծամասնությունը ֆլամանդցիներն են։ Իբրև առանձին խումբ երկու արհմիություններում էլ հանդես են գալիս բրյուսելցիները՝ մայրաքաղաքի աշխատավորությունը։ Հայտնի է, որ Բելգիայում որոշակի ազգայնական տենդենցներ կան վալոնների և ֆլամանդցիների միջև։ Այդ հողի վրա արհմիությունները հաճախ գործում են գժտված և դրանով օգնում բուրժուազիային։ Դրա հետևանքով էր, որ 1961 թվականի խոշոր գործադուլներից հետո գործը վերջացավ ձեռնարկատերերի չնչին զիջումներով, որոնց դիմաց արհմիությունները նույնիսկ պարտավորվեցին... մինչև 1962 թվականի վերջը գործադուլ չանել։

Մի՞թե նույնը չէ վիճակը ԳՖՌ-ում, Անգլիայում, ԱՄՆ-ում, Կանադայում և շատ այլ առաջավոր կապիտալիստական երկրներում, որտեղ բանվոր դասակարգի և ընդհանրապես, աշխատավորության շարքերի պառակտումից շահում են միայն գործարանատերերը, մոնոպոլիաները, նրանց կառավարությունները, իսկ հաճախ էլ բանվորները կորցնում են տարիների պայքարով ձեռք բերած շատ արտոնություններ։

***

Բանվոր դասակարգի գործադուլային շարժումները մեր օրերում ամենուրեք ընթանում են տնտեսական, սոցիալական, քաղաքական պայքարի ուղիներով։ Նրանք հասել են այնպիսի մակարդակի, որ հղի են քաղաքական ռևոլյուցիաների պոռթկումներով։ Եվ այդ է պատճառը, որ ռեակցիան իմպերիալիստական բոլոր երկրներում անում է ամեն ինչ՝ քայքայելու, ներսից պայթեցնելու այդ հզոր շարժումը։

Բայց մոտ է կապիտալիզմի օրհասը։ Անընդհատ աճող աշխատավորական շարժումները, ի վերջո, հաղթահարելով ներքին հակասությունները, կոմունիստական պարտիաների առաջնորդությամբ կելնեն վերջին ահեղ մարտի՝ խորտակելու կեղծիքի ու շողոքորթության, տանջանքի ու հարստահարման, մարդկային ծայրաստիճան անհավասարության, իրավազրկման այն շինությունը, որի անունը կապիտալիզմ է։

Ա. ԼՅՈՒԼԻԿՅԱՆ

# ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ԳՐՔԵՐԻ ՄԱՍԻՆ

## ԱՌԵՎԵԼ ԽՆԱՄՔՈՎ

1960 թվականին, առաջին անգամ, չորրորդ դասարանի համար հրատարակվեց «Հայրենի բնություն» դասագիրքը, որն ուներ անհերքելի արժանիքներ։ Սակայն այս տարի այդ դասագիրքը տպագրվեց երրորդ անգամ, որում մնացել են մի քանի աչք ծակող թերություններ։ Օրինակ, դասագրքում բերված գծային մասշտաբի օրինակի մեջ թույլ են տրված կոպիտ սխալներ։ Գծագրի վրա, նախ՝ նշված չէ չափի միավորը (սմ., մ., կմ.)։ Եվ, որ կարևորն է, գծագրի ձախ մասի յուրաքանչյուր բաժանումն է համապատասխանում 400-ի, իսկ աջակողմյան մասի՝ յուրաքանչյուր զույգ բաժանումը։ Այս անճշտությունը կարող է աշակերտների և ուսուցիչների թյուրըմբռնման աղբյուր դառնալ։

Դասագրքի 18-րդ էջում այն միտքն է արտահայտվում, որ լեռներն ընդհանրապես բարձր են բարձրավանդակներից։ Եթե այս բանն ավելի կոնկրետ, որոշակի տեղամասի համար, թերևս կարելի կլիներ ճիշտ համարել, սակայն ասել ընդհանրապես, ճիշտ չէ։ Դպրոցականները քաջ գիտեն, որ Ուրալյան լեռներն ավելի ցածր են, քան Ղարաբաղի (Սյունիքի) բարձրավանդակը։ Սովետական Հայաստանը լեռնային երկիր է։ Այստեղ տարբեր ուղղությամբ ձգվում են տասնյակ լեռներ, որոնց առավելագույն բարձրությունը չի հասնում 4 կմ-ի (չհաշված Արագածը), մինչդեռ Տիբեթի բարձրավանդակի միջին բարձրությունը չորս և կես կիլոմետր է։ Նման օրինակներ կարելի է շատ բերել։

Սովետական կարգերի հաստատման առաջին տարիներին աշխարհագրության դասագրքերի որոշ հեղինակներ առաջին շուրջերկրյա ճանապարհորդության մասին գրել են, որ այն կատարվել է մոտ 400 տարի առաջ։ Այս արտահայտությունն իր ժամանակին ճիշտ էր։ Անցել են տասնյակ տարիներ, իսկ դասագրքի հեղինակները Մագելանի ճանապարհորդությունը դեռևս համարում են 400 տարի առաջ կատարված, փոխանակ ասելու՝ 440 տարի։

Դասագրքում կարդում ենք, թե «Ջուրը ցրտից սեղմվում է» (էջ 53)։ Մի քանի նախադասություն հետո՝ «Սովորաբար բոլոր նյութերը ցրտից սեղմվում են... Ջուրը այդ տեսակետից բացառություն է կազմում (էջ 54)։ Հակասությունն ակնհայտ է։ Հեղինակները ցանկացել են որոշ բան ասել ջրի մի յուրահատկության մասին ևս, որ այն ընդարձակվում է և՛ սառչելուց, և՛ տաքանալուց, սակայն չի ստացվել։

«Որքան ջուր է մտնում ծովերը և լճերը, այնքան էլ գոլորշիացման միջոցով դուրս է գալիս նրանցից», ասված է 72-րդ էջում (ի դեպ, նկատենք, որ լավ կլիներ ասել, թե որքան ջուր լցվում է, թափվում է, և ոչ մտնում է)։ Այս միտքը ճիշտ է ծովերի համար, իսկ լճերի համար խիստ թերի է։ Այս բանում համոզվելու համար բերենք մի օրինակ հենց մեր ռեսպուբլիկայից։ Սևանա լիճը թափվող ջրերի միայն մի մասն է գոլորշիացման միջոցով դուրս գալիս, մյուս մասը հոսում է Հրազդան գետով կամ ծծվում գետնի մեջ և որպես հորդառատ աղբյուրներ դուրս գալիս բազմաթիվ ցածրադիր վայրերում։ Նույնը կարելի է ասել Այգր և հոսք ունեցող մյուս բոլոր լճերի մասին։

Ճիշտ չէ՝ «Սովետական Հայաստանը գտնվում է Սովետական Միության ամենահարավային մասում՝ Անդրկովկասում» արտահայտությունը (էջ 7)։

Որպեսզի ցույց տան, որ ջուրը եռում է 100°-ում, հեղինակներն առաջարկում են աշակերտներին ջերմաչափը պահել եռացող ջրից բարձրացող գոլորշու մեջ։ Սակայն նրանք մի բան մոռանում են, որ աշակերտներն այդ բանում փորձով չեն կարող համոզվել, որովհետև մեր ռեսպուբլիկայում ջուրը եռում է 100-ից պակաս ջերմաստիճանում։

Գրքում կան անհաջող և սխալ նախադասություններ, օրինակ, «Նրա ասֆալտապատ ճանապարհներով շարժվում են ածուխ բարձած գնացքներ և ավտոմեքենաներ» (էջ 141), «Ազից սառույցն ավելի է սառչում» (էջ 56), «Դոնբասում արևմուտք ածխահորեր են» (էջ 141) և այլն։

Դոնեց անունով գետ գոյություն չունի (էջ 14), այն կոչվում է Հյուսիսային Դոնեց։

Փաստերը նկարագրելիս հեղինակները երբեմն թույլ են տալիս չափազանցություններ։ Այսպես, օրինակ, «Մեր երկրում ամեն տարի կառուցվում են հազարավոր գործարաններ, միլիոնավոր տներ» (էջ 25), «Առաջներում այդ նպատակի համար ամեն մի բնակավայրում գետնահարկ խոր փոսեր-նկուղներ էին կառուցվում և սառույց պահում այնտեղ՝ ամռանն օգտագործելու համար» (էջ 62)։

Ո՞ւմ են պետք այս օրինակները, չէ՞ որ շատ բնակավայրերում մարդիկ նույնիսկ խմելու ջուրը դժվարությամբ էին գտնում, իսկ այստեղ ստացվում է, որ բոլոր գյուղերում ամռան շոգերին մարդիկ սառույց էին օգտագործում։

Խոսելով ՍՍՌՄ ծայր Հյուսիսի սառցային գոտու և տունդրայի մասին, հեղինակները գրում են. «Անհաշիվ են բնական հարստությունները Սովետական Միության Հյուսիսում. ցամաքի վրա անտառներ, մորթատու կենդանիներ ու հանածո հարստություններ. ծովերում ձկներ, ջրային կենդանիներ» (էջ 149)։ Մի՞թե հեղինակները չգիտեն, որ տունդրաները անտառազուրկ են։ Էլ չենք խոսում սառցային գոտու մասին։

Դասագիրքն առանց բացատրելու, աշակերտներին հրամցնում է այնպիսի տերմիններ, որոնք առաջին անգամ են նրանք լսում (մանգանաթթվական կալիում, էջ 87, ակվարիում՝ 112, և այլն)։ Ավելին, հեղինակները աշակերտներից պահանջում են եղանակացույցի տվյալներով դիագրամ կազմել (էջ 103), մինչդեռ նրանք պարզագույն դիագրամների մասին գաղափար են ստանում մաթեմատիկայի դասընթացից, հաջորդ դասարաններում։

Դասագրքի հեղինակների ճիգերը լակոնիկ արտահայտվելու նպատակով հաճախ չեն պսակվել հաջողությամբ։ Ահա փայտացած լեզվի մի օրինակ. Կարակում անապատի մասին ասված է. «Այստեղ դարեր շարունակ փչել են քամիներ, սաստիկ շոգը չորացրել է ամեն ինչ, իսկ Կասպից ծովից եկած խոնավությունն էլ չնչին է եղել այդտեղի բույսերին կյանք տալու համար։ Այս կողմերում նույնիսկ այնպիսի վայրեր կան, որ տարվա ընթացքում հազիվ մեկ անգամ անձրև է գալիս։ Այս կողմերում շատ շոգ է լինում, ձմեռները՝ ցուրտ և սակավաձյուն։ Բուսականությունը հիմնականում աճում է ջրովի հողերի վրա։ Բնական անտառներ չկան» (էջ 135—136)։

Այս նկարագրությունից 4-րդ դասարանցին անապատի մասին ճիշտ պատկերացում կազմել չի կարող։ Մի շարք անճշտություններին այստեղ ավելանում է բնության չոր, անհրապույր նկարագրությունը։

Գրքի բոլոր հոդվածները խիստ էմպիրիկ բնույթի են, նյութերի շարադրանքը՝ նվազ մատչելի, որը և դասագրքի լուրջ թերություններից է։

Դասագիրքը վատ է ձևավորված, նկարներից շատերը գորշ են, անհրապույր։ Անհրաժեշտ է առավել խնամքով հրատարակել դասագրքը։

Մ. ՀԱԿՈԲՅԱՆ
Ժողտնտխորհի մանկական հիմնարկների գծով ավագ տեսուչ



---

## «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐՈՒՄ 1962 ԹՎԱԿԱՆԻՆ ԶԵՏԵՂՎԱԾ ՀՈԴՎԱԾՆԵՐԻ ԵՎ ՆՅՈՒԹԵՐԻ ՑԱՆԿ

### ԱՌԱՋՆՈՐԴՈՂՆԵՐ ԵՎ ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ՀՈԴՎԱԾՆԵՐ



### ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՍՄԿՊ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ



## ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ



## ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ



## ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԻՆ ՈՒ ԱԳԻՏԱՏՈՐԻՆ





## ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ



## ՄԵՐ ՕՐԵՐԻ ՀԵՐՈՍՆԵՐԸ



## ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՆԵՐՈՒՄ



## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ



## ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



## ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՎ ԲԱՆԱՎԵՃ

## ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ



## ԳԻՏՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՐՀՈՒՄ



---




ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.

Թողարկիչ՝ Ա. ԱՍՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ն. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—56—92

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2—56—92

ՎՖ 10807 | Պատվեր 3027 | Տիրաժ՝ 9130 | Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 6/XII 62 թ.

Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան:


# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ԷԼԵԿՏՐԱԿԱՆ ՀՈՍԱՆՔՆ ԱՆՑՆՈՒՄ Է ՌԵՏԻՆԻ ՄԻՋՈՎ

Ձյուն է գալիս, ուժեղ քամի է փչում, սառնամանիք է: Սակայն մարդը փողոցում քայլում է բարակ գուլպաներ հագած, թեթև կոշիկներով: Մի՞թե նա ցուրտ չի զգում: Ցուրտ չի զգում, որովհետև հագել է տաքացվող կոշիկներ, որոնց կրունկների մեջ դրված են էլեկտրական մարտկոցներ, իսկ կոշկատակերը պատրաստված են էլեկտրահաղորդիչ ռետինից:

Տաքացվող կոշիկների համար հատուկ ռետին գտնելու հարցը երկար ժամանակ անհանգստացնում էր Արհեստական կաշվի և սինթետիկ նյութերի համամիութենական ինստիտուտի շատ գիտնականների: Վերջերս այդ ինստիտուտի մի խումբ աշխատողներ գտան յուրատեսակ ռետինի ստեղծման եղանակը, ռետին, որը լավ հաղորդիչ է էլեկտրական հոսանքի համար:

Նոր տեսակի ռետինը լայնորեն կկիրառվի նաև արդյունաբերության ու բժշկության մեջ:

Այսպես, օրինակ, գործվածքային հաստոցների վրա թելը ձգվում է երկու գլանի միջև: Շփման հետևանքով առաջ է գալիս էլեկտրական լիցք, թելն ավելի է ձըգվում դեպի գլանը և հաճախ կտրվում: Սրանից իրավացիորեն դժգոհում են բանվորուհիները: Ի՞նչ անել: Նոր տեսակի ռետինն այստեղ էլ օգնության հասավ: Ուսումնասիրությունը ցույց է տվել, որ եթե գլանների միջով էլեկտրական հոսանք անցնի, ապա այլևս թելը չի կտրվի: Դա նշանակում է, որ էլեկտրական լիցքեր չեն առաջանա և մանածագործուհիները կազատվեն թելի ծայրերը միացնելու լրացուցիչ աշխատանքից:

Բժշկական սարքավորումների համար օգտագործում են ռետինե խողովակներ: Դրանք երբեմն գործադրվում են դյուրավառ հեղուկների համար: Սակայն նման հեղուկների (եթեր և այլն) հոսքի ժամանակ ռետինը մաշվում է և, բացառված չէ, որ կարող է հանկարծակի պայթյուն առաջանալ: Սակայն շուտ չի փչանա և չի մաշվի, եթե ռետինը էլեկտրական հոսանքի լավ հաղորդիչ լինի:

Վերոհիշյալ ինստիտուտի գիտնականները գտել են նաև բնակարանների հատակների տաք լինոլեումների արտադրության եղանակը:

### ԼՐԱԳՐԱՅԻՆ ԹՂԹԻ ՀՍԿԱ ՖԱԲՐԻԿԱ

Կանդոպոգում (Կարելական ԱՍՍՌ) ցելյուլոզային թղթի կոմբինատում, կառուցվում է լրագրային թղթի հսկա ֆաբրիկա, որը կլինի խոշորագույններից մեկը երկրում: Ֆաբրիկայի գլխավոր կորպուսը կառուցվելու է երկաթբետոնից և ապակե բլոկներից: Այդտեղ տեղադրվող նոր հզոր մեքենաները տարեկան կարտադրեն 108 հազար տոննա լրագրային թուղթ: Նոր ձեռնարկության կառուցումը կավարտվի 1964 թվականին:

### «ՌՈՍՏՈՎ» ԿՈՄԲԱՅՆ

Ինքնաշարժ կոմբայնով հավաքում են միայն հացահատիկը: Հետո դաշտը մաքրում են մյուս մեքենաները:

Գյուղատնտեսական աշխատանքներն արագ կատարելու համար հարկավոր են այնպիսի մեքենաներ, որոնք աշխատանքները կատարեն ժամանակին: Ահա այդպիսի ագրեգատ են ստեղծել «Ռոստսելմաշ» գործարանի կոնստրուկտորները: Գործարանում պատրաստված «Ռոստով» նոր կոմբայն-ագրեգատն ունի առանց շարժիչի հացահատիկային կոմբայն և ինքնաթափ սայլակ: Նոր մեքենան մի կողմից մաքուր հացահատիկն է լցնում ավտոմեքենայի թափքը, մյուս կողմից ծղոտը՝ սայլակի մեջ: Կոմբայնը քաշում է 220 ձիաուժանոց «Կիրովեց» տրակտորը: Կոմբայնավարի համար նոր մեքենայում տեղ չկա: Կոմբայնավարը ագրեգատի աշխատանքը ղեկավարում է տրակտորի խցիկից, որն ընդարձակ է և հարմար տրակտորիստի ու կոմբայնավարի համար:

Նոր կոմբայնը մեկ վայրկյանում հավաքում է 6 կիլոգրամ հացահատիկ: Սայլակի ծավալը հասնում է 70 խմ.-ի, այն տանում է մոտ 3 տոննա ծղոտ: